Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ



ՄԱՅԻՍ
5
1989 թ.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ
ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ
ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ ԱՄԻՍԸ ՄԵԿ ԱՆԳԱՄ ՀԱՅԵՐԵՆ ԵՎ ՌՈՒՍԵՐԵՆ

## Բովանդակություն



ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԻ ԿԵՆՏԿՈՄԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

ԵՐԵՎԱՆ

Խմբագրության հասցեն՝

375023, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա, № 2

ՀԵՌԱԽՈՍՆԵՐ՝

գլխավոր խմբագիր՝ 52—89—93

գլխավոր խմբագրի տեղակալ՝ 52—99—22

պատասխանատու քարտուղար՝ 52—99—34

պատասխանատու քարտուղարի տեղակալ՝ 56—59—93

**Բաժիններ**

մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի՝ 52—05—58

կուսակցական կյանք՝ 52—25—43

սոցիալ-տնտեսական պրոբլեմների՝ 52—57—56

գիտության և կուլտուրայի՝ 53—86—11

գրական աշխատողներ՝ 52—66—77

56—59—94

թողարկիչ, սրբագրիչ՝ 53—86—11




# ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

1989 թվականի ապրիլի 25-ին տեղի ունեցավ ԽՄԿԿ Կենտրոնական կոմիտեի պլենում:

Պլենումը քննարկեց ԽՄԿԿ Կենտրոնական կոմիտեի գործունեության որոշ կազմակերպական հարցեր: Պլենումում զեկուցումով հանդես եկավ ԽՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. Գորբաչովը:

Ընկ. Մ. Ս. Գորբաչովը հաղորդեց, որ կենսաթոշակի անցած մի խումբ ԽՄԿԿ Կենտկոմի անդամներ, ԽՄԿԿ Կենտկոմի անդամության թեկնածուներ, ԽՄԿԿ կենտրոնական վերստուգիչ հանձնաժողովի անդամներ դիմել են ԽՄԿԿ Կենտրոնական կոմիտե և ԽՄԿԿ կենտրոնական վերստուգիչ հանձնաժողով՝ կուսակցության կենտրոնական ընտրովի մարմիններում իրենց լիազորություններից ազատվելու խնդրանքով: (Դիմումի տեքստը հրապարակվում է մամուլում):

ԽՄԿԿ Կենտկոմի պլենումը և կենտրոնական վերստուգիչ հանձնաժողովը բավարարեցին ԽՄԿԿ Կենտկոմի անդամների, Կենտկոմի անդամության թեկնածուների, կենտրոնական վերստուգիչ հանձնաժողովի անդամների՝ իրենց լիազորություններից ազատվելու խնդրանքը: Ընկ. Մ. Ս. Գորբաչովը ընկերներին շատ շնորհակալություն հայտնեց կուսակցության ընտրովի մարմինների կազմում նրանց աշխատանքի համար և բարեմաղթություններ հղեց նրանց:

Պլենումում հանդես եկան. ԽՄԿԿ Կենտկոմի անդամ, անհատական թոշակառու Ս. Ա. Աֆանասևը, ԽՄԿԿ Կենտկոմի անդամ, անհատական թոշակառու Ա. Պ. Նոչևկինը, ԽՄԿԿ Կենտկոմի անդամության թեկնածու, անհատական թոշակառու Գ. Ա. Ժուկովը, ԽՄԿԿ Կենտկոմի անդամ, անհատական թոշակառու Ա. Պ. Լյաշկոն. ԽՄԿԿ Կենտկոմի անդամության թեկնածու, ԽՄԿԿ Վլադիմիրի մարզկոմի առաջին քարտուղար Ռ. Ս. Բոբովիկովը, ԽՄԿԿ Կենտկոմի անդամ, անհատական թոշակառու Ե. Ֆ. Մուրավյովը, ԽՄԿԿ Կենտկոմի անդամ, Կորշունի հանքահարստացուցիչ կոմբինատի էքսկավատորավար Ա. Պ. Մյասնիկովը, Իրկուտսկի մարզ, ԽՄԿԿ Կենտկոմի անդամ, ԽՍՀՄ գիտությունների ակադեմիայի նախագահության խորհրդական Պ. Ն. Ֆեդոսեևը, ԽՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամության թեկնածու, ԽՄԿԿ Լենինգրադի մարզկոմի առաջին քարտուղար Յու. Ֆ. Սոլովյովը, ԽՄԿԿ Կենտկոմի անդամ, անհատական թոշակառու Հ. Ա. Ալիևը, ԽՄԿԿ Կենտկոմի անդամ, Ի. Վ. Կուրչատովի անվան ատոմային էներգիայի ինստիտուտի պատվավոր դիրեկտոր Ա. Պ. Ալեքսանդրովը, ԽՄԿԿ Կենտկոմի անդամ, ժողովրդական դեպուտատների Մոսկվայի քաղաքային խորհրդի գործկոմի նախագահ Վ. Տ. Սայկինը, ԽՄԿԿ Կենտկոմի անդամ, Ղազախստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Գ. Վ. Կոլբինը, ԽՄԿԿ Կենտկոմի անդամ, ԽՄԿԿ Կրասնոդարի երկրկոմի առաջին քարտուղար Ի. Կ. Պոլոզկովը, ԽՄԿԿ Կենտկոմի անդամ, ԽՄԿԿ

Վոլգոգրադի մարզկոմի առաջին քարտուղար Վ. Ի. Կալաշնիկովը, Ադրբեջանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Ա.—Ռ. Խ. Վեզիրովը, ԽՄԿԿ Կենտկոմի անդամ, ԽՍՀՄ հեռուստատեսության և ռադիոհաղորդումների պետական կոմիտեի նախագահ Ա. Ն. Աքսյոնովը, ԽՄԿԿ Կենտկոմի անդամ, ԽՄԿԿ Կեմերովոյի մարզկոմի առաջին քարտուղար Ա. Գ. Մելնիկովը, ԽՄԿԿ Կենտկոմի անդամ, ԽՄԿԿ Մոսկվայի մարզկոմի առաջին քարտուղար Վ. Կ. Մեսյացը, ԽՄԿԿ Կոմիի մարզկոմի առաջին քարտուղար Վ. Ի. Մելնիկովը:

Պլենումը ԽՄԿԿ Կենտկոմի անդամության թեկնածուից անդամի փոխադրեց ԽՄԿԿ Կույբիշևի մարզկոմի առաջին քարտուղար ընկ. Վ. Գ. Աֆոնինին, ՌԽՖՍՀ Մինիստրների խորհրդի նախագահի տեղակալ ընկ. Ա. Ա. Բաբենկոյին, ԽՍՀՄ գիտությունների ակադեմիայի փոխպրեզիդենտ ընկ. Ե. Պ. Վելիխովին, Բելոռուսիայի կոմկուսի Վիտեբսկի մարզկոմի առաջին քարտուղար ընկ. Վ. Վ. Գրիգորևին, Ուկրաինայի կոմկուսի Կենտկոմի երկրորդ քարտուղար ընկ. Վ. Ա. Իվաշկոյին, «Արսենալ» գործարանի ռադիոմոնտաժորդուհի ընկ. Վ. Ա. Կիսամովային, քաղ. Տուլա, Գերմանիայի Ֆեդերատիվ Հանրապետությունում ԽՍՀՄ արտակարգ և լիազոր դեսպան ընկ. Յու. Ա. Կվիցինսկուն, «Մալիկ» խորհտնտեսության բամբակագործական բրիգադի բրիգադավար ընկ. Տ. Բ. Կիրգիզբաևին, Ուզբեկական ԽՍՀ «Կրասնոյարսկուգոլ» արտադրական միավորման «Նազարովսկի» ածխատրամատի էքսկավատորավար ընկ. Ս. Վ. Կլեյկոյին, Վորոնեժի «Էլեկտրոնիկա» գիտաարտադրական միավորման գործիքագործ-փականագործների բրիգադավար ընկ. Ա. Ե. Կոլբեշկինին, ԽՍՀՄ գիտությունների ակադեմիայի փոխպրեզիդենտ, ԽՍՀՄ գիտությունների ակադեմիայի Սիբիրի բաժանմունքի նախագահ ընկ. Վ. Ա. Կոպտյուգին, Դ. Ֆ. Ուստինովի անվան «Իժմաշ» արտադրական միավորման կուսկոմիտեի քարտուղար ընկ. Յու. Ի. Լոբովին, Ուդմուրտական ԻԽՍՀ, Տաջիկստանի կոմկուսի Կենտկոմի երկրորդ քարտուղար ընկ. Պ. Կ. Լուչինսկուն, Ուկրաինական ԽՍՀ Մինիստրների խորհրդի նախագահ Վ. Ա. Մասոլին, Վլադիվոստոկի տնաշինական կոմբինատի ծեփագործ-ներկարարների բրիգադավար ընկ. Գ. Վ. Մերկուլովին, Թբիլիսիի Վ. Ի. Լենինի անվան էլեկտրաքարշաշինական գործարանի էլեկտրամոնտաժորդների բրիգադավար ընկ. Գ. Ա. Մետոնիձեին, ԽՍՀՄ հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի նախագահ ընկ. Մ. Ֆ. Նենաշևին, գեներալ-գնդապետ ընկ. Վ. Վ. Օսիպովին, «Դետսկոսելսկի» խորհտնտեսության բանջարաբույծ-բրիգադավար ընկ. Վ. Ռ. Պարշինին, Լենինգրադի մարզ, XVII կուսհամագումարի անվան պետական ցեղաբուծարանի դիրեկտոր ընկ. Ի. Ա. Պետնյուխովին, Օրյոլի մարզ, ԽՍՀՄ գիտությունների ակադեմիայի համաշխարհային էկոնոմիկայի և միջազգային հարաբերությունների ինստիտուտի դիրեկտոր ընկ. Ե. Մ. Պրիմակովին, Մագնիտոգորսկի Վ. Ի. Լենինի անվան մետալուրգիական կոմբինատի գլխավոր դիրեկտոր ընկ. Ի. Խ. Ռոմազանին, ԽՄԿԿ Կենտկոմի միջազգային բաժնի վարիչ ընկ. Վ. Մ. Ֆալինին, ԽՍՀՄ գիտությունների ակադեմիայի փոխպրեզիդենտ ընկ. Կ. Վ. Ֆրոլովին:

Եզրափակման խոսքով հանդես եկավ ԽՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. Գորբաչովը:

Սրանով ԽՄԿԿ Կենտկոմի պլենումը ավարտեց աշխատանքը:

---

# ԽՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԳԼԽԱՎՈՐ ՔԱՐՏՈՒՂԱՐ Մ. Ս. ԳՈՐԲԱՉՈՎԻ

# ՁԵԿՈՒՑՈՒՄԸ ԽՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՊԼԵՆՈՒՄՈՒՄ 1989 ԹՎԱԿԱՆԻ ԱՊՐԻԼԻ 25-ԻՆ

*Ընկերներ:*

*Կենտրոնական կոմիտեի սույն պլենումի քննարկմանը դրված հարցի շրջանակներում մենք պետք է քննության առնենք ԽՄԿԿ Կենտրոնական կոմիտեի մի խումբ անդամների, ԽՄԿԿ Կենտկոմի անդամության թեկնածուների, ԽՄԿԿ կենտրոնական վերստուգիչ հանձնաժողովի անդամների դիմումը: Թույլ տվեք հրապարակել այդ փաստաթուղթը:*

*«Մենք՝ ԽՄԿԿ Կենտրոնական կոմիտեի անդամներս, Կենտրոնական կոմիտեի անդամության թեկնածուներս, ԽՄԿԿ կենտրոնական վերստուգիչ հանձնաժողովի անդամներս, ԽՄԿԿ Կենտրոնական կոմիտեի պլենումին խնդրում ենք քննարկել մեր հետևյալ դիմումը:*

*Մեր կուսակցության ղեկավար մարմինների կազմում ընտրված լինելով ԽՄԿԿ XXVII համագումարում, մենք համագումարից հետո ընկած ժամանակամիջոցում կենսաթոշակի ենք անցել տարիքի բերումով կամ առողջական վիճակի պատճառով:*

*Մենք այն կարծիքին ենք, որ ներկայումս, երբ ԽՄԿԿ Կենտրոնական կոմիտեի և ԽՄԿԿ կենտրոնական վերստուգիչ հանձնաժողովի կազմի մեջ մտնող բոլոր ընկերներից պահանջվում է վերակառուցմանը մասնակցելու լարված գործունեություն, անհրաժեշտ է, որ մենք, ի շահ գործի, թոթափենք ԽՄԿԿ Կենտկոմի անդամների, Կենտկոմի անդամության թեկնածուների, կենտրոնական վերստուգիչ հանձնաժողովի անդամների մեր լիազորությունները:*

*Այս խնդրանքով դիմելով ԽՄԿԿ Կենտրոնական կոմիտեին, կենտրոնական վերստուգիչ հանձնաժողովին, մենք արտահայտում ենք մեր միահամուռ աջակցությունը մեր հարազատ կուսակցության, նրա Կենտրոնական կոմիտեի և ԽՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի քաղաքական կուրսին:*

*Մենք լենինյան կուսակցությանը, նրա Կենտրոնական կոմիտեին խորին, սրտագին շնորհակալություն ենք հայտնում մեզ ցույց տրված բարձր վստահության համար և ամբողջ սրտով նոր հաջողություններ ենք մաղթում մեր հասարակության հեղափոխական նորացման գործում, վերակառուցման խնդիրների լուծման ասպարեզում:*

*Մենք ԽՄԿԿ Կենտրոնական կոմիտեին հավաստիացնում ենք, որ այսուհետև էլ ակտիվորեն կմասնակցենք լենինյան կուսակցության գործունեությանը»:*

*Ի՞նչ կցանկանայինք այս կապակցությամբ ասել քաղբյուրոյի հանձնարարությամբ:*

*Կենտրոնական կոմիտեի և կենտրոնական վերստուգիչ հանձնաժողովի այժմյան կազմը ընտրվել է կուսակցության XXVII համագումարի, այն համագումարի կողմից, որը մշակեց վերակառուցման, սոցիալիստական հասարակության նորացման կուրսը: Այդ քաղաքական կուրսի իրագործումը մեր հասարակությանը դուրս բերեց քաղաքական, տնտեսական, սոցիալական և մշակութային հեղափոխական խոր վերափոխումների ճանապարհ:*

Վերակառուցման քաղաքականության մշակման՝ իր մասշտաբով աննախադեպ և շատ պատասխանատու այդ աշխատանքում վճռական դերը պատկանում էր և պատկանում է կուսակցության Կենտրոնական կոմիտեին, որն այդ տարիներին, իրոք, հանդես է բերել քաղաքական մեծ արիություն, հեռատեսություն, գնահատումների իրատեսություն, կատարել է ինտելեկտուալ շատ լուրջ աշխատանք։

Դա, իրոք, այսպես է, ընկերներ։ Եվ դա կուսակցության բարձրագույն ղեկավար մարմնի բոլոր անդամներից պահանջել է բարձր պատասխանատվություն կուսակցության, իր ժողովրդի առջև, պատմության առջև։

Քաղբյուրոն գտնում է, որ այդ ամենին մեր ուժերը պատել են և դրանք հնարավոր են դարձել այն պատճառով, որ Կենտրոնական կոմիտեն ցուցաբերել է խոր նվիրվածություն վերակառուցման քաղաքական կուրսին, գտնվել է ժամանակի պահանջների բարձրության վրա։

Բայց պետք է հատկապես ընդգծել, և սա սկզբունքային նշանակություն ունի Կենտրոնական կոմիտեի ոչ միայն անցյալ գործունեության գնահատման տեսակետից, այլև ապագայի համար դասեր առնելու տեսակետից, որ մեր ամբողջ հասարակության առջև և ամենից առաջ կուսակցության, նրա Կենտրոնական կոմիտեի առջև ծառացել են իրենց մասշտաբներով և նորությամբ բացառիկորեն բարդ խնդիրներ։ Դրանց քննարկումը և լուծումը ընթացել են լուրջ դիսկուսիաների, որոնումների մթնոլորտում, կարծիքների համադրման պայմաններում։ Այդ ժամանակամիջոցում Կենտրոնական կոմիտեին բնորոշ է եղել միասնությունը որոշումների մշակման, ընդունման և իրականացման գործում։

Կենտրոնական կոմիտեի, վերստուգիչ հանձնաժողովի անդամների համախմբվածության ու միասնության շնորհիվ մեզ հաջողվել է կատարել հսկայական աշխատանք, որը մեր հասարակությանը դուրս է բերել վերակառուցման նոր փուլ՝ այդ կուրսի կենսագործման փուլ։

Այո, իհարկե, դա եղել է ոչ դյուրին ժամանակ՝ երկրի, կուսակցության, սոցիալիզմի համար բախտորոշ նշանակություն ունեցող արմատական քաղաքական որոշումների ընդունման ժամանակ։

Մեզանից շատերին հարկ եղավ հրաժարվել նախկին սովորություններից և մտածողության ստերեոտիպերից։ Եվ այնուամենայնիվ, մեր հասարակության զարգացման այդ անչափ պատասխանատու ժամանակաշրջանում Կենտրոնական կոմիտեն գլխավոր, հիմնական հարցերում գտնվել է իր բարձրության վրա։

Ընդ որում, բանը ոչ միայն որոշումների ընդունումն է, այլև կուսակցության մեջ, աշխատավորության շրջանում, հասարակության մեջ կատարվող այն հսկայական աշխատանքը, որը նպատակամղված է այդ որոշումների իրականացմանը։ Չէ որ, ընկերներ, խոսքը վերաբերում է միլիոնավոր մարդկանց, վերաբերում է երկրի ներկա և գալիք օրվան, իսկ հաշվի առնելով այն հսկայական դերը, որ Խորհրդային Միությանը պատկանում է ժամանակակից աշխարհում, միանգամայն հասկանալի պատճառներով, դա հսկայական ազդեցություն է գործում ամբողջ համաշխարհային իրադրության վրա, ամբողջությամբ վերցրած համաշխարհային զարգացման վրա։

Հուսով եմ, դուք հասկանում եք, որ ասելով այս ամենը, ես բնավ չեմ ուզում Կենտրոնական կոմիտեի աշխատանքը պատկերել վարդագույն երանգներով և ավելի լավ, քան կա իրականում։ Ոչ, մենք՝ այս դահլիճում նստածներս, գիտենք ամբողջ իրական պատկերը։ Ես միայն ուզում եմ XXVII համագումարից հետո կատարված աշխատանքի փորձից առանձնացնել Կենտկոմի գործունեության այն գլխավորը, ինչը վճռական նշանակություն է ունեցել վերակառուցման քաղաքական կուրսի ձևավորման և իրականացման համար։

Սակայն կյանքը տեղում կանգնած չէ։ Վերակառուցումը բացի տնտեսական, սոցիալական, քաղաքական լուծումներից ուղեկցվում է նաև կադրային փոփոխություններով։ Տեղի է ունենում ուժերի շատ լուրջ վերախմբավորում կուսակցության և ամբողջությամբ վերցրած հասարակության մեջ։ Այդ վերախմբավորումը թելադրվում է նոր խնդիրներով։

Պետք է ձեզ ասեմ, որ XIX համամիութենական կուսկոնֆերանսի առջև դրված էր այն հարցը, որ կոնֆերանսին իրավունք տրվեր լուծելու կազմակերպական հարցեր։ Բայց այն ժամանակ, կարծում եմ, ճիշտ վճիռ կայացրինք և գտնում եմ, որ այն կարելի է այսօր էլ հաստատել։ Մենք նախ և առաջ ձգտում էինք, որ կոնֆերանսի բոլոր ուժերը կենտրոնացվեին երկրում ծավալված վերակառուցման պրոցեսների խորացման խնդիրների վրա։



Եվ դա ամբողջությամբ արդարացրեց իրեն։ Կոնֆերանսն անցավ բարձր մակարդակով և բնագծային նշանակություն ունեցավ կուսակցության ու հասարակության զարգացման մեջ։

Ասենք, իրավիճակն էլ Կենտրոնական կոմիտեում այն ժամանակ այլ էր, քանի որ Կենտկոմի այնպիսի անդամների թիվը, ովքեր ակտիվ գործունեությունից հեռացել էին հասկանալի պատճառների բերումով, համեմատաբար մեծ չէր։

Բայց հիմա, հատկապես կուսակցության մեջ հաշվետու-ընտրական կամպանիայի անցկացումից հետո, իրադրությունը, ընկերներ, էապես փոխվել է։ Այդ ժամանակամիջոցում մեծ փոփոխություն է կատարվել նաև պետական մարմիններում, որն իր հերթին պահանջել է կատարել նաև կադրային փոփոխություններ։

Իսկ այսօր ի՞նչ պատկեր է ստեղծված կուսակցության կենտրոնական մարմիններում։ Եթե դիմելու լինենք թվերին, ապա պետք է ասեմ, որ Կենտկոմի 301 անդամից 83-ը այժմ կենսաթոշակի է անցած. Կենտկոմի անդամության 157 թեկնածուներից 27-ը կենսաթոշակառու է։ Կենտրոնական վերստուգիչ հանձնաժողովի 82 անդամներից կենսաթոշակառու է 12-ը։ Այսպիսով, այժմ կուսակցության կենտրոնական մարմինների կազմում 122 մարդ կենսաթոշակառու է։

Ներկայումս Կենտկոմում ստեղծված իրավիճակը, և այս մասին ասում են Կենտկոմի կազմում գտնվող, բայց կենսաթոշակի անցած շատ ընկերների հետ տեղի ունեցած զրույցները, իրենց մեջ նույնպես անհանգստություն է առաջացնում։ Շատերը, և միանգամայն ճիշտ, ելնելով կուսակցական խոր համոզմունքներից, կուսակցական էթիկայից և պարզապես մարդկային հնարավորություններից, բարձրացնում են այն հարցը, որ իրենք անհարմար են զգում, քանի որ չեն կարողանում ակտիվորեն մասնակցել կուսակցական ու պետական աշխատանքին, իսկ այժմյան կյանքը, նրա դինամիկան ու մասշտաբները, Կենտկոմի ուսերին ընկած խնդիրները պահանջում են նույնիսկ անհամեմատ ավելի մեծ ակտիվություն։

Մեր ընկերները, ճիշտն ասած, հենց այդ մասին են գրել Կենտրոնական կոմիտեին հասցեագրած դիմումի մեջ։ Նրանք ջերմորեն պաշտպանում են կուսակցության քաղաքական կուրսը, ըմբռնում են վերակառուցողական պրոցեսների հետագա զարգացման՝ Կենտկոմի աշխատանքն ուժեղացնելու անհրաժեշտությունը։ Սակայն միևնույն ժամանակ չեն կարողանում նույն ակտիվությամբ մասնակցել Կենտկոմի աշխատանքին։ Սա ընդհանուրի կարծիքն է։ Կենտկոմի և կենտրոնական վերստուգիչ հանձնաժողովի՝ կենսաթոշակի անցած շատ անդամներ այս հարցը բարձրացնում էին նաև անձնական զրույցների ժամանակ, քննարկում նաև Կենտրոնական կոմիտեի ղեկավարության հետ։

Եվ այդ տրամադրությունների արգասիքը եղավ ԽՄԿԿ Կենտրոնական կոմիտեի պլենումին և ԽՄԿԿ կենտրոնական վերստուգիչ հանձնաժողովին հասցեագրված նրանց կոլեկտիվ դիմումը։

Լայն հրապարակայնության, թե կուսակցության և թե հասարակության իրազեկության մեջ այն, ինչի մասին մենք այսօր խոսում ենք, քննարկվում է թե կոմունիստների և թե անկուսակցականների շրջանում։ Եվ սա այն բանի վկայությունն է, թե խորհրդային մարդիկ ինչքան սրտացավ են կուսակցության, նրա Կենտկոմի համար, վերակառուցման բախտի համար։ Նրանք բոլորն էլ հասկանում են, որ քանի որ հենց կուսակցության ու նրա ղեկավար մարմինների գործունեության հետ է կապված վերակառուցման սկիզբը, ապա հիմա էլ հենց նրանցից է շատ բան կախված, թե վերակառուցումը ինչպես առաջ կգնա։ Մարդիկ անձնական զրույցների, հանդիպումների ընթացքում քննարկում են այս թեման, իրենց մտահոգությունն են հայտնում և նույնիսկ առաջարկում այս հարցի լուծման իրենց տարբերակները։

Ահա այն, ինչ կցանկանայի ասել Կենտրոնական կոմիտեի անդամ, Կենտկոմի անդամության թեկնածու և կենտրոնական վերստուգիչ հանձնաժողովի անդամ մեր մի խումբ ընկերների դիմումի առթիվ։

*Այժմ մենք ինչպե՞ս վարվենք։*

*Քաղբյուրոն հնարավոր է համարում բավարարել Կենտրոնական կոմիտեի այն անդամների, Կենտկոմի անդամության թեկնածուների, կենտրոնական վերստուգիչ հանձնաժողովի անդամների խնդրանքը, որոնք կուսակցության Կենտրոնական կոմիտեին դիմում են գրել իրենց լիազորությունները թոթափելու մասին։ Այս առթիվ որևէ կանոնադրական խոչընդոտ գոյություն չունի։ Սա գաղտնի քվեարկություն չի պահանջում, որովհետև ըստ կանոնադրության քվեարկություն անցկացվում է լոկ այն դեպքերում, երբ այս կամ այն պատճառով հարկավոր է որևէ մեկին հանել կուսակցության Կենտրոնական կոմիտեի կազմից։ Իսկ տվյալ դեպքում խոսքն այն մասին է, որ մարդիկ օբյեկտիվ, ծանրակշիռ պատճառների բերումով իրենք են իրենցից թոթափում լիազորությունները և մենք պետք է ըմբռնումով մոտենանք նրանց խնդրանքին։ Այսպիսին է քաղբյուրոյի կարծիքը։*

*Ինչպես արդեն ասացի, քաղբյուրոն առաջարկություն է մտցնում բավարարել մեր այդ ընկերների խնդրանքը։*

*Ահա իմ ողջ զեկուցումը կուսակցության Կենտրոնական կոմիտեի պլենումին։ Եկեք քննենք, եկեք լուծենք այս հարցը։ Ի՞նչ կարծիքի են Կենտկոմի և կենտրոնական վերստուգիչ հանձնաժողովի անդամները։ Ես ուզում եմ դիմել թե նրանց, ովքեր ստորագրել են դիմումը, եթե նրանցից ոմանք ուզում են ձայն վերցնել՝ խնդրեմ, և թե պլենումի բոլոր մասնակիցներին։*

---

Վերակառուցում. տեսություն

և պրակտիկա

# ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ԱԶԱՏՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ «ՆՈՐ ՄՏԱԾՈՂՈՒԹՅՈՒՆԸ»

**Գ. ՄԽԻԹԱՐՅԱՆ**

ԽՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ 1985 Թ. ԱՊՐԻԼՅԱՆ ՊԼԵՆՈՒՄԻ և XXVII համագումարի քաղաքական ծրագրի նպատակը մեր հասարակության արմատական վերափոխումն է։ Դա ենթադրում է որոշակի գիտակցված տնտեսական ու քաղաքական, ինչպես նաև գաղափարական խնդիրների մշակում ու կենսագործում։

Մեր երկրում, ինչպես և ողջ աշխարհում վերակառուցումը բնութագրվում է որպես սոցիալական հեղափոխություն, որն ունի օբյեկտիվ պատճառաբանվածություն կամ ավելի ճիշտ, իր պատմական անհրաժեշտությունը։ Սա տեսական հիմնավորման կարիք ունի։ Քանի որ այդ պրոբլեմը մեր օրերում դարձել է գիտակցված անհրաժեշտություն, ուրեմն սոցիալական ազատությունը, սոցիալիստական սիստեմի ներքին օրինաչափությունը լինելուց զատ, դարձել է միջազգային հարաբերությունների կարգավորման ու նույնիսկ կառավարման կարևոր լծակ։ Այդ նոր օրինաչափությունն այժմ աստիճանաբար, բայց հաստատուն ընթացքով իրեն ճանապարհ է հարթում։

Հարկ է պարզաբանել «նոր մտածողության» իմաստը որպես սոցիալական ազատության նոր դրսևորում կամ արտահայտություն և լուսաբանել, թե ինչպես է հնարավոր «նոր մտածողության» առաջադրած հարցերի իրականացումը միջազգային մասշտաբով, որը վկայում է սոցիալական ազատության համամարդկային, հումանիստական էությունը։

Տեսական գրականության մեջ մեր կյանքի արմատական վերափոխմանը նվիրված ուսումնասիրություններում առանձնապես կարևոր տեղ է գրավում Մ. Ս. Գորբաչովի «Վերակառուցումը և նոր մտածողությունը մեր երկրի և ամբողջ աշխարհի համար» աշխատությունը։ Այդ գիրքն Արևմուտքում արդեն թարգմանվել է գրեթե բոլոր լեզուներով։ Գրքում առաջադրված մի շարք պրոբլեմներ, մասնավորապես «նոր մտածողության» թեման, արդեն դարձել է արդի փիլիսոփայության ընդհանուր քննարկման առարկան և ունի համամարդկային աշխարհայացքային նշանակություն։

Մինչև ԽՄԿԿ սոցիալական վերակառուցման նոր կուրսի մշակումը «նոր մտածողության» թեման նման դրվածքով չի քննարկվել։ Լճացման տարիներին պաշտոնական մամուլում հրապարակվում էին խաղաղության մասին պաշտոնական դեկլարացիաներ։ Իմպերիալիզմի սպառազինության մրցավազքի կուրսի և ատոմային զենքի արտադրության դեմ ուղղված մեր քննադատությունը շոշափելի արդյունքների չէր հասնում։

Ջանգվածային ոչնչացման միջուկային զենքի առաջին փորձարկումն իսկ մարդկության առջև նոր խնդիրներ է դրել։ Իմպերիալիստական պետությունների արտաքին քաղաքականությունը, մասնավորապես նրանց ռազմականացման կուրսը, որպես բարձր շահույթների ապահովման «հուսալի» միջոց, մեր օրերում հասել է այնպիսի աստիճանի, որ հղի է մարդկության, ամբողջ քաղաքակրթության ու կենդանական աշխարհի ոչնչացման շոշափելի վտանգով։

Բուրժուական աշխարհի որոշ ողջախոհ մտածողներ, փիլիսոփաներ, ֆիզիկոս-

---

*ՄԽԻԹԱՐՅԱՆ ԳՈՒՐԳԵՆ ԵՆՈՔԻ— Փիլիսոփայական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր, ԵՐՊՀ-ի փիլիսոփայության պատմության ամբիոնի վարիչ։*

կան պայքարը: Հանգելով ժամանակի հրատապ օրակարգային հարցի ըմբռնմանը, Բ. Ռասելը չի կարողանում գտնել դրա լուծման հեղափոխական ուղին, քանզի անտեսում է ժողովրդական զանգվածների վճռորոշ նշանակությունը պատմության հորձանուտում: Ազատության կրողները, նրա տեսակետից, միայն խոշոր անհատներ են, որոնք մշակում են ծրագիր, քաղաքականության կուրս, կառավարման սկզբունքներ: Ու թեև Ռասելը բուն Անգլիայում դեռևս 1918 թ. մասնակցում էր նաև գործադուլներին ու նստացույցերին, պայքարում անգլիական կոնսերվատիվ կուսակցության միլիտարիստական քաղաքականության դեմ, սակայն բուրժուական լիբերալիզմից ազատագրվել չկարողացավ:

Նա անկարող եղավ քննադատաբար հաղթահարել իր հայացքների սահմանափակությունը, ինքնաքննադատաբար վերագնահատել դրանք, անցնել ազատության սուբյեկտիվ իդեալիստական տեսակետից նրա օբյեկտիվ էության ըմբռնմանը: Բուրժուական մտածելակերպի տեսադաշտից, ինչպիսի փիլիսոփայական հոսանքի էլ պատկանի տվյալ մտածողը, սոցիալական ազատությունն անհնարին է: Եվ այն միանգամայն ակնհայտ պատճառով, որ այդ մտածելակերպի ելակետը անհատապաշտությունն է, ինդիվիդուալիզմը: Ըստ այդ դիրքորոշման հասարակության մեջ ընդհանուր, գիտակցված նպատակ լինել չի կարող ո՛չ արտադրության մեջ, ո՛չ էլ հասարակական ընդհանուր զարգացման ոլորտում:

Դասակարգային մտածելակերպի սահմանափակության ու նման աշխարհայացքային նախապաշարմունքների հաղթահարման համար նրանց մոտ պակասում է ներքին ինքնաքննադատության առկայությունը: Բ. Ռասելը չկարողացավ բարձրանալ մինչև պատմական իրադրությունների օբյեկտիվ պատճառաբանվածության ըմբռնումը, այն սկզբունքի ըմբռնումը, որ պատմությունը նույնպես օբյեկտիվորեն տեղի ունեցող պրոցես է և ունի իր ուրույն օրենքները, որոնք կախում չունեն մարդկանց սուբյեկտիվ ցանկություններից, կամքից ու գիտակցությունից: Եվ վերջապես նա չկարողացավ տեսնել, որ այդ օբյեկտիվ օրենքների իմացությունն է հնարավորություն ընձեռում մարդկանց, սոցիալական խմբերին ու դասակարգերին՝ ազատագրվել տարերայնությունից, կազմակերպել հեղափոխական կազմակերպության ձևեր ու գիտակցական պայքարի միջոցով ձերբազատվել այնպիսի սոցիալական չարիքներից, ինչպիսիք են գործազրկությունը, սովը, ճգնաժամերը, աշխարհակործան պատերազմները:

Ու թեև Բ. Ռասելը ճաշակել է երկու ահռելի պատերազմների աղետները, պայքարել նրանց սանձազերծող ուժերի դեմ, հասկացել պատերազմների բնաջնջող բնույթը, բայց չի հասել այն բանի ըմբռնմանը, որ նման սոցիալական չարիքի պատճառը իմպերիալիստական կապիտալիզմն է, այն սոցիալական սիստեմը, որտեղ թեև հասարակության արտադրողական ուժերը ահռելի մասշտաբների են հասել, այնուամենայնիվ այնտեղ իշխում է ոչ թե հասարակական ընդհանուր նպատակի գիտակցությունը, այլ խոշոր մոնոպոլիստական միությունների (որոնք վերածվել են անդրազգային կորպորացիաների) շահամոլական պայքարը հանուն հումքային ու մարդկային նորանոր ռեսուրսների:

Այդուհանդերձ «նոր մտածողության» տեսակետը արդի բուրժուական փիլիսոփայական մտքի ակնառու նվաճումներից է: Վերջինս մարքս-լենինյան փիլիսոփայության տեսանկյունից կոչված է արմատական վերափոխման դեր խաղալու ինչպես ամեն մի երկրի ներքին զարգացման, նրա հեղափոխական վերափոխման, այնպես էլ ժողովուրդների ու մեծ տերությունների միջազգային հարաբերությունների արմատական բարելավման գործում: Այն պատմության հեռանկարում բացում է մի շարք նոր պրոբլեմներ:

Ահա այդ նպատակին է ուղղված Մ. Ս. Գորբաչովի «Վերակառուցումը և նոր մտածողությունը...» աշխատությունը, ինչպես նաև 1988 թ. դեկտեմբերի 7-ի ելույթը Նյու Յորքում ՄԱԿ-ի 43-րդ նստաշրջանում: Այդ աշխատության մեջ ցույց է տրված «նոր մտածողության» առաջադրած խնդիրների իրականացման ռեալ հնարավորությունները, մարքսիզմ-լենինիզմի դիրքերից նշված են այն նյութական-իրական ուժերը, որոնք օբյեկտիվորեն կոչված են, պատմության արմատական շրջադարձային դարաշրջաններում, վճռականորեն փոխելու մարդկության հին կենսաձևը և կառուցելու նորը: Այդ ուժերը աշխատավոր ժողովրդական զանգվածներն են, որոնք մեր օրերում դարձել են ավելի համախմբված ու կազմակերպված: Կապի արդի միջոցները բոլոր երկրների ժողովուրդների կյանքն այնպես անմիջականորեն են շաղկապել իրար, որ ոչ միայն օրինակելի կենցաղն ու նորաձևությունն են արագ փոխանցվում մի երկրից մյուսին, մի ժողովրդից մյուսին, այլև ընդհանուր հոգսերը, ցավերը, աղետներն ու ուշագրավ նորությունները:



Այդ վերաբերում է նաև այն համամարդկային պրոբլեմներին, որոնք քննարկվում են «նոր մտածողության» շրջանակներում, դարձել են միջազգային հոգսեր: Շրջանառության մեջ են մտել այնպիսի նոր տերմիններ ու արտահայտչաձևեր, ինչպիսիք են՝ «Եվրոպան մեր տունն է», «Երկիրը մեր ընդհանուր նավակն է», «Աշխարհը բավական փոքրացել է», «Հարկավոր է միասնաբար աշխատել հանուն էկոլոգիական միջավայրի մաքրության» և այլն:

Միջուկային ու զանգվածային ոչնչացման զենքի արտադրությունը և պատերազմներն իսպառ վերացնելու հարցն այժմ դարձել է ամենակենսական պրոբլեմը, պատմական անհրաժեշտություն: Սակայն այդ չի նշանակում, թե դիմադրող հետադիմական ուժերը վերացել են: Տնտեսության ռազմականացման և արդի պայմաններում բավական թանկ նստող ատոմային զենքի արտադրությունն իմպերիալիստների, անդրազգային կորպորացիաների բարձր շահույթներն ապահովելու հուսալի ուղին է, քանի որ դրանով նրանք ազատվում են շուկայական հարաբերությունների թելադրանքից: Պետությունն է և՛ պատվիրողը, և՛ սպառողը: ԱՄՆ-ի վարչակազմը թեև չի կարող, հակառակ իր ժողովրդի ցանկության, դիմադրել Խորհրդային Միության նախաձեռնություններին, այնուամենայնիվ բազմաթիվ արգելքներ է ստեղծում զինաթափման պրոցեսի դեմ: Շնորհիվ ժողովրդական լայն շարժման ու խաղաղության ժողովրդական զանգվածների ձգտման, ԱՄՆ-ի կառավարությունը ստիպված ընդառաջում է «նոր մտածողության» առաջադրած պրոբլեմների մշակմանը, կատարվում են ատոմային զենքի ոչնչացման առաջին գործնական քայլերը:

Չնայած իմպերիալիստական պետությունների հետադիմական շրջանների դիմադրությանը, ինչպես նաև ռազմաարդյունաբերական կոմպլեքսի կողմից բարձր շահույթների ապահովման նպատակով միջուկային և զանգվածային ոչնչացման այլ տեսակի զենքերի արտադրության կազմակերպմանը, ինչպես և ազգային-ազատագրական շարժման ճնշմանը, ռասսայական ու ազգային խտրականության ուժեղացմանը, ներկա փուլում ժողովուրդների ազատագրական պայքարը լայն ծավալ է ձեռք բերել: Աշխարհի առաջադեմ մտածողներն այն համարում են մարդկային քաղաքակրթության ու սոցիալական ազատությունների պաշտպանության լիակատար երաշխիքների իսկական պայքար՝ այն կապելով «նոր մտածողության» առաջադրած պրոբլեմների իրականացման հետ:

«Վերակառուցումը և նոր մտածողությունը...» աշխատությունում, ինչպես և ՄԱԿ-ի 43-րդ նստաշրջանում ունեցած ելույթում Մ. Ս. Գորբաչովը, նախ, հանրագումարի է բերում բոլոր այն պատմական նոր կովանները, որոնք «նոր մտածողության» գործնական խնդիրները դարձնում են հրամայական թե՛ սոցիալիստական, թե՛ կապիտալիստական երկրների համար: Եթե 40—50-ական թվականներին «նոր մտածողության» ծագման պատճառը մասսայական ոչնչացման զենքի առաջին փորձարկումներն էին, ապա այժմ աշխարհը արմատապես փոխվել է այն վիճակի համեմատ, ինչպիսին որ նա այս դարի սկզբին և անգամ կեսերին էր:

Եթե միջուկային զենքի հանդես գալը նման փոփոխությունների «ողբերգական» սկիզբն էր, ապա գիտատեխնիկական հեղափոխության ու գաղութային համակարգի փլուզման, ազգային-ազատագրական շարժման ծավալման հետ «տեղի են ունենում խորագույն սոցիալական տեղաշարժեր», հանդես են գալիս բազմաթիվ «նոր ազգեր ու պետություններ, նոր հասարակական շարժումներ ու գաղափարախոսություններ»: Իր ելույթում Մ. Ս. Գորբաչովը նշեց, որ ծագում են նոր միջազգային պրոբլեմներ՝ տնտեսական, պարենային, էներգետիկ, էկոլոգիական, ինֆորմացիոն, դեմոգրաֆիական բնագավառներում, որոնց լուծումը հնարավոր է միայն միջազգային փոխադարձ կապերի և համագործակցության միջոցով: «Համաշխարհային տնտեսությունը դառնում է միասնական օրգանիզմ, որից դուրս չի կարող նորմալ զարգանալ ոչ մի պետություն՝ ինչ հասարակարգի էլ որ նա պատկանելիս լինի և տնտեսական ինչ մակարդակի վրա էլ... գտնվելիս լինի»:

Համաշխարհային տնտեսության միասնականությունը պահանջում է ոչ միայն աշխատանքի հասարակական բաժանում միջազգային մասշտաբով, այլև առաջադրում է համընդհանուր կառավարման ու կարգավորման կենտրոնի անհրաժեշտությունը: Այդ իր հերթին հրամայաբար պահանջում է ոչ միայն պլանաչափորեն բաշխել հումքի աղբյուրներն ու մարդկային ռեսուրսները, իրացնել արտադրանքը, այլև միասնական վերահսկողություն իրականացնել երկրագնդի էկոլոգիական վիճակի նկատմամբ, որը տարերայնության դեպքում հանգեցնում է էկոլոգիական աղետի:

Ինչպես նշում է Մ. Ս. Գորբաչովը ՄԱԿ-ի նստաշրջանի իր ելույթում, մեր դարաշրջանի «բեկումնային բնույթը» այժմ մարդկությանն առաջադրում է այնպիսի խնդիրներ, որոնք նախկին մեթոդներով լուծել անհնարին է: Միջազգային քաղաքականության մեջ են ընդգրկվել հարյուր միլիոնավոր մարդիկ, որոնք պատմության հետագա առաջընթացն այլ կերպ չեն պատկերացնում, քան դեմոկրատիայի, ազատության և սոցիալական արդարության պայմաններում: Սոցիալական հեղափոխությունները, առանձնապես երկու մեծ հեղափոխությունները՝ 1789 թ. ֆրանսիականը և 1917 թ. Հոկտեմբերյանը,— «արմատապես փոխել են համաշխարհային իրադարձությունների ընթացքն» ու տեմպերը: Այլևս չի կարելի «ուրիշի հաշվին» բարձր կենսամակարդակ ստեղծել սեփական երկրում, ստեղծել անհավասար պայմաններ ու աստղաբաշխական չափերի հասնող պարտքեր բարդել թույլ զարգացած երկրների ժողովուրդների վրա: Մարդկության հետագա առաջընթացը ներկայումս հնարավոր է միայն համաշխարհային նոր կացութաձևի ճանապարհին համամարդկային կոնսենսուսի (փոխհամաձայնության) որոնման միջոցով:

Ծեշտելով ՄԱԿ-ի կարևոր նշանակությունը որպես խաղաղությանն ու անվտանգությանը ծառայող «եզակի միջազգային կենտրոն», որը կարողանում է «խտացնել մարդկության կոլեկտիվ միտքն ու կամքը», Մ. Ս. Գորբաչովը նշում է, որ այդպիսի կենտրոնի անհրաժեշտությունն ավելի քան մեծ է, «առանց որի արդեն անհնար է պատկերացնել համաշխարհային քաղաքականությունը»: Այդ կազմակերպության առկայությունը ոչ միայն վկայում է այն մասին, որ մարդկության համար կենսական անհրաժեշտություն է դարձել **«թևակոխել խաղաղ ժամանակաշրջան»**, այլև բոլոր միջազգային հարաբերությունները կառուցելու ոչ թե բռնության և ուրիշի գործերին միջամտելու, կամայականության, այլ ներդաշնակ միջազգային հարաբերությունների ու ինտերնացիոնալիզմի ոգով:

Այդ կարգի համագործակցությունն ու խաղաղ գոյակցությունը հնարավոր է միջազգային հարաբերությունների դեմոկրատացման և մարդկայնացման, հումանիզացիայի միջոցով: Այդ արդեն կլինի ոչ թե բուրժուական, այլ բոլորովին նոր տիպի մարդկային հարաբերությունների տիրապետություն, իսկական հումանիզմ ու սոցիալական ազատություն, առանց որի այժմ մարդկության գոյատևման, մի նոր քաղաքակրթության ստեղծման մասին հնարավոր չէ երազել:

Նման հարցադրումները վկայում են, որ սոցիալական ազատության և նրա դրսևորման կոնկրետ ձևերից մեկի, «նոր մտածողության» ներգործուն ուժը դուրս է եկել միջազգային ասպարեզ, դարձել մարդկության համընդհանուր պրոբլեմների գիտական լուծման զորեղ միջոց, մի այնպիսի ընդհանուր օրինաչափություն, որը, կարծես, ճանաչման է արժանանում աշխարհի մտավորականության կողմից: Մարդիկ այժմ հասկանում են, որ այլևս չի կարելի սոսկ մասնավոր շահի թելադրանքով կառավարվելով առաջ ընթանալ: Մեր մոլորակի վրա մարդկության ընդհանուր գոյատևման շահերը պահանջում են հաշվի առնել պատմության ընդհանուր օրենքների, նոր պատմական անհրաժեշտության պահանջները:

Այսպիսով, «նոր մտածողության» հաղթանակը, տվյալ առաջադրված խնդիրների իրականացումը պատերազմների և աշխարհակործան զենքերի առմիշտ ոչնչացման, խաղաղության և տարբեր սոցիալական համակարգերի խաղաղ գոյակցության, տնտեսական ու կուլտուրական փոխազդեցության ապահովումը աշխարհի ժողովուրդների բաղձանքների իրականացման ուղին է, բոլոր մարդկանց հավասարության ու ազատ զարգացման ուղին: Սոցիալական ազատության իրականացումը դարձել է մարդկային հասարակարգի հիմնական հեռանկարային նպատակը, որի կենսագործումն այժմ դարձել է ամբողջ մարդկության վերակառուցման, նրա տնտեսական ու կուլտուրական կյանքի հեղափոխական վերափոխման հիմնական նպատակը:

Բոլոր հասարակարգերում էլ տնտեսական կյանքն է ի վերջո պատմության գլխավոր շարժիչ ուժը և արտադրության եղանակի զարգացումն օբյեկտիվորեն ներառում է հասարակության ընդհանուր նպատակը, նրա զարգացումը, որը ծառայում է մարդկանց պահանջմունքների բավարարմանը: Սակայն այդ ընդհանուր նպատակի իրականացումը ոչ մի նախասոցիալիստական հասարակարգում մարդկանց համար չի դառնում որպես գիտակցված ընդհանուր նպատակ: Հենց այդ իմաստով էլ մարքսիզմի դասականները շեշտում են, որ նախասոցիալիստական հասարակարգի զարգացման մեջ իշխում է տարերային անհրաժեշտությունը:

Ինքնին հասկանալի է, որ տարերայնության տիրապետության պայմաններում, ուր պայքար է գնում մասնավոր շահի համար, հասարակական ընդհանուր շահի հետապնդումը և տիրող կարգերի դեմ ուղղված քննադատական մտքի կրողը միշտ էլ աշխատավոր ժողովուրդն է: Այժմ, երբ աշխատավոր մարդկությունը դառնում է դրության տերը, երկրի տերը, իր ձեռքն է վերցնում ոչ միայն քաղաքական կյանքի, այլ առաջին հերթին արտադրության միջոցների կառավարումը, շնորհիվ այն բանի, որ հասարակական ու անհատական շահերը դառնում են ներդաշնակ, մարդիկ այլ կերպ չեն կարող կառավարվել, առաջադիմել ու զարգանալ, քան ինքնավերահսկման, ինքնակատարելագործման ու ինքնաքննադատության միջոցով:

Միջազգային հասարակական կյանքի կառավարման ու գիտակցական ինքնակատարելագործման մեջ չափազանց կարևոր օրինաչափություն են «նոր մտածողությունը», դրա արմատավորումն ու զարգացումը: «Նոր մտածողության» հիմնական դրույթները բխում են մարքսիզմի փիլիսոփայության էությունից: Արդի բուրժուական մտածելակերպի համար մնում է այն երկընտրանքը, որ պետք է կա՛մ վերակառուցվել և առնվազն հրաժարվել մասսայական ոչնչացման զենքի արտադրությունից, զինաթափման և խաղաղ գոյակցության դաշն կնքել սոցիալիզմի երկրների և այսպես կոչված «երրորդ աշխարհի» հետ, կա՛մ, ղեկավարվելով վոլյունտարիզմի և հակակոմունիզմի սկզբունքներով, ավելի խորացնել արդի սոցիալական համընդհանուր ճգնաժամը: Մի բան, որի դեմ այժմ միավորվում են աշխարհի բոլոր խաղաղասեր ու առաջադեմ ուժերը:

Նման դեպքում ԽՄԿԿ-ն ու խորհրդային պետությունը հաշվի են առնում կապիտալիստական աշխարհի սթափ մտածող պետական ու հասարակական գործիչների առողջ բանականությունը, կոչ անում նրանց ձեռնպահ մնալ արկածախնդրական քայլերից ու այնպիսի միջոցներից, որոնք մարդկությանը մղում են միջուկային աղետի, աշխարհակործան պատերազմների: Այս առնչությամբ հուսադրող են ԽՍՀՄ-ի և ԱՄՆ-ի ատոմային զենքի ոչնչացման առաջին քայլերը, ողջամտության հաղթանակի կենսահաստատ ծիլերը:

---

# ԽՈՐՀՐԴԱՀԱՅ ՊԱՏՄԱԳՐՈՒԹՅՈՒՆՈՒՄ ԱԶԳԱՅԻՆ ՀԱՐՑԻ ԼՈՒՍԱԲԱՆՄԱՆ ՈՐՈՇ ԱՍՊԵԿՏՆԵՐ*

**Կ. ԽՈՒԴԱՎԵՐԴՅԱՆ**

ԽՈՐՀՐԴԱՀԱՅ ՊԱՏՄԱԳՐՈՒԹՅՈՒՆՈՒՄ ազգային հարցի բազմակողմանի պրոբլեմը քննարկվել է բազմաթիվ հետազոտություններում, որոնց գերակշիռ մասը հրապարակվել է 1960—1980-ական թվականներին: Այդ պրոբլեմատիկայի հիմնական թեմաներն են՝ ազգային հարցի տեղն ու դերը աշխատավորների հեղափոխական շարժման մեջ, Հայկական խորհրդային պետականության ստեղծումը և զարգացումը. Հայկական ԽՍՀ-ում կուսակցության ազգային քաղաքականության իրագործումը. ազգային-կուլտուրական շինարարությունը և մի շարք այլ հարցեր:

Մեր այս պատմագրական տեսությունը նպատակ չունի վերլուծելու սույն պրոբլեմի վերաբերյալ մեծաքանակ պատմական գրականությունն ամբողջությամբ վերցրած, դա չափազանց մեծ տեղ կզբաղեցներ: Տեսության նպատակն է քննարկել խորհրդահայ պատմագրությունում ազգային հարցի մի շարք ասպեկտների մշակման վիճակը, որոնց նկատմամբ հետաքրքրությունն առանձնապես մեծացել է խորհրդային պատմական գրականությունում՝ մեր երկրի պատմության մեջ առկա «սպիտակ բծերի» վերացման գործում նկատվող միտումի առնչությամբ:

**1. Ազգային հարցը Հայաստանի աշխատավորների հեղափոխական շարժման մեջ:** Այս թեման ինքնին շատ ընդարձակ է և ներառում է մի շարք հարցեր՝ հայ ժողովրդի քաղաքական, սոցիալական և իրավական դրությունը ցարական Ռուսաստանի կազմում. ցարական ինքնակալության ազգային քաղաքականությունն ու հայ ժողովուրդը. հայ ժողովրդի ազգային-ազատագրական պայքարն ու նրա տեղը Ռուսաստանի հեղափոխական շարժման ընդհանուր ընթացքի մեջ և այլն: Օրինաչափ է, որ նշված հարցերը խորհրդային պատմագրությունում քննարկվում են ամբողջ Անդրկովկասին վերաբերող նյութի հիման վրա: Դա պայմանավորված է նրանով, որ Անդրկովկասի ժողովուրդների դրությունը, ցարիզմի հետադիմական քաղաքականության դեմ նրանց պայքարը, մասնակցությունը համառուսաստանյան հեղափոխական շարժմանը մեծապես աչքի են ընկել ընդհանուր գծերով, ինչպես նաև այն բանով, որ հայերն ապրում էին ոչ միայն Հայաստանում, այլև ռեգիոնի այլ վայրերում:

Այս կամ այն չափով հիշյալ հարցերը շոշափել են հեղափոխական շարժման պատմության և Հայաստանում խորհրդային իշխանության հաղթանակի պրոբլեմներով զբաղվող գրեթե բոլոր պատմաբանները: Նշված, ինչպես նաև մի շարք այլ հարցերի վերաբերյալ առանձին հետազոտություն է գրել Գ. Ա. Գալոյանը (Галоян Г. А. Рабочее движение и национальный вопрос в Закавказье. 1900—1922. Ереван, 1969): Մենագրության մեջ Անդրկովկասում ազգային հարցի պրոբլեմը քննարկվել է բանվորական շարժման պատմությանը սերտորեն առնչված և ժամանակագրական լայն շրջանակներում: Հեղինակն առաջադրել և հիմնավորել է Անդրկովկասի ազգային-ազատագրական շարժման պարբերացումը՝ առանձնացնելով երեք հիմնական շրջափուլ— բանվորական շարժման սաղմնավորումից մինչև փետրվարյան հեղափոխության հաղթանակը. փետրվարից մինչև հոկտեմբեր ընկած ժամանակամիջոցը. սոցիալիստական հեղափոխությանը հաջորդած ժամանակաշրջանը: Ընդ որում քննարկված է երկրամասի ազգային բուրժուազիայի էվոլյուցիան: Եթե առաջին շրջափուլում, հանդես գալով ճնշված ազգերի անունից, այդ բուրժուազիան առաջադրում էր համադեմոկրատական պահանջներ, ապա երկրորդ և առանձնապես երրորդ շրջափուլում բուրժուական ազգայնականության համադեմոկրատական բովանդակությունը, ինչպես նշում է հեղինակը, հետին պլան մղվեց. ազգային բուրժուազիան իր հակահեղափոխական նկրտումներով հարեց ռուսական սպիտակգվարդիականությանը և միջազգային իմպերիալիզմին: Հեղինակը ցույց է տալիս, որ Անդրկովկասում ազգային հարցը չափազանց սրվեց երկրամասում ազգայնական կուսակցությունների տիրապետության ժամանակաշրջանում, որոնց հաջողվեց երկրամասը ժամանակավորապես անջատել Խորհրդային Ռուսաստանից և ստեղծել բուրժուական պետություններ՝ Հայաստանի, Վրաստանի և Ադրբեջանի հանրապետությունները: Մենագրությունում առանձնակի ուշադրություն է նվիրվել այն հանգամանքի պարզաբանմանը, թե Անդրկովկասում ազգային հարցին ինչպիսի նշանակություն էր տալիս միջազգային իմպերիալիզմը, որը ձգտում էր ազգայնական շրջաններն օգտագործել սոցիալիստական հեղափոխության, նրա հետագա տարածման դեմ պայքարելու համար:

Գ. Գալոյանի մենագրության դրույթները դարձան Անդրկովկասում, մասնավորապես Հայաստանում, հեղափոխական շարժման վերելքի և սոցիալիստական հեղափոխության հաղթանակի համար պայքարի ժամանակաշրջանում ազգային հարցի նշանակության մասին խորհրդային պատմագրությունում հաստատված կոնցեպցիայի հիմքը: Ցույց է տրված, որ Անդրկովկասում ազգային հարցը սրվեց իմպերիալիզմի ժամանակաշրջանում: Տնտեսական կյանքի ինտերնացիոնալացման, ընդհանրապես ներփակվածության հաղթահարման կապիտալիզմին բնորոշ առաջադիմական միտումն անխուսափելիորեն հակադրվեց ցարական ինքնակալության կուրսին, որը հաստատել էր ժողովուրդների տնտեսական ու քաղաքական անհավասարություն, գործադրում էր ազգային ճնշում, կոպտորեն ոտնահարում հայ ժողովրդի ազգային շահերը, ժամանակ առ ժամանակ վարում բացահայտ ռուսականացման քաղաքականություն: Այդ քաղաքականության բնականոն և օրինաչափ պատասխանը եղավ ազգային-ազատագրական պայքարը: Սոցիալական և ազգային ճնշումից ձերբազատվելու հայ աշխատավորների ձգտումը օբյեկտիվորեն համընկնում էր համառուսաստանյան հեղափոխական շարժման նպատակներին, ազգային-ազատագրական շարժումը վերածում էր պրոլետարական հեղափոխության ռեզերվի:

Հարկ է նշել, սակայն, որ խորհրդահայ պատմագրությունում բնավ էլ ոչ հավասարաչափորեն են լուսաբանվել այդ կոնցեպցիայի բոլոր բաղադրամասերը: Մեր կարծիքով անհրաժեշտ էր ավելի հանգամանորեն քննարկել ու պարզաբանել այն պատճառները, որոնց հիման վրա հայ ժողովրդի ազատագրական շարժման մեջ ժամանակ առ ժամանակ գերակշռում էր ազգային, այլ ոչ թե հեղափոխական-պրոլետարական բովանդակությունը: Թուրքիայի կառավարող շրջանների հայահալած քաղաքականության հետևանքով, որն առավել ցայտունությամբ դրսևորվեց Արևմտահայաստանի հայ բնակչության և Թուրքիայի այլ ռեգիոնների հայերի ցեղասպանության իրականացման փաստում, հայերի ազգային ինքնատիպության պահպանմանն սպառնացող ցարական ինքնակալության ռուսականացման քաղաքականության պատճառով գոյատևման, հայ էթնոսի պահպանման պրոբլեմը կարևորագույնը դարձավ հայ հասարակության բոլոր շրջանների համար: Այսպիսի պայմաններում առավել հրապուրիչ էին ազգային հարցի լուծման այն ծրագրերը, որոնք առաջին պլան էին մղում հայկական հարցը, որովհետև որոշակի ժամանակվանից սկսած հայ ժողովրդի լայն խավերի համար «ազգային հարց» հասկացողությունը նույնացվում էր «հայկական հարց» հասկացողության հետ:

Ազգային հարցի լուծման ծրագրերն առաջին տեղերից մեկն էին զբաղեցնում հայկական ոչ պրոլետարական կուսակցությունների գաղափարական զինանոցում: Մեր պատմական գրականությունում, որպես կանոն, այդ ծրագրերը միանշանակ գնահատվում են որպես ազգայնական, ինտերնացիոնալիզմի սկզբունքներին հակասող: Դա, անշուշտ, այդպես է: Քանի որ հայ ոչ պրոլետարական կուսակցությունների (հնչակ, դաշնակցություն) սոցիալական հենարանը, ինչպես հայտնի է, քաղաքի ու գյուղի մանրբուրժուական խավերն էին, ուստի ազգայնականության գաղա-

---

* Հոդվածի հիմքում ընկած է հեղինակի ելույթը **«Вопросы истории»** հանդեսի խմբագրության կողմից «Ազգային հարցը ԽՍՀՄ-ում. պատմությունը և արդիականությունը» թեմայով 1989 թ. փետրվարի 20—21-ին Մոսկվայում անցկացված «կլոր սեղանի» խորհրդակցությունում:

*ԽՈՒԴԱՎԵՐԴՅԱՆ ԿՈՆՍՏԱՆՏԻՆ ՍՈՒՐԵՆԻ— Հայկական խորհրդային հանրագիտարանի գլխավոր խմբագիր, պատմական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր:*

փարներն ընդունակ էին գրավելու այդ խավերին, արձագանք գտնելու նրանցում: Դրա հետ մեկտեղ հայ բոլշևիկները, ընդունելով ազգային հարցի վերաբերյալ իրենց կուսակցության ծրագրային դրույթները, այդ բնագավառում չէին առաջադրել այնպիսի գաղափարներ, որոնք հաշվի առնեին ցեղասպանության ողբերգությունն ապրած հայ ժողովրդի նվիրական իղձերը և միաժամանակ կարողանային հաջողությամբ դիմակայել ոչ պրոլետարական կուսակցությունների ազգայնական գաղափարներին: Առաջին համաշխարհային պատերազմի սկսվելու հետ, երբ արևմտահայերի շրջանում կամավորական շարժում ծավալվեց, որի շարքային մասնակիցները ձգտում էին իրենց արյան ու կյանքի գնով մոտեցնել արևմտահայ եղբայրների ազատագրման ժամը, հայ բոլշևիկները, ելնելով իմպերիալիստական պատերազմի նկատմամբ ՌՍԴ(բ)Կ ընդհանուր դրույթներից, դատապարտեցին կամավորական շարժումը: Հայ բոլշևիկների այդպիսի դիրքորոշումը հազիվ թե նպաստեր իրենց ժողովրդայնության մեծացմանը աշխատավորական զանգվածների շրջանում:

Փետրվարյան հեղափոխությանը և առանձնապես Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությանը հաջորդած ժամանակաշրջանում Անդրկովկասի ազգայնական կուսակցությունները, կոահելով մասսաների տրամադրությունը, հաստատակամորեն առաջադրում էին երկրամասի ժողովուրդների ազգային պետականության վերականգնման գաղափարը: Խորհրդահայ պատմագրությունում այդ հարցը լուսաբանելիս հիմնական շեշտը դրվում էր այն բանի վրա, որ ազգայնական կուսակցությունները ընդմին ապավինում էին միջազգային իմպերիալիզմի ուժերին, որը ձգտում էր երկրամասը Խորհրդային Ռուսաստանի դեմ պայքարի ամրակետ դարձնել: Բայց միայն արտաքին օգնությունն անբավարար էր: Ազգային պետականության վերահաստատումը ժողովրդայնություն էր վայելում երկրամասի լայն խավերի շըրջանում, և հենց այդ պարագան էլ վճռական դեր խաղաց, որ ազգայնական ուժերին հաջողվեց Անդրկովկասն անջատել Խորհրդային Ռուսաստանից:

Անդրկովկասի բոլշևիկներն ուշացրին իրենց կոնկրետ ազգային ծրագրի մշակումը: Այդ մասին ուղղակիորեն նշեց Ստ. Շահումյանը ՌՍԴԲ(բ)Կ 1917 թ. հոկտեմբերի սկզբում հրավիրված կովկասյան երկրամասային համագումարի իր ելույթում. «Մենք հարցը կոնկրետ պետք է դնենք: Վրացական և հայկական ազգայնական կուսակցություններն արդեն մշակել են իրենց ծրագրերը» (Ս. Գ. Շահումյան, ԵԼԺ, հ. 3, Ե. 1978, էջ 269): Այսպիսով, չի կարելի կարծել,թե Անդրկովկասի բոլշևիկները չէին նկատում և հաշվի չէին առնում ազգային պետականության վերահաստատման գաղափարի գրավչությունը ժողովրդական զանգվածների համար: Հիշյալ ելույթում Ստ. Շահումյանն առաջադրեց Անդրկովկասի ինքնուրույն ազգային խորհրդային հանրապետությունների ստեղծման գաղափարը, նշելով, որ նրանց տարածքային սահմանազատման հիմքում պետք է դնել էթնիկական սկզբունքը: Ինչպես հայտնի է, համագումարը չընդունեց Ստ. Շահումյանի առաջարկը, իսկ նրա առաջադրած ազգային-պետական շինարարության սկզբունքը բոլորովին հաշվի չառնվեց նաև հետագայում՝ Անդրկովկասում խորհրդային իշխանության հաղթանակից հետո: Այդ առնչությամբ պետք է նշել, որ մեր պատմակուսակցական գրականության մեջ, մասնավորապես, առավել հեղինակավոր հրատարակություններում, ոչ միայն չի տրված հիշյալ համագումարում Ստ. Շահումյանի ելույթի գնահատականը, այլև չի շարադրված նրա էությունը (տե՛ս **Հայաստանի կոմունիստական կուսակցության պատմության ուրվագծեր,** Ե., 1967, էջ 236—241, Победа Советской власти в Закавказье. Тбилиси, 1971, стр. 126—129):

Եվս մեկ հանգամանք, որը վերաբերում է Անդրկովկասում Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակից հետո ազգամիջյան հարաբերություններում առաջացած իրադրությանը: Հայաստանի, Վրաստանի, Ադրբեջանի բուրժուական հանրապետությունները ծնվեցին 1918 թ. մայիսի վերջին, այսպես կոչված Անդրկովկասյան Դեմոկրատական Ֆեդերատիվ Հանրապետության (ԱԴՖՀ) կազմալուծումից հետո: Զարմանալի է, որ խորհրդահայ պատմական գրականության մեջ ընդհանրապես լռության է մատնվել այդ պետական կազմավորման ստեղծման և նրա կարճատև (1918 թ. ապրիլից մինչև մայիսի 26-ը) գոյության փաստը: Սխալ ավանդույթ է դարձել խոսել միայն Անդրկովկասյան սեյմի կառավարության մասին, մինչդեռ սեյմը ԱԴՖՀ-ի գերագույն մարմինն էր: Հիշյալ ավանդույթը չի հաղթահարվել նույնիսկ վերջին այն գիտական հրապարակումներում, որոնք հատկապես նվիրված են Անդրկովկասյան սեյմի գործունեությանը (Саркисян А. З. Отражение антинародной деятельности буржуазно-националистических партии Закавказья в стенографических отчётах засиданий Заксейма.— **Вестник Ереванского университета**, № 2,



1985): Ոչ մի խոսք չի ասվել այն պատճառների մասին, որոնք Անդրկովկասի ազգայնական կուսակցություններին հարկադրեցին ընտրել ֆեդերացիայի ստեղծման տարբերակը, որը շատ շուտով բացահայտեց իր սնանկությունը:

2. **Ազգամիջյան հարաբերությունները Անդրկովկասում 1918—1920 թթ.:** Այս թեման նույնպես ավելի հանգամանալի լուսաբանման կարիք ունի: Հայտնի է, որ Անդրկովկասի հիմնական ազգայնական կուսակցությունների միջև գոյություն ունեցած հակասությունները, որոնք հանգեցին բուրժուական ֆեդերացիայի կազմալուծմանը, ոչ միայն չհաղթահարվեցին Հայաստանի, Վրաստանի, Ադրբեջանի հանրապետությունների ստեղծումով, այլև ավելի սրվեցին՝ վերաճելով զինված կոնֆլիկտների: Եթե 1918 թ. հայ-վրացական կոնֆլիկտը կարճատև էր (9—31 դեկտեմբերի) և կարելի է գնահատել որպես տհաճ միջադեպ երկու ժողովուրդների բազմադարյան փոխհարաբերությունների պատմության մեջ, ապա մուսավաթական Ադրբեջանի և դաշնակցական Հայաստանի կոնֆլիկտը շատ ավելի շիկացած էր (պատերազմական գործողությունները ընդմիջումներով շարունակվեցին 1919 թ. մայիսից մինչև 1920 թ. նոյեմբեր) և ողբերգական հետևանքներ ունեցավ բնակչության համար:

Հենց այդ ժամանակ ադրբեջանական կողմը Ղարաբաղը, Նախիջևանը, Զանգեզուրը, հակառակ պատմական իրողություններին և այդ վայրերում հայ բնակչության գերակշռությանը, «վիճելի» տարածքներ համարեց: Հայ-ադրբեջանական կոնֆլիկտի առաջացումը և զարգացումը խորհրդահայ պատմագրությունում լուսաբանված է չափազանց հպանցիկ և մակերեսայնորեն: Օրինակ, «Հայ ժողովրդի պատմության» ակադեմիական հրատարակության յոթերորդ հատորում այդ բախման մասին նույնիսկ չի հիշատակված, ի դեպ դրա հետ կապված իրադարձությունները՝ Ղարաբաղը և Զանգեզուրը բռնագրավելու մուսավաթիստների փորձերը, Շարուր-Դարալագյազի նկատմամբ նրանց հավակնությունները, հայ ժողովրդի ջարդերը, Շուշիի հրկիզումը և այլ դեպքերը այնպիսիներից են, որոնք երկար ժամանակ են մնում ժողովրդի պատմական հիշողության մեջ: Չեն լուսաբանված նաև այն հետևանքները, որոնք Հայաստանում բնակվող ադրբեջանցիների համար հարուցեց հայ-ադրբեջանական կոնֆլիկտը:

Խորհրդահայ պատմագրությունում բնավ չի լուսաբանված ևս մեկ հարց, որն առնչվում է նշված ժամանակաշրջանի հայ-ադրբեջանական հարաբերություններին: Խոսքը վերաբերում է 1918 թ. վերջում Նախիջևանի տարածքում մուսավաթականների ստեղծած այսպես կոչված «Արաքսյան հանրապետությանը», որն անտանտան օգտագործեց Անդրկովկասում ազգամիջյան թշնամանքի հրահրման համար: Թե ինչպիսին էր տեղի բնակչության վերաբերմունքն այդ կարճատև պետական կազմավորման հանդեպ, թե ինչպիսի նպատակներ էին հետապնդում այն ստեղծողները, այս հարցերն անպատասխան են մնացել:

Վերջապես, կարևոր է նշել Հայաստանի և Ադրբեջանի 1918—1920 թվականների փոխհարաբերություններին առնչվող ևս մեկ հանգամանք: Հայ ժողովրդի լայն զանգվածների համար գաղտնիք չէր, որ մուսավաթականները լիովին կողմնորոշվում էին դեպի Թուրքիան: Ահա թե ինչու հայերի պատկերացման մեջ ադրբեջանցիները նույնանում են թուրք ինտերվենտների հետ, որոնք հենց այդ տարիներին բազում աղետներ պատճառեցին Հայաստանին: Այդ նույնացումը հիմնավոր էր ու տևական:

Ինչով կարելի է բացատրել խորհրդահայ պատմաբանների այդպիսի անուշադրությունը նշված հարցերի նկատմամբ: Կարող է լինել միայն մեկ պատասխան. կոնյունկտուրային նկատառումները պատմաբաններին հարկադրում էին լուսաբանել ժողովուրդների փոխհարաբերությունների պատմության սոսկ լուսավոր էջերը, անցողակի հիշատակելով պատմության մռայլ էջերի մասին կամ բնավ չանդրադառնալով դրանց: Ի դեպ, պետք է պարզ լինի, որ ժողովուրդների փոխհարաբերությունները կարող են նոր հիման վրա կառուցվել ոչ թե պատմական ճշմարտությունը թաքցնելով, այլ օբյեկտիվորեն լուսաբանելով և ընկալելով պատմական զարգացման բոլոր հանկարծակի փոփոխությունները, այդ թվում նաև այնպիսիք, որոնք պետք է հաղթահարել:

3. **Անդրկովկասում 1920-ական թվականների սկզբի ազգային-պետական շինարարության հարցեր: Ազգամիջյան հարաբերությունները Հայկական ԽՍՀ-ում:** Անդրադառնալով Անդրկովկասում 1920-ական թվականների սկզբի ազգային պետական շինարարությանը, մենք նկատի ունենք Լեռնային Ղարաբաղի և Նախիջևանի ստատուսի սահմանման հարցերը: Խորհրդահայ պատմագրությունում այս հարցերը մինչև վերջին ժամանակներս հատկապես չեն քննարկվել, պատմագիտության մեջ տի-

բացետող կոնցեպցիան հանգեցվում էր այդ բնագավառում ընդունված բոլոր որոշումներն իբրև միակ ճիշտ և կուսակցության ազգային քաղաքականությանը լիովին համապատասխանող որոշումներ ճանաչելուն:

Ս. Վ. Խարմանդարյանի Անդրկովկասյան ֆեդերացիայի կառավարմանը նվիրված մենագրությունում (Хармандарян С. В. Ленин и становление Закавказской федерации. 1921—1923, Ереван, 1969) առաջին անգամ մեջբերվել է 1921 թ. հուլիսի սկզբին ՌԿ(բ)Կ Կովկասյան բյուրոյի պլենումում Լեռնային Ղարաբաղի հարցի քննարկմանը վերաբերող արխիվային նյութը: Այդ քննարկման հետևանքով, հակառակ նախորդ որոշմանը, ընդունվեց նոր որոշում՝ հետագայում ինքնավար մարզ դարձնելու նկատառումով այդ երկրամասն Ադրբեջանական ԽՍՀ կազմի մեջ մտցնելու մասին: Հեղինակը շարադրում է փաստերը, սակայն գնահատականներ չի տալիս: 1988 թ. հրատարակված «Լեռնային Ղարաբաղ» պատմական տեղեկանքի հեղինակները, օգտագործելով միևնույն փաստերը, հանգում են այն եզրակացությանը, որ Կովկասյան բյուրոյի պլենումի որոշումը սխալ է, որ այն ընդունվել է Ի. Ստալինի ճնշման ներքո (Нагорный Карабах. Историческая справка. Ереван, 1988, стр. 33—35): Ինչ վերաբերում է Ադրբեջանական ԽՍՀ-ի կազմում Նախիջևանի ԻԽՍՀ-ի կազմավորման պատմությանը, ապա խորհրդային պատմական գրականությունում սոսկ անցողիկ է հիշատակվում, որ այդ որոշումն ընդունվել է Խորհրդային Ռուսաստանի համար բարդ միջազգային պայմաններում, քեմալական Թուրքիայի ուղղակի ճնշման ներքո:

Արվածն ակնհայտորեն անբավարար է: Անդրկովկասի տարածքային սահմանազատման և այդ երկրամասի որոշ տեղանքների պատմական, էթնիկական, տնտեսական գործոնները հաշվի առնելու հիման վրա ստատուսի սահմանման, միջազգային դրության և այլ գործոնների ներազդեցության բացահայտման հարցը խորհրդահայ պատմագրության կարևոր խնդիրն է: Ընդ որում, երևի, պետք է հաշվի առնել նաև այն հանգամանքը, որ 1920-ական թվականների ազգամիջյան հարաբերությունների հարցերը քննարկելիս լիովին բացահայտվել է դասակարգային դետերմինիզմը, որի հետևանքով ազգամիջյան հարաբերությունները, ազգային հարցն ընդհանրապես, ճանաչվում էին որպես սոցիալական և դասակարգային հարաբերություններին ենթակա լիակատար ածանցյալներ: Թե՛ տեսությունում, թե՛ գործնականում ընդունված էր, որ սոցիալ-դասակարգային հարաբերությունների՝ ազգային հարաբերությունների փոխառնչության մեջ վճռական կամ կանխորոշիչ կողմը հենց սոցիալ-դասակարգային հարաբերություններն են, որոնք պայմանավորում են տեղի ունեցող ազգային պրոցեսների ընդհանուր բնույթն ու բովանդակությունը: Բոլորովին չէր քննարկվում հակազդեցությունը: Սակայն ակներև է, առանձնապես ազգային հարաբերությունների բնագավառի վերջին իրադարձությունների տեսանկյունից, որ որոշակի քաղաքական պայմաններում այդ ներգործությունը կարող է վճռական նշանակություն ստանալ: Կյանքը ցույց տվեց, որ իրականությունն զգալիորեն ավելի բարդ է ստեղծված ու քարոզվող սխեմայից, որ ազգային հարաբերությունների ոլորտում ձևախեղումների արմատները որոշ դեպքերում խորանալով հասնում են մինչև խորհրդային իշխանության առաջին տարիները:

Հայկական ԽՍՀ-ում ազգամիջյան հարաբերությունները խորհրդային իշխանության առաջին իսկ տարիներից բնորոշվում էին այն աշխատանքի հաջողությամբ, որը կատարվում էր Հայաստանում ապրող ազգային փոքրամասնությունների սոցիալական ու մշակութային մակարդակի բարձրացման նպատակով: Պետք է նշել, որ բնակչության ազգային կազմի հարաբերական համադրությամբ, բնիկ ազգության մեծ գերակշռությամբ աչքի ընկնող Խորհրդային Հայաստանի համար ազգային քաղաքականության հիշյալ բնագավառն այնպիսի բարդություն չուներ, որը հատկանշական էր ազգային կազմի մեծ խայտաբղետություն ունեցող այլ հանրապետություններին:

Խորհրդահայ պատմագրությունում կան մի շարք ուսումնասիրություններ, որոնցում լուսաբանվում է խորհրդային իշխանության առաջին տարիներին ազգային փոքրամասնությունների շրջանում կատարված աշխատանքը: Գ. Վ. Ծառոյանի գրքում (Գ. Վ. Ծառոյան, **Հողաշինարարությունը Հայաստանի ազգային փոքրամասնությունների շրջանում** 1921—1927 թթ., Ե., 1960), հանգամանորեն քննարկվել է հանրապետության ազգային փոքրամասնություններին հողով ապահովելու աշխատանքը: Հեղինակը մասնավորապես նշել է, որ խորհրդային իշխանության հաղթանակից հետո 1920-ական թվականների առաջին կեսում Հայկական ԽՍՀ են վերադարձել տասնյակ հազարավոր ադրբեջանցիներ, որոնք հանրապետությունից հեռացել էին



1918—1920 թթ. հայ-ադրբեջանական կոնֆլիկտի պատճառով: Չնայած Հայաստանի հատկանշական սակավահողությանը, իշխանության մարմինները հնարավոր ամեն ինչ արեցին վերադարձած ադրբեջանցիներին տեղավորելու և նրանց հողով ապահովելու համար: Աշխատությունում քննարկվում են նաև ռուս բնակչության, քրդերի և այլ ազգային փոքրամասնությունների հողաշինարարության հարցերը:

Ազգային փոքրամասնությունների շրջանում կատարված կուլտուր-լուսավորական աշխատանքը, Հայաստանի ազգային փոքրամասնությունների համար մայրենի մշակույթին հաղորդակցվելու պայմանների ստեղծման նկատմամբ խորհրդային իշխանության հոգատարությունը լուսաբանվել են Վ. Ս. Ղազանչյանի և Կ. Ս. Խուդավերդյանի մենագրություններում (Վ. Ս. Ղազանչյան: **Խորհրդային կուլտուրայի առաջին քայլերը,** Ե., 1964, Худавердян К. С. Культурная революция в Советской Армении. 1920—1940. Ереван, 1966), որոնք նվիրված են հանրապետությունում կուլտուրական շինարարության պատմությանը: Ցույց է տրված, որ կուլտուրական շինարարության ընթացքում մեծ ուշադրություն է դարձվել ազգային փոքրամասնությունների անգրագիտության վերացման, նրանց համար դպրոցների ստեղծման, մասնագիտական կադրերի պատրաստման, ազգային փոքրամասնությունների լեզուներով պարբերականների և գրականության հրատարակման ու այլ միջոցառումներին:

Մի շարք աշխատություններ նվիրված են հանրապետության քուրդ բնակչության սոցիալական ու մշակութային զարգացման հարցերին (Чатоев Х. М. Курды Советской Армении. Исторический очерк 1920—1940) Ереван, 1965, Ն. Խ. Մախմուդով, **Քուրդ ժողովուրդը,** Ե., 1959, Չաչանե Կարլենե, **Հայ ժողովրդի եղբայրական ընտանիքում,** Ե., 1980, նույն հեղինակի՝ **Հայ մտավորականության դերը քրդական մշակույթի զարգացման գործում,** Ե., 1987): Դրանցում շոշափվել են քրդական գրերի ստեղծման պատմությունը, անգրագիտության վերացումը, դպրոցական ցանցի կազմակերպումը և շատ այլ հարցեր: Ցույց է տրված, որ հանրապետությունում հրատարակվում է քրդերեն թերթ՝ միակը ԽՍՀՄ-ում, որ Հայաստանի գրողների միությունում ստեղծվել է քրդական գրականության սեկցիա, իսկ Հայկական ԽՍՀ ԳԱ արևելագիտության ինստիտուտում գործում է քրդագիտության բաժին: 1928 և 1979 թթ. բնակչության մարդահամարների միջակա ժամանակահատվածում Հայկական ԽՍՀ-ում քրդերի թիվն ավելացել է գրեթե 3,5 անգամ: Պետք է շեշտել, որ Ադրբեջանական ԽՍՀ-ում 1926 թ. քրդերի թիվն ավելի մեծ էր Հայկական ԽՍՀ-ի քուրդ բնակչության թվի համեմատությամբ, բայց հետագայում քրդերի առկայության մասին պաշտոնական փաստաթղթերում չի հիշատակվում:

Հետազոտման կարիք ունի Հայաստանի ռուս փոքրամասնության սոցիալական ու մշակութային զարգացման հարցը: Ի. Վ. Դոլժենկոյի մենագրությունում (Долженко И. В. Хозяственный и общественный быт русских крестян Восточной Армении. Ереван, 1985) հետազոտվում են Արևելյան Հայաստանում ռուս նորաբնակների հայտնվելու պատմությունը, նրանց տնտեսական զբաղմունքները, հասարակական առօրյան, սակայն հետազոտությունների ժամանակագրական շրջանակները սահմանափակվում են XX դարի սկզբով: Խորհրդային Հայաստանի ռուս բնակչության սոցիալական դրությունը, նրա մշակութային զարգացման մակարդակն առայժմ պատմաբանների և ազգագրագետների տեսադաշտից դուրս են մնում:

Չկան Հայկական ԽՍՀ ադրբեջանական բնակչության սոցիալ-տնտեսական և մշակութային զարգացման հարցերին նվիրված հատուկ աշխատություններ: Խորհրդային իշխանության տարիներին Հայաստանի ադրբեջանցիների համար ստեղծվել են մայրենի լեզվով միջնակարգ ու բարձրագույն կրթություն ստանալու հնարավորություններ, հրատարակվում է ադրբեջաներեն թերթ, գործում է ադրբեջանական թատրոն: Խորհրդային իշխանությունը մեծ նշանակություն էր տալիս ադրբեջանական բնակչության համար կուլտուրական զարգացման հավասար պայմանների ստեղծմանը: Դրա վկայությունն է այն փաստը, որ Հայաստանի հեղկոմի պետական լեզվի մասին դեկրետով (1920 թ. դեկտեմբեր) սահմանվել էր, որ մահմեդականներով բնակեցված վայրերում հայերենի հետ պետական լեզու էր ճանաչվում նաև ադրբեջաներենը (**Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության և սովետական իշխանության հաղթանակը Հայաստանում,** փաստաթղթերի և նյութերի ժողովածու, Ե., 1960, էջ 419):

Վերջին տարիներին խորհրդահայ պատմագրությունում ի հայտ եկան էթնոսոցիոլոգների առաջին այնպիսի աշխատությունները, որոնցում շոշափվում են նաև ազգային փոխհարաբերությունների հարցերը: Այդ պրոբլեմների ուսումնասիրման

գործում սոցիոլոգիական հետազոտությունների օգտագործումը հնարավորություն է ընձեռում լիովին և համոզիչ կերպով բացահայտելու ազգամիջյան հարաբերությունների բարդ պատկերը, մեծացնում եզրակացությունների հավաստիության աստիճանը: Ռ. Ս. Օհանջանյանը ձեռնամուխ է եղել Հայկական ԽՍՀ քաղաքներում միջանձնային ազգային հարաբերությունների հետազոտմանը (Ռ. Ս. Օհանջանյան, Ազգամիջյան հարաբերությունների էթնոսոցիոլոգիական ուսումնասիրման որոշ հարցեր, ՀԽՍՀ ԳԱ հնագիտության և ազգագրության ինստիտուտի գիտական նստաշրջանի նյութերը, Ե., 1981, նույն հեղինակի Некоторые черты национальной психологии.— В кн.: Население Еревана. Этносоциологические исследования. Ереван, 1986 գրքում): Նա վերլուծել է այն էթնիկական ստերեոտիպերին առնչվող հարցերը, որոնք ազգամիջյան հարաբերությունների պրոցեսների վրա էականորեն ներգործող կարևոր մեխանիզմներ են: Ազգային ստերեոտիպերի ձևավորման վրա ազդող գործոնները քննարկելիս հեղինակն առանձնացնում է սոցիալ-տնտեսական, կուլտուրական, աշխարհայացքային, պատմական, սոցիալ-հոգեբանական և այլ գործոններ:

Ընդունելով այդ բոլոր գործոնների կարևորությունը, պետք է նշել, որ մեր կարծիքով, հարևան ժողովուրդների ազգային ստերեոտիպերի ձևավորման ընթացքում առաջատար նշանակություն է ձեռք բերում պատմական գործոնը: Ժողովուրդների հիշողությունը խորապես պահպանում է նրանց փոխհարաբերությունների պատմության ինչպես դրական, այնպես էլ հատկապես բացասական հանգամանքները, սերընդեսերունդ փոխանցում կայունացած ստերեոտիպը՝ ամեն անգամ դրան հարադրելով տվյալ ազգի հետ փոխհարաբերություններում ի հայտ եկած ամեն մի նոր երևույթ: Այսպիսով, ժողովրդի պատմական հիշողությունը կարևոր դեր է խաղում ազգամիջյան հարաբերություններում. դա պարզորոշ կերպով հաստատվեց Լեռնային Ղարաբաղում և նրա շուրջը վերջերս տեղի ունեցած իրադարձությունների ժամանակ: Այդ ընթացքում երևան եկած բացասական երևույթները (հայերի ջարդը Սումգայիթում), իրենց հերթին, անկասկած, նստվածքաշերտ կգոյացնեն հայերի պատմական հիշողության մեջ, զարկ կտան ադրբեջանցիների բացասական ազգային ստերեոտիպի ձևավորմանը, որն ավելի կդժվարացնի երկու ժողովուրդների հարաբերությունների կանոնավորումը:

Անդրադառնանք ազգամիջյան հարաբերությունների ոլորտի ուսումնասիրման կարիք ունեցող ևս մեկ հարցի: Դա հանրապետությունից դուրս, երկրի այլ ռեգիոններում ապրող հայերի սոցիալական և կուլտուրական զարգացման պրոբլեմն է: Խորհրդահայ պատմական գրականությունում ուսումնասիրվել են Ռուսաստանում (Աստրախան, Նոր Նախիջևան, Հյուսիսային Կովկաս, Մոսկվա), Ուկրաինայում (Լվով, Կամենեց-Պոդոլսկ), Մոլդավիայում (Գրիգորիոպոլ), Ղրիմում հայկական համայնքների ստեղծման պատճառները և ուղիները, հետազոտվել են դրանց զարգացումը, հայերի սոցիալ-տնտեսական և իրավական դրությունը, նրանց մշակութային կյանքը, ցույց է տրվել հայ գաղթօջախների դերը հայ-ռուսական առնչությունների զարգացման, հայ ժողովրդի ռուսական քաղաքական կողմնորոշման ձևավորման գործում:

Կան Վրաստանի հայությանը, օտարերկրյա նվաճողների անտանելի սոցիալական և տնտեսական ճնշման պատճառով մի ժամանակ այդտեղ ապաստանած բազում հայերի՝ այդ երկրի քաղաքական, տնտեսական կյանքին ունեցած մասնակցությանը վերաբերող աշխատություններ: Սակայն հայ գաղթօջախների պատմության շարադրումը խզվում է, որպես կանոն, 1917 թ., և այն տպավորությունն է ստացվում, որ խորհրդային իշխանության հաղթանակից հետո երկրի այլ ռեգիոնների հայ բնակչության ճակատագիրն այլևս հետաքրքրություն չի ներկայացրել պատմաբանների համար:

Խորհրդահայ պատմագրությունում չկան Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզի սոցիալ-տնտեսական և մշակութային զարգացմանը նվիրված աշխատություններ: Պարադոքսային իրավիճակ է, երբ սփյուռքում ապրող հայերը, նրանց սոցիալական դրությունը, մշակութային կյանքը, իրենց էթնիկական ինքնատիպության պահպանման համար պայքարը, հայրենիքի՝ Խորհրդային Հայաստանի հետ նրանց առնչությունները պատմաբանների համար ուսումնասիրման առարկա են, երբ հանրապետության գիտությունների ակադեմիայի համակարգում գործում է սփյուռքի հայության պատմության ու մշակույթի ուսումնասիրման կենտրոնը (որն, անշուշտ, միանգամայն անհրաժեշտ է), բայց մեր երկրի այլ ռեգիոնների հայ բնակչության պատմությունը գիտության տեսադաշտից դուրս է մնացել:



Արդի աշխարհն ականատեսն է այնպիսի ֆենոմենի, ինչպիսին էթնիկական
վերածնունդն է, ազգային ինքնագիտակցության բուռն աճը, որը գլոբալ բնույթ է
ստանում. դա ճանաչում է գտել նաև խորհրդային պատմաբանների ու ազգագրա-
գետների նորագույն աշխատություններում (Тишков В. Народы и государство.—
Коммунист, № 1, 1989): Այդ երևույթից հեռու չի մնացել նաև Հայկական ԽՍՀ
սահմաններից դուրս երկրի այլ ռեգիոններում ապրող հայ բնակչությունը: Ավելին,
կարելի է պնդել, որ ազգային ինքնագիտակցության աճն այդ բնակչության շրջա-
նում ավելի հստակորեն է դրսևորվում, որը միանգամայն հասկանալի է: Էթնիկա-
կան վերածննդի ֆենոմենի հիմնական հատկանիշներն են ազգային մշակույթի ո-
լորտում իրեն լիովին բացահայտելու ձգտումը, մայրենի լեզուն, եթե այն կորված
է, վերագտնելու, ազգամիջյան հարաբերությունների բնագավառում կուտակված և
տվյալ էթնոսի ազատ զարգացմանը խոչընդոտող բոլոր ձևախեղումները դեն նե-
տելու ձգտումը: Այսպիսով, խոսքը վերաբերում է հանրապետության սահմաններից
դուրս ապրող հայերի յուրահատուկ շահերի ապահովման համար առավել նպաս-
տավոր պայմանների ստեղծմանը: Թերևս, հարկավոր է անդրադառնալ ազգային
կուլտուրական ինքնավարության արժանիքների և թերությունների վերաբերյալ հար-
ցին, ինքնավարություն, որը մեր պատմագրությունում գնահատվում է միանշանակ՝
միայն բացասականորեն: Արժե վերհիշել նաև այն, որ խորհրդային իշխանության
առաջին տասնամյակում երկրում կային ոչ միայն ինքնավար հանրապետություններ
ու մարզեր, այլև ավելի փոքր ազգային-կուլտուրական կազմավորումներ՝ շրջաններ,
նույնիսկ գյուղխորհուրդներ:

Լեռնային Ղարաբաղում վերջերս տեղի ունեցած իրադարձությունների վերլու-
ծությունը ցույց է տալիս, որ դրանց պատճառը սոցիալ-տնտեսական կյանքում ինք-
նավար մարզի ոչ միայն հետ մնալն էր, այլև, գլխավորապես, մարզի հայ բնակչու-
թյան ազգային արժանապատվության ոտնահարումը, նրա մշակութային զարգաց-
ման ճանապարհին կանգնեցված արգելափակոցները: Միանգամայն օրինաչափ է, որ
հայ ժողովուրդը մշտապես մտահոգված է երկրի այլ ռեգիոններում բնակվող իր եղ-
բայրակիցների սոցիալական ու մշակութային կյանքի, նրանց համար մայրենի լեզ-
վի և մշակույթի պահպանման պայմաններով: Դա համապատասխանում է XIX հա-
մամիութենական կուսակցական կոնֆերանսի հիմնադրույթներին, որը պահանջեց
այնպիսի հասարակական մթնոլորտի ստեղծում, որի պայմաններում ցանկացած ազ-
գությանը պատկանող մարդը մեր սոցիալիստական հայրենիքի ցանկացած մասում
իրեն զգա ինչպես իր տանը (տե՛ս ԽՄԿԿ XIX համամիութենական կոնֆերանսի
նյութերը, Ե., 1988, էջ 189): Երկրի այլ ռեգիոններում ապրող հայ բնակչության
սոցիալական և հոգևոր զարգացման պրոբլեմի ուսումնասիրումը պատմաբանների,
ազգագրագետների և սոցիոլոգների կողմից հնարավորություն կընձեռի ավելի պար-
զորոշ պատկերացնելու հայերի՝ որպես էթնո-կուլտուրական ամբողջության ապա-
գան:

XIX համամիութենական կուսակցական կոնֆերանսի ընդունած «Ազգամիջյան
հարաբերությունների մասին» բանաձևում նշված է, որ ժամանակակից ազգային
քաղաքականությունը խոր գիտատեսական մշակման կարիք ունի: Հանրապետու-
թյան պատմաբանների, սոցիոլոգների, ազգագրագետների, փիլիսոփաների պարտքն
է նպաստել այդ խնդրի հաջող կատարմանը:

# ԱՆՀԱՏԻ ՁԵՎԱՎՈՐՄԱՆ ԿԱՐԵՎՈՐ ՄԻՋՈՑ

**Ս. ԽՈՆԻՆ**
**Կ. ՂԱԶԱՐՅԱՆ**

ԽՄԿԿ XXVII ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ արմատական որոշումներ ընդունեց մեր հասարակության սոցիալ-տնտեսական առաջընթացն արագացնելու վերաբերյալ: Կուսակցության մշակած կոնցեպցիայում շեշտված ուշադրություն է դարձվում Խորհուրդների երկրի քաղաքացիների սոցիալ-ստեղծագործական ակտիվությունը բարձրացնելու խնդիրներին: Մեր սոցիալիստական հասարակարգը շահագրգռված է ակտիվ, քաղաքականապես հասուն, արդիականության բոլոր հարցերի լուծմանը մասնակցելու պատրաստ երիտասարդության դաստիարակությամբ:

Այսօր, անկասկած, երիտասարդությունը կոչված է կանգնելու վերակառուցման առաջավոր դիրքերում: Դեռ ավելին, աշխատանքը, պրակտիկ գործերը չեն կարող կտրված լինել կուլտուր-լուսավորչական խնդիրների ամբողջությունից, անձի գաղափարաբարոյական ձևավորումից: «Մենք,— նշեց Մ. Ս. Գորբաչովը ՀամԼԿԵՄ XX համագումարում,— չենք կարող խզում թույլ տալ մարդու նյութական վիճակի և հոգևոր հարստության աճի միջև»: Այժմ մենք կանգնած ենք երիտասարդության գիտակցության և հոգևոր աշխարհի բարդ ու չափազանց տևական վերակառուցման առջև: Վերջինս ենթադրում է դոգմաների և կեղծ արժեքների, կոմունիզմի կառուցման վերաբերյալ պարզունակ պատկերացումների խորտակում, նոր մտածողության հաստատում, որը հիմնված է այսօրվա իրողությունների նկատմամբ մարքսիզմ-լենինիզմի ստեղծագործական կիրառման վրա: Սակայն, ցավոք, պետք է նշել, որ հասարակությունը նորացնելու գործում վերակառուցման շատ դժվարություններ բխում են մշակույթի, լայն առումով սաած, պակասից: Գիտատարողունակ, բարձր-տեխնիկական արտադրությունը չի կարող գոյություն ունենալ ու զարգանալ առանց համապատասխան մշակութային ինֆրակառուցվածքի, հավասարապես նաև առանց մարդկանց աշխատանքի կուլտուրայի և ամբողջ ապրելակերպի հետագա աճի: Ավելին, հայտնի է, որ «Հաջողության որևէ երաշխիքով գործելու համար հարկավոր է գիտենալ այն նյութը, որի վրա պետք է ազդել» (Маркс К., Энгельс Ф., Соч. т. 16, стр. 195).

Նշված ոլորտների միջև ամեն մի խզում սոցիալական անկման սպառնալիք է պարունակում:

Մշակույթը ոչ միայն վերացական հասկացություն է, այլև անհատի զարգացման ու ինքնադրսևորման մի մեխանիզմ: Վերջինս ամբողջական պատկերացում է տալիս հասարակության ու յուրաքանչյուր անձի քաղաքացիական դիրքորոշման էական բնութագրի մասին: Այսօր քաղաքացիական դիրքորոշումը ոչ միայն կուսակցության տնտեսական ստրատեգիայի ըմբռնման կարևորագույն պայման է, այլև անձի կողմից ամենօրյա աշխատանքով երկրի նորացման վիթխարի ծրագրի իրականացմանը հոգեբանորեն պատրաստ լինելու կարողություն: Ընդհանուր առմամբ մեզ հարկավոր է ի մի ձուլել մեր հասարակության հեղափոխական նորացման և մարդու գաղափարաբարոյական դաստիարակման պրոցեսները: Այս կապակցությամբ նշանակալից չափով աճում է կուլտուր-լուսավորչական հիմնարկությունների դերը ինչպես կուլտուրայի ձևավորման, այնպես էլ երիտասարդության քաղաքացիական ակտիվության բարձրացման գործում:

Երիտասարդության կոմունիստական դաստիարակության ասպարեզում աշխատանքն ուժեղացնելու անհրաժեշտությունը պայմանավորված է նաև ներքին դրդապատճառներով: Չէ՞ որ պատանեկան տարիքն անձի հասունացման առավել ինտենսիվ ժամանակաշրջանն է: Հենց այդ շրջանում է սկսվում անցումը մանկությունից հասունության և հասուն մարդու պատասխանատու դերին: Մենք պարտավոր ենք հաշվի առնել, որ յուրաքանչյուրի կյանքն ամբողջապես բաղկացած է հոգեբանական անկումից ու հաղթանակից, վեհացումից ու ստորացումից, վերելքից ու վայրէջքից: Մարդու սոցիալական ստատուսը ենթակա է փոփոխման: Տարիքի ու կեցության մշտական պայքար է ընթանում: Այս առումով խիստ կասկածելի է այն կարծիքը, թե սոցիալական հասունության հիմնական չափանիշը տնտեսական ինքնուրույնության հասնելն է: Դա բավական չէ: Մի՞թե քիչ դեպքեր կան, երբ փող վաստակելու կարողությունը զուգակցվում է բարոյական ցնցող տհասության հետ:

Սոցիալական հասունության ձևավորումը երիտասարդության՝ աստիճանաբար սոցիալական կյանք մտցնելու բազմակողմանի պրոցես է, նրա մշտական ինքնակատարելագործումն ու ինքնադաստիարակումը: Ընդ որում հասարակությունը չի կարող անտարբեր մնալ այն խնդրում, թե ինչի՞ն է ուղղված երիտասարդ սերնդի ակտիվությունը, ի՞նչ գաղափարներով ու մտքերով են տոգորված նրանց նպատակամղումները, նրանց ամբողջ հոգևոր աշխարհը: Այդ պրոբլեմն ուսումնասիրող մասնագետներն ընդունում են նրա բովանդակության հարստությունը, որում առանձնացնում են հասարակական պարտքի նկատմամբ գիտակցական վերաբերմունքը, գիտելիքի ու համոզմունքի, խոսքի և գործի միասնությունը: Բայց, մեզ թվում է, թե պրոբլեմը շատ ավելի բարդ է, քան մենք այն պատկերացնում ենք: Կյանքը հաստատեց այդ բանը: Երիտասարդ սերնդի ձևավորման ու զարգացման վճռորոշ գործոններից մեկը անհրաժեշտ և ազատ ժամանակի դիալեկտիկան է:

Ազատ ժամանակն այն ժամանակն է, որն անմիջաբար չի ծախսվում արտադրողական աշխատանքի վրա, այլ մնում է հաճույքի, զվարճությունների, ազատ գործունեության ու ինքնազարգացման համար: Այն աշխատանքի բնական շարունակությունն է, ավելի վսեմ գործունեություն, «ես»-ի ինքնիրականացման ոլորտը, այնինքն՝ սեփական «ես»-ը «ուրիշ սուբյեկտի վերածելն է, և որպես ուրիշ սուբյեկտ էլ նա այնուհետև մտնում է արտադրության անմիջական պրոցեսի մեջ» (նույն տեղը, հ. 46, մաս II, էջ 221): Միանգամայն օրինաչափ է, որ ԽՄԿԿ-ն խիստ կարևորում է ազատ ժամանակի՝ իբրև անհատի լիակատար զարգացման համար անհրաժեշտ միջոցի, ինտելեկտուալացումը, նրա ստեղծագործական բովանդակության հարըստացումը: Անհատի զարգացման խնդիրը, բնականաբար, չի կարող հանգեցվել միայն ուսուցման, արվեստի հաղորդակցման, ժամանակն ազատ անցկացնելուն կամ պարզապես այն մի բանով լցնելուն:

Այսօր կուլտուր-լուսավորչական հիմնարկությունների գործունեությունը պետք է նպաստի հասարակության առջև ծառացած խնդիրների լուծմանը, ինչպիսիք են, դիցուք, ազատ ժամանակի ակտիվացումն ու ինտելեկտուալացումը, զգացմունքների և մտածողության կուլտուրայի ձևավորումն ու զարգացումը, յուրաքանչյուրին մեր իդեալների համար կայուն մարտնչողի դիրքորոշման մղելը, կուսակցության առաջադրած նոր գաղափարները ճկուն կերպով յուրացնելու և հնացած հայացքներից վճռականապես ազատվելու համար հասարակական գիտակցության վերակողմնորոշումը, ձգտումը այն բանին, որ յուրաքանչյուր մարդ ինքն իրեն վերաբերվի ինքնաքննադատաբար, խստիվ ու սևեռուն: Այդ պատճառով էլ մշակույթի ասպարեզում ձեռք բերված մակարդակի յուրացումը անհատի սեփական ստեղծագործական ակտիվության բարձրացման անհրաժեշտ պայման է: Յուրացնելով մշակութային արժեքները, անհատը զարգանում է, դառնում ինքնատիպ անհատականություն:

Կուլտուր-լուսավորչական օջախներից, օրինակ, ակումբը կոչված է զարգացնելու անհատի ընդունակությունները, հարստացնելու սոցիալիստական ապրելակերպը, ձևավորելու առողջ պահանջմունքներ ու գեղագիտական բարձր ճաշակ: Բայց ժամանակակից ակումբն արդյոք համապատասխանո՞ւմ է մեր օրերի պահանջներին: Երքաղսովետի գործադիր կոմիտեի կուլտլուսհիմնարկների վարչության աշխատողները հարցում են արել 210 մարդու: Այն հարցին, թե «Հաճա՞խ եք դուք ակումբ այցելում», պատասխաններն այսպիսին են եղել. 1) «Չեմ այցելում»— 75 մարդ, 2) «Տարին 1—2 անգամ»— 56, 3) «Տարին 5—6 անգամ»— 39, 4) «Ամիսը 1—2 անգամ»— 27, 5) «Շաբաթը մեկ անգամ»— 17: Այն հարցին, թե «Ինչու՞ չեք այցե-

---

*ԽՈՆԻՆ ՍՏԵՊԱՆ ՄԻԽԱՅԼՈՎԻՉ— Կույբիշևի կուլտուրայի ինստիտուտի փիլիսոփայության ամբիոնի վարիչ, փիլիսոփայական գիտությունների թեկնածու:*

*ՂԱԶԱՐՅԱՆ ԿԱՐԵՆ ՊԱՎԵԼԻ— Երքաղսովետի գործկոմի կուլտուրայի վարչության պետի տեղակալ, փիլիսոփայական գիտությունների թեկնածու:*

լում կուլտլուսհիմնարկներ» ըստ քանակակարգի պատասխանել են. «Միջոցառումները չեն համապատասխանում իմ հետաքրքրություններին», «Միջոցառումները ցածրորակ են», «Ցանկություն չունեմ», «Ազատ ժամանակ չունեմ»:

«Ազատ ժամանակի բացակայությունը» վերջին տեղում է: Իսկ այն հարցին՝ «Եթե ազատ ժամանակն ավելանար, ինչի՞ն առավելություն կտայիք», պատասխանել են այսպիսի քանակակարգով. 1) կինոթատրոն հաճախելուն— 78, 2) պարզապես հանգստանալուն— 44, 3) թատրոն հաճախելուն— 38, 4) գեղարվեստական ինքնագործունեությանը— 27, 5) ինքնակրթությանը— 23:

Վերջին քսան տարիներին երկրում ի հայտ է եկել «ազատ ժամանակի անբավարարության» աճի միտում: Բայց չէ՞ որ աշխատանքային շաբաթը չի ավելացել: Պատճառն ակնհայտ է. փոխվել է հետաքրքրությունների շրջանակը:

Ակումբային պրակտիկայում ազատ ժամանակը օբյեկտիվ և սուբյեկտիվ պատճառներով իր դրսևորումների մեջ սահմանափակ անձնավորությունը հնարավորություն է ընձեռում մշակույթին հաղորդակցվելու միջոցով ինքնաարտահայտվելու, համակողմանիորեն կատարելագործվելու: Սոցիալիստական հասարակության մեջ ազատ ժամանակը դադարում է մարդու սոսկ աշխատանքի ընթացքում ծախսված էներգիայի վերականգնման միջոց լինելուց: Այն անհատի համակողմանի զարգացման գործոնի դեր է ձեռք բերում:

Կուլտուր-լուսավորչական հիմնարկությունների գործունեությունը պետք է մարդկանց օգնի դրսևորելու իրենց սոցիալական էության մղումները, նպաստի նրանց ինքնակրթությանը, հոգևոր աճին, մանկայնության, թերպատասխանատվության, սեփական թերությունների նկատմամբ հանդուրժողական վերաբերմունքի հաղթահարմանը, այսինքն՝ պետք է սատար լինի մարդուն մշակելու կատարյալ բնավորություն, ակտիվ կենսադիրքորոշում: Ակումբային աշխատանքի կենտրոնում պետք է լինի մարդը: Չի կարելի թույլ տալ, որ նա իր կենսական պրոբլեմների հետ միայնակ մնա: Այստեղից էլ հետևում է ակումբային աշխատանքների կողմնորոշիչ խնդիրը՝ լիովին օգտագործել բոլոր հնարավոր միջոցները մարդկային գործոնն ակտիվացնելու համար: Այստեղ առաջին պլան է մղվում անհատական մոտեցումը՝ իբրև անհատի կարևոր հատկանիշների հաջող ձևավորման անհրաժեշտ պայման: Այս առումով որոշակի, իրոք, արդյունավետ աշխատանք են կատարում վարչության համակարգի կուլտլուսհիմնարկությունների աշխատողները: Վերջին 2—3 տարիներին ըստ հետաքրքրությունների սիրողական միավորումների ու ակումբների թիվը շեշտակիորեն աճել է: Եթե 1986 և 1987 թվականներին դրանց թիվը համապատասխանաբար եղել է 4 և 16, ապա 1988 թվականին այն հասել է 41-ի: Միավորումների և ակումբների աճը արդյունք է մարդկանց, հատկապես երիտասարդության ներքին պահանջմունքների խոր ուսումնասիրության:

Դաստիարակումն ակումբի ունեցած միջոցներով այդ կարևոր պրոցեսի սոսկ մի մասն է: Նրանում չկան գլխավոր ու երկրորդական: Նպատակին հասնելու ուղին նույնքան բարդ է, ինչպես մարդն՝ ինքը: Հարկ է նկատել, որ երիտասարդ սերնդի շրջանում բացասական երևույթների վերացման ուղիները գտնվում են անհրաժեշտ և ազատ ժամանակի միասնության գիտականորեն հիմնավորված մեխանիզմի մեջ՝ աշխատանքային, գաղափարական, ֆիզիկական, մտավոր, գեղագիտական դաստիարակության հաշվառմամբ հանդերձ: Այսօր, խոսելով անհատի դաստիարակության մասին, այդ պրոցեսում չի կարելի առանձնացնել ինքնին բարոյականությունը, համոզմունքները, արարքները, արժեքները ճիշտ այնպես, ինչպես չի կարելի մեր պատկերացումներում գեղագիտական իդեալն առանձնացնել բարոյական իդեալից՝ որպես բացարձակ ինքնուրույնություն: Պատանեկության նկատմամբ ամենից ավելի կիրառելի է այն օրինաչափությունը, որը կարելի է ձևակերպել այսպես. մարդն իր մեջ գեղեցիկը հայտնաբերում է բնության և արվեստի մեջ գեղեցկի ընկալման շնորհիվ: Վերջինիս միջոցով դեպի մարդը՝ ահա կուլտլուսհիմնարկների աշխատողների հիմնական խորհրդանիշը: Բայց գեղեցիկով «վարակելը» նույնքան դժվար է, ինչպես արվեստի ու մշակույթի հետ մշտապես հաղորդակցվելու պահանջմունք առաջացնելը:

Դաստիարակչական աշխատանքում անհրաժեշտ է հաշվի առնել, որ հոգևոր արտադրանքը, հոգևոր արժեքների բաշխումն ու սպառումը մեր հասարակության մեջ կողմնորոշված են դեպի մարդու ստեղծագործական հնարավորությունների և հոգևոր աշխարհի զարգացումը, նրա ապրելակերպի ձևավորումը: Սակայն, առանց հոգևոր արժեքների ոլորտում պահանջմունքների կոնկրետ իմացության սոցիալ-ստեղծագործական ակտիվության զարգացման պրոցեսն անհեթեթություն է: Ահա



թե ինչու կուլտլուսհիմնարկությունների գործունեության մեջ կենտրոնական տեղ է գրավում անհատի՝ որպես աշխատանքային գործունեության սուբյեկտի, հոգևոր-քաղաքական զարգացումը: Այդ պրոցեսում իբրև կայուն բաղադրամաս է մնում անհատի արժեքների համակարգը, որով նա կողմնորոշվում է կյանքում, իր գործունեության և վարքագծի մեջ: Արժեքների կայունության աստիճանը թույլ է տալիս դատելու անհատի ձևավորման չափի մասին: Բարձր հասարակական նպատակների, գաղափարական համոզվածության, աշխատանքի հանդեպ ունեցած իրոք ստեղծագործական մոտեցմամբ է մեծապես պայմանավորված անհատի հոգևոր գործունեության կազմավորումը, նրա և հասարակության շահերի հետագա ամրապնդումը, կյանքի բոլոր ոլորտներում կոլեկտիվության սկզբունքների հաստատումը:

Հանրահայտ է, որ ակումբը հասարակական մի այնպիսի կազմակերպություն է, որը միավորում է որոշակի շրջանի, մասնագիտության, ինչպես նաև միատեսակ գործարար շահերի կամ քաղաքական հետաքրքրությունների տեր մարդկանց՝ համատեղ զվարճության համար: Ուստի այն ժամանցի կամավոր միավորում է: Հոգևոր արժեքներ սպառողի և հատուկ գիտելիքներ, գաղափարներ կրողի միջև հաղորդակցումը կուլտլուսհիմնարկություններում կենդանի բնույթ է կրում, երկխոսական է ու երկկողմանի:

Կուլտուրայի վարչության ակումբային հիմնարկությունների երիտասարդական ինքնագործունեության մեջ մասնակցության շարժառիթների ուսումնասիրությունը ըստ առաջադրված հարցերի հետևյալ պատկերն է ներկայացնում. «սերը դեպի արվեստը»՝ 63 տոկոս, «ժամանակն ուրախ անցկացնելը»՝ 25, «պրոֆեսիոնալ դառնալը»՝ 13, «իր ստեղծագործական ընդունակությունները զարգացնելը»՝ 10, «ուրիշներին մտքեր ու զգացմունքներ հաղորդելը»՝ 2 տոկոս: Բացարձակ առաջատարը «սերն է դեպի արվեստը» և միաժամանակ երկու տոկոս է կազմում արվեստի միջոցով ուրիշներին մտքեր ու զգացմունքներ հաղորդելը: Սիրել, բայց չհաղորդել, չարտահայտել: Ու միևնույն ժամանակ պրոֆեսիոնալ դառնալ ցանկացողների թիվը յոթ անգամ գերազանցում է գեղեցիկը զգալ ու հաղորդել ցանկացողների թվին: Այստեղից պարզ է դառնում, որ ինքնագործունեության միավորումը երիտասարդության բազմաբնույթ հասարակական պահանջմունքների իրացման ձև է: Հաղորդակցության ձևերի ինքնակատարելագործումը դառնում է ոչ միայն առաջատար գիտական, այլև սուր քաղաքական պրոբլեմ: Բանն այն է, որ ներկայումս հաղորդակցության սոցիալական ձևերի կրճատման և անձնական տնային ձևերի զարգացման միտում է նշմարվում: Մասնագետներն այդ երևույթի սոցիալական պատճառների թվին են դասում նյութական բարեկեցության աճը, բնակարանային պայմանների բարելավումը, տնային կուլտուր-կենցաղային ապրանքների թողարկման աճը, կրթական մակարդակի բարձրացումը, ինֆորմացիայի մասսայական միջոցների համակարգի ու դերի վերելքը, ազատ ժամանակի ավելացումը:

Ակնհայտ է, որ մշակութային գործունեության տնային ձևերի զարգացման պրոցեսը կշարունակվի հետագայում ևս: Դրանով հանդերձ անթույլատրելի է դաստիարակության հիմնարկային ձևերի, բնակչության վրա դրանց ազդեցության նվազումը: Ի տարբերություն մշակույթի տնային «սպառման», որը մասնակի-մակերեսային բնույթ է կրում, ակումբներն այդ պրոցեսի սիստեմայնություն, նպատակաուղղվածություն և խորություն են հաղորդում:

Առաջ եկած հակասությունը լուծելու ուղիներից մեկը անհատական մշակութային գործունեության տեսակներին առավելապես համապատասխանող ընդհանուր կուլտսպասարկման ոլորտի ստեղծումն է: Իհարկե, չի կարելի միայն հրահանգչական ձևեր օգտագործելու միջոցով մշակութային պահանջները լիովին բավարարելու խնդիր դնել: Բայց մեր օրերում օբյեկտիվորեն կատարվող պրոցեսները հաշվի առնելու անհրաժեշտությունը պետք է կուլտուր-լուսավորչական հիմնարկությունների աշխատանքային սկզբունքը դառնա՝ բնակչության կուլտսպասարկման ու այդ մասին նրա հասարակական կարծիքի ձևավորման գործում: Սակայն գաղափարախոսական, գեղագիտական աշխատանքի հաջողությունը ձեռք է բերվում այն ժամանակ ու այնտեղ, երբ և որտեղ դաստիարակությունը վերափոխվում է ինքնադաստիարակության, անհատի ինքնակատարելագործման միտումի: Միայն հոգևոր, նյութական ու կազմակերպչական գործոնների համակցությունը կարող է հասցնել աշխատանքի բարձր կուլտուրային՝ երիտասարդ սերնդի կարգապահության ամենահուսալի երաշխիքին:

Այսօր, երբ պայքար է գնում հնի և նորի միջև, երբ բախվում են կարծիքներն ու դիրքորոշումները, անհրաժեշտ է ուսումնասիրել և լավ իմանալ հասարակական

կարծիքը, երիտասարդության տարբեր խավերի տրամադրությունները, ընթացիկ պրոցեսների նկատմամբ նրանց վերաբերմունքը: Միևնույն ժամանակ աշխարհայացքի ձևավորումն անհնարին է առանց իրականության ստեղծագործական վերափոխման գործում մարդու ներգրավման: Պարզ ու հասկանալի է դառնում, որ այդ պրոցեսում հոգևոր արժեքները հանդես են գալիս իբրև սոցիալական կողմնորոշման վրա ազդեցության կայուն գործոն: Այդ կապակցությամբ էլ ակումբային աշխատանքն իրեն հատուկ ձևերով ու մեթոդներով կոչված է երիտասարդ սերնդին կողմնորոշելու դեպի սոցիալիստական հասարակության հոգևոր և բարոյական արժեքները: Այստեղ դեռևս քիչ չեն սպիտակ բծերը: Բայց մի բան պարզ է, որ ակումբային աշխատանքը հանդես է գալիս իբրև գեղագիտական և բարոյագիտական դաստիարակության ամենադեմոկրատական ձև: Դրանում կարևորն այն է, որ այդ դաստիարակությունը դրսից, վերևից չէ, այլ՝ ներսից, ընկերների ու հասակակիցների կողմից:

Անմիջական հաղորդակցման միջոցով հասարակական կարծիքը հարկ եղած ուղղությամբ կողմնորոշելն ավելի հեշտ է: Դա մեծ նշանակություն ունի թերությունների, բարոյականության նորմերից կատարվող շեղումների դեմ պայքարում: Աշխատանքի ամբողջ բովանդակությունը պետք է կառուցված լինի քաղաքացիական բարձր ակտիվության, կոմունիստական աշխարհայացքի ամրապնդման ոգով: Խոսքը ի վերջո ոչ միայն աշխատավորության մարքս-լենինյան կրթության մասին է, այլ կոմունիստական բարոյականության՝ որպես գիտելիքների, համոզմունքների և գործողությունների համաձուլվածքի մասին, յուրաքանչյուր մարդուն կենսական ակտիվ դիրքորոշում ներարկելու մասին, երբ խոսքի ու գործի միասնությունը ձգվում է մինչև կենդանի, ստեղծագործական մարքսիզմ-լենինիզմը, երբ մերժելի են դոգմատիզմը, սխոլաստիկան ու քաղաքական ճամարտակությունը:

Հայտնի է, որ հոգեկան-բարոյական դաստիարակության գործում վճռական դեր են կատարում գաղափարախոսական գործոնները, դաստիարակների և իրենց իսկ՝ դաստիարակվողների գիտակցական գործունեությունը, որի նպատակն է սոցիալական կոլեկտիվի, դասակարգի տեսակետից արժեք ներկայացնող բնավորության որոշակի գծերի, վարքի կանոնների ձևավորումը: Վերջնական նպատակը անձի սոցիալական վարքի կատարելագործումն է: Վերջինս ձևավորվում է այն սոցիալական հարաբերություններում, որոնցում անհատն ընդգրկվում է իր կենսագործունեության ընթացքում: Անհատականությունը սոցիալական հատկություն է, որն արտահայտվում է շրջապատող աշխարհի և իր իսկ նկատմամբ մարդու ունեցած սուբյեկտիվ-անձնական հարաբերությունների համակարգում: Անհատականություն դառնալու պահանջմունքն է ապահովում մարդու ակտիվ ներգրավումը սոցիալական կապերի մեջ, որոնք գոյանում են օբյեկտիվորեն, անհատի կամքից անկախ: Եվ ինչպիսի յուրահատուկ հատկանիշներով էլ որ բնութագրվեն անհատի սոցիալական գործողությունները, դրանք վերջին հաշվով նրա գիտակցության մեջ անդրադարձն են հասարակական հարաբերությունների այն բարդ համակարգի, որի շրջանակներում իրագործվում է մարդու կենսագործունեությունը:

Հենց ակումբային միջոցառումների նպատակային ուղղվածությունն է, որ պետք է նպաստի հասարակության մեջ գոյություն ունեցող արժեքների ու նորմերի յուրացմանը, դրական հակումների զարգացմանը և կոլեկտիվի ու հասարակության մեջ դրանց հաստատմանը: Ակումբային աշխատանքի ձևերն ու մեթոդների լայն կիրառումը նպաստում է անհատի էական հատկանիշների զարգացմանը, որոնցից են գործող սկզբունքների, նորմերի յուրացումը, կենսագործունեության համապատասխան ձևերին ու միջոցներին տիրապետելը: Դա սոցիալական ակտիվության դրսևորումն է, բուն անհատի ինքնաարտահայտում, նրա ընդունակությունների իրագործումը հասարակական կենսագործունեության ոլորտում:

Կուլտուր-լուսավորչական հիմնարկությունները մարդու համար ինքնադրսևորման այնպիսի հնարավորություն են ընձեռում, առանց որի անհատը չի կարող հասնել լիակատար ինքնադրսևորման: Այդ գործում մշակույթի և նրա օջախների հումանիստական բնույթն առավել ակնհայտ է սոցիալիստական հասարակության մեջ, որտեղ գլխավորը անհատի սոցիալական առաջադիմությունն է: Եվ պատահական չէ, որ մարդու սոցիալական դերի բարձրացման, նրա կուլտուրական աճի պրոբլեմը ԽՄԿԿ XXVII համագումարը առաջադրեց միաժամանակ և՛ որպես նպատակ, և՛ որպես հասարակության որակական նոր սահմանագծի հասնելու միջոց: Իսկ դա ենթադրում է յուրաքանչյուր մարդու ընդհանուր քաղաքացիական-սոցիալական ակտիվության ձևավորման ու զարգացման հանդեպ բարձր ուշադրություն: Մեր օրերում, երբ հարկ է լինում դեն նետել այն, ինչին վարժվել ենք տասնամյակների ըն-



թացքում, վերստին սովորել, փոխել աշխատանքի հնարքները, առանձին արժեք են ձեռք բերում այնպիսի ունակությունները, ինչպիսիք են ցանկացած ամենաբարդ իրավիճակը կշռադատորեն վերլուծելը, լուծումների նորույթներից չսարսափելը, խուճապի չմատնվելը, նույնիսկ բացասական փորձից դրական դասեր քաղելը: Այդ ամենն էլ հենց բարձր պահանջներ է ներկայացնում ընդհանուր քաղաքացիական ակտիվության զարգացմանը:

Ակումբային գործունեության ոլորտում որպես սոցիալական գործունեության չափանիշ է հանդես գալիս գեղարվեստական-ստեղծագործական ակտիվությունը, որն իր հերթին արարման ունակությունների զարգացման ու գործառման ցուցանիշ է: Հետևաբար, որքան բարձր է ստեղծագործական ունակությունների զարգացման մակարդակը, այնքան բարձր է սոցիալական ակտիվության աստիճանը: Ազդել անհատի սոցիալական ակտիվության վրա՝ նշանակում է ազդել նրա արժեքային կողմնորոշումների, այն պատճառների վրա, որոնք բնորոշում են դրանք: Այսպես, արվեստի ստեղծագործությունների պատճառած գեղագիտական հաճույքը զարգացնում և սրում է գեղագիտականի հետ հաղորդակցվելու պահանջմունքն ինչպես արվեստի ոլորտում, այնպես էլ իրական կյանքում: Դա անհատի սոցիալական ակտիվության վրա արվեստի ազդեցության ելակետային պարագան է: Դրան զուգահեռ զարգանում է ավելի գործնական պահանջմունք՝ ինքնագործ գեղարվեստական ստեղծագործության միջոցով մասնակցել արվեստի արժեքների ստեղծմանը: Այդ բարձրագույն գեղագիտական պահանջմունքը հատուկ է զարգացած ինքնագործ կոլեկտիվների անդամներին, որոնցում պայմաններ են ստեղծված յուրաքանչյուր անհատի ստեղծարար կարողությունների, սոցիալական ակտիվության աճի համար:

Քաղսովետի գործկոմի կուլտուրայի վարչության կուլտուր-լուսավորչական հիմնարկությունների համակարգում այս առումով ուշագրավ է գեղարվեստական ինքնագործունեության հետևյալ կոլեկտիվների աշխատանքը: Դրանք են՝ № 3 մշակույթի տան պարահանդեսային պարերի ժողովրդական անսամբլը, № 5 մշակույթի տան վոկալ-գործիքային անսամբլը, № 6 մշակույթի տան ակադեմիական երգչախումբը, № 10 մշակույթի տան «Կարմիր բլուր» պարային ժողովրդական անսամբլը, № 11 մշակույթի տան մանկական պարային անսամբլը և ուրիշներ:

Սոցիալիստական արժեքների ներդրումն ընթանում է բուրժուական աշխարհի արժեքների հետ հակամարտության պայմաններում: Բացի այդ, նոր արժեքներն անգամ սոցիալիզմի օրոք դեռևս հասարակության բոլոր անդամների սեփականությունը չեն դարձել, իսկ երբեմն էլ ոչ ամբողջապես են իմաստավորվել: Մեր օրերում կատարվող իրական պրոցեսների վերլուծությունը հնարավորություն է տալիս այս բնագավառում առանձնացնելու այն հակասությունները, որոնք գոյություն ունեն ազատ ժամանակի աճող ծավալի և մարդկանց մոտ այն օգտագործելու հմտությունների բացակայության միջև, կուլտուր-լուսավորչական աշխատանքի բովանդակության և ժամանակակից մարդու կուլտուրական մակարդակի, ակումբի ինքնագործ բնույթի և կառավարման վարչարարական եղանակների ու մեթոդների միջև և այլն:

Սոցիալապես ակտիվ անհատի ձևավորումն ու զարգացումն այսօր շատ բանով պայմանավորված են ակումբային պրակտիկայում նշված հակասությունների լուծումով: Հենց ակումբում է, որ մարդիկ հնարավորություն են ստանում «երես առ երես» ծանոթանալու մշակույթի այս կամ այն նվաճումներին: Այնտեղ մարդիկ անմիջականորեն հաղորդակցվում են մշակույթի հետ, որոնք մեծապես ազդում են նրանց գիտակցության ու վարքի վրա: Մշակույթի հիմնարկությունների հասարակական նշանակալիությունը ամրագրված է ԽՍՀՄ սահմանադրության մեջ (հոդված 46): Ակումբային աշխատանքի գլխավոր նպատակը ազատ ժամանակի միջոցով մարդու հատկանիշների ձևավորումն ու զարգացումն է: Իսկ դա նշանակում է, որ կուլտուր-լուսավորչական հիմնարկությունների բովանդակալից աշխատանքն այսօր կոչված է ակումբային հիմնարկությունների գործունեության կենտրոնում դնելու ոչ միայն արտադրական խնդիրներ, այլև ազատ ժամանակում ապրելակերպի չափանիշ դառնալ: Կուլտուր-լուսավորչական աշխատանքն ազատ ժամանակի միջոցով օրգանապես լրացնում է անհատի սոցիալականացումը և անհատականացումը որպես անդասակարգ հասարակության ստեղծման անկապտելի բաղադրամաս: Կուլտուր-լուսավորչական աշխատանքը ոչ միայն գեղագիտական միջոցներով դաստիարակումն է, այլև մասսաների ինքնադաստիարակումը, նրանց ընդհանուր քաղաքացիական ակտիվության աճը, որն ուղղված է հասարակության մեջ անհատի, որպես ստեղծագործական, կազմակերպչական ու կառավարչական ուժի ունեցած դերը առավելագույն չափով պահպանելուն:

# ԿՈՈՊԵՐԱՑԻԱ. ԶԱՐԳԱՑՄԱՆ ՆՈՐ ՓՈՒԼ

Ա. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ

ԽՄԿԿ XXVII ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ **որոշումներով սահմանվում է կոոպերատիվ** ձեռնարկությունների և կազմակերպությունների հիմնարար ստատուսը, այն է՝ ինքնուրույն տնտեսական գործունեության, կոոպերատիվ սեփականության ռեալ տնօրինման նրանց իրավունքը:

Կոոպերատիվ սեփականությունը դա սեփականության կոլեկտիվ ձև է, բայց նույնական չէ համաժողովրդական սեփականությանը: Այն տարբերվում է նրանով, որ մարդկանց տվյալ կոնկրետ խումբն է տնօրինում արտադրության միջոցները և աշխատանքի արգասիքները: Սակայն տվյալ փուլում բանը սեփականության ձևական հանրայնացումը չէ, այլ պահանջմունքների բավարարման համար նրա արդյունավետ օգտագործումը:

Կոոպերացիայի դերի մասին արտահայտվել է դեռևս Ֆ. Էնգելսը՝ 1886 թ. Ա. Բեբելին հղած նամակում: Նա նշել է, որ լիակատար կոմունիստական տնտեսության անցնելիս մենք հարկ կզգանք, որպես միջանկյալ օղակ, լայն չափերով կիրառել կոոպերատիվ արտադրությունը: Արտադրության կազմակերպման կոոպերատիվ ձևի անհրաժեշտությունը վերանում է միայն այն ժամանակ, երբ նա սպառում է իր բոլոր պոտենցիալ հնարավորությունները, և երբ գործունեության պայմաններով ու արդյունքներով չի տարբերվի համաժողովրդականից: Սեփականության կոոպերատիվ ձևը բնավ չի խոչընդոտում պետական սեփականության զարգացմանը: Ուստի դրանք չպետք է հակադրել:

ԽՍՀՄ սոցիալ-տնտեսական զարգացման արագացման կոնցեպցիան նախատեսում է երկրի առջև ծառացած պրոբլեմների լուծման համար արդի պայմաններում բազմազան կոոպերատիվ ձևերի լիակատար կիրառում:

Ընդսմին նկատի է առնվում, որ սեփականության և արտադրության (սպասարկումների) կազմակերպման կոոպերատիվ ձևը ապրանքների որոշ տեսակների (ծառայությունների) պակասորդի վերացման համար արգասավոր է ոչ միայն տվյալ կոնկրետ ժամանակամիջոցում, այլև հետագայում՝ հաճախ փոփոխվող հասարակական պահանջմունքների արագ բավարարումն ապահովելու համար: Կոոպերատիվն ավելի օպերատիվորեն է արձագանքում այդ փոփոխվող պահանջմունքներին, անհրաժեշտ կարողություններ ստեղծում դրանց բավարարման համար՝ առանց հատկացումներ ստանալու պետական բյուջեից, կենտրոնական պլանավորող մարմիններից, այլ հանդես բերելով նախաձեռնություն, օգտագործելով սեփական ռեսուրսները և տեղական նյութերը: Հայաստանի սպառողական կոոպերացիան, ժողովրդական դեպուտատների քաղաքային ու շրջանային խորհուրդները, մինիստրությունները և գերատեսչությունները արտադրության ու ծառայությունների ոլորտում կոոպերատիվների զարգացման նկատմամբ նոր մոտեցումներ և լուծումներ են որոնում: 1988 թ. հոկտեմբերի 10-ի դրությամբ հանրապետությունում գործում էր 1785 կոոպերատիվ, որոնցում աշխատում էր 28540 մարդ: Նշված ժամանակամիջոցում դրանք արտադրել և իրացրել են ավելի քան 96 միլիոն ռուբլու ապրանքներ ու ծառայություններ: Ընդ որում արտադրական կոոպերատիվների թիվը կազմել է 987, դրանց գործունեության ծավալը՝ 61,4 միլիոն ռուբլի, հասարակական սննդինը՝ համապատասխանաբար՝ 319 և 11,1 միլիոն ռուբլի, կենցաղային սպասարկմանը՝ 317 և 14 միլիոն ռուբլի և այլ կոոպերատիվներինը՝ 162 և 9,5 միլիոն ռուբլի: Հայկոոպի համակարգում գործում է 327 կոոպերատիվ՝ 23,8 միլիոն ռուբլու շրջանառությամբ: Ըստ մեր հաշվարկների, այդ կոոպերատիվների շրջանառության ծավալն արդեն այս տարի համանման տեսակների գծով կգերազանցի հանրապետության կոոպերատիվ արդյունաբերության արտադրության ծավալը: Կոոպերատիվների զարգացումն ընթանում է բուռն կերպով և դա պահանջում է կազմակերպական-մեթոդական օգնություն ցույց տալ նրանց: Չէ՞ որ յուրաքանչյուր կոոպերատիվի աշխատանքում, բացի շինություններից, հումքից, սարքավորումներից և նյութատեխնիկական ապահովման այլ տեսակներից, ծագում են բազմաթիվ կազմակերպական ու տնտեսական պրոբլեմներ, որոնց լուծումն այնքան էլ դյուրին չէ:

Սպառողական կոոպերացիայի ՀԳՀ-ի հայկական մասնաճյուղն արդեն երկու տարի է կազմակերպական-մեթոդական մշակումներ է կատարում: Ընդ որում մենք համագործակցում ենք ոչ միայն Հայկոոպի, այլև այլ համակարգերի կոոպերատիվների հետ: Այդ ժամանակաշրջանում զգալի աշխատանք կատարվեց նախաձեռնող խմբերի հետ և ստեղծեցինք միանգամայն տարբեր պրոֆիլի՝ պարենային և ոչ պարենային ապրանքների արտադրության, հասարակական սննդի, ծառայությունների ոլորտի, առևտրական-մթերող և այլ կոոպերատիվներ:

Մասնաճյուղը սոցիոլոգիական հետազոտություններ կատարեց կոոպերատիվների ստեղծման համար լրացուցիչ աշխատանքային ու նյութական ռեսուրսների որոնման նպատակով: Անկետային հարցումներն առավել արդյունավետ էին հանրապետության լեռնային շրջաններում: Այդ շրջանների մի մասում առկա են բանվորական ուժի ավելցուկ, բնական ռեսուրսների զգալի պաշարներ, սակայն բնակչության ուժեղ արտահոսք է նկատվում սոցիալական ոլորտը զարգացած չլինելու և այն պատճառով, որ մարդիկ լրիվ զբաղվածություն չունեն:

Հաճախ է արծարծվել լեռնային շրջանների սոցիալական զարգացման, բնակչությանն առևտրական օբյեկտներով, հեռախոսային, ճանապարհային ցանցերով, բժշկական սպասարկմամբ, սոցկուլտկենցաղային և այլ օբյեկտներով ապահովելու հարցը: Հանրապետության կառավարությունը վերջին տարիներին ընդունել է մի շարք որոշումներ լեռնային շրջանների ինֆրակառուցվածքը բարելավելու և զարգացնելու մասին, սակայն այդ պրոբլեմները պատշաճ մակարդակով չլուծվեցին: Այստեղ տնտեսված է գլխավորը՝ այդ ռեգիոնում ընտանեկան բյուջեի ցածր մակարդակը: Չնայած այն բանին, որ հիշյալ հարցերի լուծման համար միջոցներ էին ձեռնարկվում, ստեղծվում արդյունաբերական ձեռնարկությունների մասնաճյուղեր, արդյունահանդերձ, արդյունաբերական և գյուղատնտեսական զարգացման, առանձնապես միջսեզոնային ժամանակաշրջանում աշխատանքային ռեսուրսների օգտագործման օպտիմալ տարբերակներ չգտնվեցին: Հենց այդ պատճառով էլ Հայաստանի լեռնային գյուղերն սկսեցին նկատելիորեն դատարկվել: Այստեղ միայն վերջին երկու տարում կոոպերատիվների ստեղծումն արդեն լավ արդյունքներ տվեց՝ բացվեցին հասարակական սննդի կոոպերատիվներ, վերակենդանանում են ժողովրդական արհեստները, կոոպերատիվները ձեռնամուխ են եղել ավազահանքերի ու քարհանքերի մշակմանը, բուծում են լեռնային իշխան: Դա նպաստում է բնակչության ավելի լավ զբաղվածության ապահովմանը, բարելավում ժողովրդական սպառման ապրանքներով ու սննդամթերքներով մատակարարումը, խթանում առևտրի և կենցաղային սպասարկման ոլորտի զարգացումը: Այդուհանդերձ, մեզ մոտ կոոպերատիվ աշխատանքի փորձն այնքան էլ հարուստ չէ:

Մեր մասնաճյուղի կատարած ուսումնասիրությունների շնորհիվ ի հայտ են բերվել կոոպերատիվ շարժման զարգացման ընթացքում առաջացող որոշ պրոբլեմներ:

---

*ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ ԱԼԲԵՐՏ ՍԻՄՈՆԻ — Սպառողական կոոպերացիայի համամիութենական ԳՀԻ հայկական մասնաճյուղի դիրեկտոր, Հայաստանի կոոպերատիվների խորհրդի նախագահ, տնտեսագիտության թեկնածու*

Պրակտիկան ցույց է տալիս, որ սպառողական կոոպերացիայի՝ նախկինում վնասաբեր և սակավ շահութաբեր ձեռնարկությունները փոքր կոոպերատիվների սկզբունքով աշխատանքի անցնելուց հետո շահութաբեր են դարձել:

Այսպես, վնասով աշխատող սննդի կոմբինատի հիման վրա ստեղծված «Արծվաքար» կոոպերատիվ ձեռնարկությունների արտադրության ծավալը մեկ տարում զգալիորեն մեծացավ (3,3 անգամ), աշխատանքի արտադրողականությունն աճեց 2,8 անգամ, իսկ շահութաբերությունը, հիմնական ֆոնդերի հաշվարկմամբ, կազմեց 18,6 տոկոս: Նկատելիորեն բարձրացավ միջին աշխատավարձը: Համանման է իրավիճակը նաև Հայկոոպի նախկին՝ սակավ շահութաբեր սննդի կոմբինատում, ինչպես նաև կոոպերատիվ հիմունքներով վերակազմավորված «Ջրաղբյուր» ձեռնարկությունում: Հետագայում աշխատանքի նմանօրինակ ձևը թերևս հարկ լինի ընդլայնել: Սակայն այդ պրոցեսի հետևանքով հանրապետությունում սկսել էր ուժեղանալ հումքի պակասի միտումը: Հայկոոպի առանձնապես այն ձեռնարկությունները, որոնք գյուղատնտեսական մթերքներ չեն արտադրում, կենտրոնացված աղբյուրներից ստացվող հումքի պակաս են զգում: Արդեն օրինակներ կան, որ առանձին կոլտնտեսային ու գյուղական պետական ձեռնարկություններ նույնիսկ պետական պատվերի գծով հումք մատակարարելուց հրաժարվում են իրենց իսկ տնտեսություններում դրա սուր պակասի պատճառով:

Իսկ այդ հումքն ապակենտրոնացված աղբյուրներից համալրելը հազիվ թե հնարավոր լինի, որովհետև արդյունաբերական, ինչպես նաև կոլտնտեսային ու գյուղական պետական ձեռնարկությունները վատ են կատարում նույնիսկ պլանային առաջադրանքները, իսկ այն, ինչ նրանք կարող են թողարկել արտապլանային կարգով, իրավունք ունեն իրացնելու ինքնուրույնաբար: Անցած տարիների փորձը ցույց է տալիս, որ կոլտնտեսային ու գյուղական պետական ձեռնարկությունները, օրինակ, չեն կատարում սպառողական պլանային մթերումների 30 տոկոսի հաշվին մատակարարումները: Դա, ինչպես նաև արտապլանային ողջ արտադրանքը, հենց իրենք են իրացնում շուկաներում: Նրանք զարգացնում են նաև արհեստագործական և այլ կոոպերատիվները՝ դրանք ապահովելով հումքով: Դա մտահոգիչ է, որովհետև սպառողական կոոպերացիայի արտադրական կարողություններն արդեն լիովին չեն օգտագործվում, իսկ մի մասն էլ չի գործում: Հայկոոպն այժմ երկընտրանքի առաջ է՝ թերբեռնված և չգործող արտադրական կարողությունները տա՞լ վարձակալության, թե՞ ոչ, մինչդեռ ուրիշ կազմակերպություններ և ձեռնարկություններ կոոպերատիվ սկզբունքով զարգացնում են արտադրության համանման ձևերը, որը հումքի ձեռքբերման, հիմնական ֆոնդերի օգտագործման ու արտադրանքի իրացման ուղղությամբ սուր մրցակցություն է առաջացնում:

Արտաշատում գործում է սննդի կոմբինատ՝ տարեկան 533 հազար դեկալիտր լիմոնադի նորմատիվային արտադրական կարողությամբ: 1987 թվականին փաստացի արտադրվել է 153, 6 հազար դեկալիտր կամ կարողության 28,8 տոկոսը: Սակայն անցած տարվանից Արտաշատի շրջանում կազմակերպվել են ոչ ալկոհոլային խմիչքների արտադրության 6 նոր կոոպերատիվներ, որոնցից 3-ը սննդի կոմբինատին առընթեր, 2-ը՝ շրջագրոարդին և մեկը՝ Արևշատի գյուղխորհրդին առընթեր: Դրա շնորհիվ նկատելիորեն բարելավվել է բնակչության պահանջարկի բավարարումը, կոոպերատիվները թողարկում են բազմազան տեսականիով ապրանքներ, ապահովում արտադրանքի բարձր որակը և լիմոնադը վաճառում պետական գներից ոչ բարձր: Ահա թե ինչու նրանց ապրանքը վաճառասեղանին չի մնում: Բայց մյուս կողմից, պտղի կոմբինատը, որը մինչ այդ ոչ ալկոհոլային խմիչքների մենաշնորհային արտադրողն էր, լուրջ դժվարությունների առաջ է կանգնած, լիմոնադի իրացման պլանի կատարումը կազմում է ընդամենը 50 տոկոս, այդ էլ այն բանի շնորհիվ, որ կոմբինատն ընդգրկվել է կոոպերատիվների առաջարկած մրցակցության մեջ: Ելքը բրիգադային կամ վարձակալական կապալն է, հիմնական ֆոնդերի՝ վարձակալական հիմունքով հանձնումը կոոպերտիվներին կամ Ցենտրոսոյուզի համակարգում կոոպերատիվ սկզբունքներով գործող վերափոխված ձեռնարկություններին, այսինքն՝ ինչպես գյուղատնտեսությունում: Դա է հիմնական ֆոնդերի ինտենսիվ օգտագործման ուղին: Երբ այս իրողությանը նայում ենք ժողովրդատնտեսական դիրքերից, պարզվում է, որ ձեռնարկությունների և կազմակերպությունների կարողությունների թերբեռնվածությունը արտադրանքի ցածրորակության հետևանք է: Մի ուրիշ տեղ մենք տեսնում ենք կոոպերատիվների թերբեռնված կարողություններ՝ հումքի, նյութերի պակասի և այլ պատճառներով: Իսկ ընդհանուր առմամբ դրանից հասարակությունը վիթխարի չափերի վնաս է կրում ազգային հարստություն հանդիսացող ֆոնդերի լճացման պատճառով՝ ում էլ պատկանելիս լինեն դրանք. պետական ձեռնարկությա՞նը, թե՞ կոոպերատիվներին:

Հետևաբար, մեր խնդիրն է գործողության այնպիսի մոդել գտնելը, որը լիովին համապատասխաներ հիմնական ֆոնդեր առանձնացնող կազմակերպությունների, կոոպերատիվների և հումք արտադրողների շահերին ու նպատակամղված լիներ բնակչության պահանջմունքների բավարարմանը:

Ագրոարդի, Հայկոոպի և առևտրի մինիստրության համար շահույթի ձեռքբերման ակունքներից մեկը ինչպես արտադրական կարողությունների, այնպես էլ առևտրական մակերեսների հանձնումն է կոոպերատիվներին: Դա կբարձրացնի աշխատանքի արտադրողականությունը, շահութաբերությունը, ավելի լավ կօգտագործվեն հիմնական և շրջանառու ֆոնդերը: Խոշոր խանութների առևտրական մակերեսների վարձակալական հանձնումը, անշուշտ, դրականաբար կանդրադառնա ինչպես այդ խանութների հաճախելիության, այնպես էլ ապրանքաշրջանառության ծավալի մեծացման վրա: Այդպիսի փորձ է տարածվել երկրի որոշ հանրապետություններում և շրջաններում:

Կարևոր պրոբլեմներից մեկը գործունեության կոոպերատիվ ձևերի զարգացման առնչությամբ ժողովրդական դեպուտատների շրջանային խորհուրդների դերի հարցն է: Կարծում ենք, որ կոոպերացիայի մասին օրենքի ընդունումից հետո նրանց գործունեությունը պետք է զգալի փոփոխության ենթարկվի այն առումով, որպեսզի արդեն գործնականում, ամենօրյա աշխատանքում մենք, վերջապես, զգանք, որ սեփականության կոոպերատիվ ձևը «երկրորդ տեսակի» սեփականություն չէ (իսկ սա առայժմ միայն բարձր ամբիոնից ասվող խոսք է), որ այն իրոք իրավազոր է և պետք է դրսևորվի իշխանության տեղական մարմինների, պետական վերահսկողության մարմինների, ձեռնարկությունների հետ կոոպերատիվների փոխհարաբերություններում, երկրի ժողովրդատնտեսական համալիրում նրանց տեղի ու դերի մեջ:

Սոցիալիզմի երկրներում կոոպերատիվների զարգացման փորձը, ինչպես նաև վերջին երկու տարում մեր երկրում նրանց կատարած աշխատանքը համոզիչ կերպով ցույց են տալիս, որ կոոպերատիվները կարող են ռեալ տնտեսական ուժ դառնալ շուկայում, իրենց առջև դնել և լուծել հասարակական այնպիսի պահանջմունքների բավարարման լուրջ խնդիրներ, որոնք հաճախ դժվարությամբ են լուծվում պետական սեկտորում: Սակայն կոոպերատիվներն առայժմ պատկերացնում ենք որպես մանր, խղճուկ արհեստանոցներ, որոնք խցկված են նեղ նկուղներում և օժանդակ դեր են խաղում, որպես ուտեստարաններ, կարծես թե դրանց առաջնահերթ նշանակությունը փողոցներում կարկանդակ վաճառելն է: Բայց չէ որ արդեն այժմ երկրում ստեղծվել ու գործում են տասնյակ գիտատեխնիկական կոոպերատիվներ: Ժամանակն է, որ տեղական խորհուրդները, ելնելով տվյալ շրջանի ինֆրակառուցվածքի առանձնահատկություններից, բնակչության հասարակական պահանջմունքների և առկա հնարավորությունների՝ շինությունների, հողամասերի և այլ պարագաների ուսումնասիրությունից, մշակեն այնպիսի դիրքորոշում, որը հաշվի առներ կոոպերատիվների սոցիալական պատվերը՝ ուղղված տվյալ շրջանում հետ մնացող ճյուղերի առավել զարգացմանը:

Կոոպերատիվների ինտենսիվ զարգացումը խթանող առաջադիմական միջոցառում կարող է լինել նաև նրանց շինություններ և հողամասեր վարձակալության տալու կարգի վերանայումը: Վարձակալական վճարը պետք է չերտավորվի՝ ըստ գործունեության պայմանների:

Կոոպերատիվների քանակի աճի և նրանց զարգացման համեմատ առավել սրությամբ է ծառանում դրանց կառավարման խնդիրը: Կոոպերատիվներն առայժմ գործնականում միավորված չեն միություններում, ուստի նրանք չունեն տեխնիկական, ինվեստիցիոն, տնտեսական, սոցիալական միասնական քաղաքականություն, ինչ-

պես նաև կազմակերպական միասնություն: Կասկած չի կարող լինել, որ այդպիսի միությունների կարիքն զգացվում է:

Միաժամանակ անհրաժեշտ է նշել, որ սպառողական կոոպերացիայում գործող կառավարչական միությունները չի կարելի նոր կոոպերատիվների համար պիտանի համարել: Կառավարչական օղակը ծանոթ չէ ստորադաս օղակների բուն կարիքներին, պահանջմունքներին ու պրոբլեմներին: Այստեղ նույնպես հակասություն կա. վարչական մարմինները, որոնք փաստորեն ապրում են ենթագերատեսչական կազմակերպությունների բյուջեի հաշվին, կառավարում են տնտհաշվարկում գտնվող հիմնական օղակը: Եվ ահա թե ինչ է ստացվում. որոշումներ են ընդունում նրանք, ովքեր անմիջականորեն տնտեսական գործունեության հետ կապված չեն, մինչդեռ այդպիսի գործունեություն են կատարում նրանք, ովքեր չեն մասնակցում որոշումների ընդունմանը: Ուստի գերակշռում են կառավարման վարչական մեթոդները: Դա մի անգամ ևս հաստատվեց մեր դեռևս ոչ այնքան էլ հարուստ փորձով, երբ կոոպերատիվները նոր էին ծնվում. մենք ստեղծեցինք կոոպերատորների գործարար ակումբ՝ մարդկանց ըստ շահագրգռության հաղորդակցվելու նպատակով: Հրավիրեցինք նաև իրավաբանների, տնտեսագետների և այլ մասնագետների: Գործնականում դա մասսայական բնույթ ստացավ, և առաջին իսկ հանդիպումներից ծնվեց հանրապետության կոոպերատորների խորհուրդ ունենալու գաղափարը:

Մի շարք կոոպերատիվների նախաձեռնությամբ հանրապետությունում արդեն ստեղծվել է կոոպերատիվների «Անդրանիկ» հանրապետական խորհուրդը, որը միավորում է ավելի քան 100 կոոպերատիվ: Դրանց մեջ կան հասարակական սննդի արտադրական, կենցաղային սպասարկման, գիտատեխնիկական և այլ կոոպերատիվներ: Խորհրդի նպատակն է աջակցել գործող կոոպերատիվների տնտեսական ու սոցիալական զարգացմանը, ինչպես նաև նոր կոոպերատիվների ստեղծմանը: Առաջադրված նպատակին հասնելու համար խորհուրդը նպաստում է կոոպերատիվ շարժման ըստ ամենայնի ծավալմանը և կոոպերատիվ դեմոկրատիայի ամրապնդմանը, մատուցում այնպիսի ծառայություններ, որոնք զարկ են տալիս կոոպերատիվների արտադրական գործունեության կատարելագործմանը, սատարում նրանց փոխադարձ, ինչպես նաև պետական ձեռնարկությունների հետ տնտեսական համագործակցության զարգացմանը, կոոպերատիվների շահերն է ներկայացնում պետական և այլ մարմիններում, ապահովում իր կազմի մեջ ընդգրկված կոոպերատիվների ակտիվ մասնակցությունն արտաքին տնտեսական գործունեությանը, ռեկլամում է կոոպերատիվների արտադրանքը:

Մշակվել է խորհրդի աշխատանքի ծրագիրը, որտեղ գլխավորն է կոոպերատիվների ապրանքների ու ծառայությունների մրցունակության և նրանց կայուն, շահութաբեր աշխատանքի ապահովումը: Այդ ծրագրի իրականացման միջոցները միանգամայն բազմազան են և ներառնում են կոոպերատիվների ապրանքների ու ծառայությունների կամ թողարկման համար առաջարկվող ապրանքների շուկայի կոնյունկտուրայի, գործող և սեփական ինֆորմացիոն ցանցի օգտագործման միջոցով նոր ապրանքների ու ծառայությունների տեսակների մասին տեղեկագրական գործունեությունը, կառավարման, կոոպերատիվների ղեկավարների և մասնագետների էկոնոմիկայի, իրավունքի, տեխնոլոգիայի վերաբերյալ ուսուցման, կոոպերատիվներին կոնսուլտացիաներ տալու գործի կազմակերպումը, կոոպերատիվների սոցիալական զարգացման ապահովումը, խորհրդի անդամների թվի ավելացումը, տեղական սովետների ու կուսակցական կազմակերպությունների հետ գործարար հարաբերությունների կարգավորումը:

Ահա արդեն ի հայտ եկած ևս մեկ կարևոր խնդիր. անհրաժեշտ է հարստացնել կուտակված փորձը, զարգացնել ոչ միայն կոոպերատիվները, այլև կոոպերացիան որպես ժողովրդատնտեսական համալիրի տարբեր սեկտորների, ոլորտների, ձեռնարկությունների փոխառնչության ձևի: Մոտենում է այն ժամանակը, երբ դադարում է տնտեսական ոլորտների մասնատումը, և առաջին գիծ է դուրս գալիս մրցակցությունը: Ստեղծվում են կոոպերատիվների նոր միություններ ու խորհուրդներ, սպառողական միությունը կորցնում է մենաշնորհային իրավունքը գյուղական վայրերում,



իսկ պետական առևտուրը՝ քաղաքներում: Ահա թե ինչու, ըստ իս, անհրաժեշտ է մշակել մրցակցության պայմաններում ինչպես գյուղում, այնպես էլ քաղաքում ժողովրդական տնտեսության ճյուղերի գործունեության մոդելներ: Ակնհայտ է, որ կոոպերատիվ սեփականության կիրառման, նրա բազմապրոֆիլայնության հաշվին տնտեսական պոտենցիալի հզորացման ուղիների մասին տեսական մշակումների համար շատ պրոբլեմներ կան և, ակներևաբար, հարկավոր է համալիրային ծրագիր մշակել:

Նպատակահարմար է հանրապետությունում կոոպերատիվների համալիրային ծրագիրը կազմել հետևյալ ձևով. ամենից առաջ տեղական խորհուրդները և մինիստրությունները (գերատեսչությունները), ինչպես նաև միութենական ենթակայության ձեռնարկությունները պետք է բոլոր չօգտագործված հիմնական և շրջանառու ֆոնդերի խնամքով, ճշգրիտ ցուցակագրում կատարեն, ինչպես նաև բացահայտեն գործող ֆոնդերի արդյունավետ օգտագործման հնարավորությունները: Չէ որ կոոպերատիվներին վարձակալության տալու միջոցով արտադրության ավելացման ռեզերվը ոչ միայն չօգտագործված ֆոնդերն են: Կոոպերատիվներին կարելի է օգտագործվող ֆոնդերը տալ նաև հետաշխատանքային ժամանակամիջոցում: Ամբողջ երկրում արտադրության մեջ հերթափոխայնության գործակիցը բավական ցածր է: Այդ առումով մեր հանրապետությունը բացառություն չի կազմում: Բոլոր հիմքերը կան ենթադրելու, որ կոոպերատիվի կողմից պետական ձեռնարկությունների գործող կարողություններն օգտագործելը (այսինքն՝ հերթափոխայնության գործակցի մեծացման շնորհիվ) արտադրության ծավալների ընդլայնման և նրա արդյունավետության բարձրացման առավել էական ռեզերվն է, քան պետական ձեռնարկությունների չօգտագործած ֆոնդերի վաճառումը կոոպերատիվներին: Եթե հաջողվի իրացնել այդ ռեզերվը և հաղթահարել մինիստրությունների ու գերատեսչությունների թաքնված դիմադրությունը, հենց միայն դա էլ բավական է կոոպերատիվ արտադրության ծավալը բազմակի մեծացնելու համար:

Իսկ ինչ վերաբերում է գներին, ապա կոոպերատիվ արտադրանքի գները կնվազեն ինքնըստինքյան, երբ կոոպերատորներն սկսեն լրջորեն մրցակցել միմյանց հետ, և երբ տնտհաշվարկի անցած պետական ձեռնարկությունները շուկան ձեռքից բաց չթողնելու համար նույնպես կսկսեն ավելի ակտիվորեն գործել:

# ՆԵՐՏՆՏԵՍԱԿԱՆ ՎԵՐԱՀՍԿՈՂՈՒԹՅԱՆ ԵՎ ԻՆՔՆԱՐԺԵՔԻ ՎԵՐԼՈՒԾՈՒԹՅԱՆ ԴԵՐԸ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅՈՒՆԸ ԲԱՐՁՐԱՑՆԵԼՈՒ ԳՈՐԾՈՒՄ

**Ն. ՊՐԻԽՈԴԿՈ,**
**Ռ. ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆ,**
**Լ. ՀԱՐՈՅԱՆ**

ԽՄԿԿ XXVII ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ և Համամիութենական XIX կուսկոնֆերանսի որոշումների համաձայն պատմական կարճ ժամանակամիջոցում՝ մինչև մեր դարի վերջը, երկրի տնտեսության մեջ պետք է կտրուկ շրջադարձ կատարվի դեպի արտադրության ինտենսիվացումը: Յուրաքանչյուր ձեռնարկություն պետք է վերակողմնորոշվի տնտեսական վերելքի որակական գործոնների լիակատար օգտագործման ուղղությամբ: Այդ պրոցեսում վճռական է տասներկուերորդ հնգամյակը, որին արտադրության տեմպերի արագացման ու արդյունավետության բարձրացման ուղիների համառ որոնումներ են վիճակված:

Ծրագրված խնդիրների հաջող կատարմանը նպաստում է ձեռնարկությունների և կազմակերպությունների գործունեության նկատմամբ վերահսկողությունը, որի միջոցով բացահայտվում են սահմանված նորմաներից ու նորմատիվներից կատարվող շեղումները, դրանց առաջացման պատճառները, միջոցներ են մշակվում տեղ գտած թերությունները վերացնելու, արտադրության ներքին ռեզերվները մոբիլիզացնելու համար:

Ձեռնարկությունների և միավորումների աշխատանքի արդյունավետությունը բարձրացնելու, սոցիալիստական սեփականության պահպանությունն ուժեղացնելու և այն ռացիոնալ օգտագործելու գործում կարևոր դեր է հատկացվում ներտնտեսական վերահսկողությանը: Դա հնարավորություն է տալիս կանխելու անարտադրողական ծախսերը, նյութական, աշխատանքային ու ֆինանսական ռեսուրսների կորուստները, բավարարելու այն նորմատիվ ակտերի, օրենքների և հանձնարարականների պահանջները, որոնք բխում են կուսակցության ու պետության այժմյան տնտեսական քաղաքականությունից:

Տնտեսական մեխանիզմի և կառավարման համակարգի վերակառուցման պայմանները պահանջում են նաև վերահսկողության արմատական վերակառուցում, նրա համապատասխանեցում արտադրողական ուժերի և արտադրական հարաբերությունների զարգացման հետ ինչպես այժմյան փուլում, այնպես էլ մոտակա ապագայում: Խնդիրը ներտնտեսական վերահսկողության մի այնպիսի համակարգի ստեղծումն է, որը լիովին համապատասխանի ինչպես համապետական, այնպես էլ կոլեկտիվ շահերին: Այդ պայմաններում աճում է հաշվապահական, այսինքն՝ ներտնտեսական վերահսկողության դերը:

Գիտական գրականության մեջ հատկապես առանձնացվում է հաշվապահական հաշվառման ինֆորմացիոն նշանակությունը, որը մի շարք տնտեսագիտական հետազոտություններում նույնացվում է վերահսկողության հետ: Այդպիսի պնդմանը հազիվ թե կարելի է համաձայնել: Հաշվառումն ու վերահսկողությունը սերտորեն կապված են, բայց դրանք կառավարման ինքնուրույն ֆունկցիաներ են: Հաշվառումն ինքնըստինքյան կատարում է վերահսկողության որոշակի ֆունկցիաներ, հանդիսանալով ինֆորմացիոն բազա և վերահսկողության միջոց, դրանով իսկ ձեռնարկությունների և միավորումների արտադրական-տնտեսական գործունեության վրա ազդելու ակտիվ գործիք: Ներկայումս հաշվապահական հաշվառման ինֆորմացիոն և վերահսկողության ֆունկցիաների նշանակալից մասն անցել է կառավարման ավտոմատացված համակարգերի: Հաշվողական կենտրոնները կատարում են ձեռնարկությունների տնտեսական կյանքի հետ կապված պրոցեսների ու երևույթների վերաբերյալ հաշվարկային և այլ բնույթի ինֆորմացիայի հավաքման, պատկերման ու մշակման ֆունկցիաներ: Հաշվառքն ու նրա ինֆորմացիոն ֆունկցիաները փոխակերպվում են մի այնպիսի պրոցեսի, որտեղ մշակվող հիմնական արտադրանքը ինֆորմացիան է: Այդ պրոցեսը կարելի է անվանել ինֆորմացիոն տեխնոլոգիա: Այդպիսի պայմաններում տեղի է ունենում իր իսկ՝ հաշվառքի պրոցեսի բաժանում:

Ներտնտեսական վերահսկողության աշխատանքների ավտոմատացման նպատակով առանձնացվում են վերահսկողության ավտոմատացման հետևյալ ուղղությունները.

— տեխնիկամեթոդական աշխատանքների վերահսկման գործողությունների ավտոմատացում, այսինքն՝ այն աշխատանքների, որոնք արտացոլում են արտադրության տնտեսամաթեմատիկական հաշվարկների, հանրագումարների ճշտության վերահսկողությունը, ինչպես նաև զանազան թվաբանական գործողությունների ստուգությունը.

— ձեռնարկությունների և միավորումների կողմից անցկացվող ֆինանսատնտեսական գործառնությունների նպատակահարմարության, օրինականության ու ճշտության վերահսկման ավտոմատացում.

— ստուգման արդյունքների ամփոփում անձնական օգտագործման կոմպյուտերների օգնությամբ, որոնք սպասարկում են համակարգը կամ միացված են կենտրոնին՝ ձեռք բերված ինֆորմացիան ամփոփելու, աղյուսակներ, հաշվարկներ ու բացատրական տեքստեր կազմելու համար:

Կառավարման ավտոմատացված համակարգի պայմաններում, որտեղ հաշվապահական հաշվառումը հանդես է գալիս իբրև վերահսկողության ենթահամակարգ, անհրաժեշտություն է առաջանում ստեղծել ներտնտեսական վերահսկողության նաև մեկ այլ առանձնահատուկ համակարգ: Դա կնպաստի վերստուգման ծառայության աշխատանքների արդյունավետության բարձրացմանը:

Հաշվարկային ինֆորմացիայի ավտոմատացված մշակման դեպքում վերահսկողության պրոցեսի մեջ կարող են օգտագործվել նրա ինչպես ավանդական, այնպես էլ հատուկ մեթոդները: Միևնույն ժամանակ տնտեսական գործառնությունների ամեն մի տեսակի համար մշակվում է վերահսկողության իրականացման իր իսկ մոդելը, որը ներառում է վերստուգման օբյեկտը, ինֆորմացիայի աղբյուրները, հետազոտման մեթոդները և արդյունքներն ամփոփելու ձևերը:

Ավտոմատացումը հնարավորություն է տալիս օպերատիվ կերպով իրագործելու համատարած ընթացիկ վերահսկողություն և մշակելու մեծ ծավալի սկզբնական փաստաթղթեր, արդյունավետ կերպով կիրառել վերստուգման ընտրանքային եղանակը, ԷՀՄ-ի վրա կատարել բոլոր հաշվարկները կամ հարցման ռեժիմով հաշվիչ մեքենաներից ստանալ հարկ եղած ինֆորմացիան:

Կառավարման ավտոմատացված համակարգի պայմաններում վերահսկողության ֆունկցիայի արդյունավետությունը նշանակալից չափով բարձրանում է հաշվապահական հաշվառումը կենտրոնացնելու պայմաններում: Վերահսկողությունն ավելի օպերատիվ, հավաստի և գործուն է դառնում, երբ ավտոմատացվում են ինֆորմացիան հավաքելու, մշակելու և կառավարմանը հանձնելու պրոցեսները: Այդ կապակցությամբ գերադասելի է վերաստուգման և վերահսկման ինֆորմացիայի ավտոմատացված մշակմանն անցնելը, որը նշանակալից չափով հեշտ է իրականացվում, երբ հաշվառման տվյալները կենտրոնացված են լինում:

Երկրում և հանրապետության որոշ ձեռնարկություններում ու միավորումներում գոյություն ունեցող անհատական հաշվիչ կոմպյուտերների կոմպլեքսները հնարավորություն են ընձեռում ավտոմատացնելու արտադրանքի թողարկման հաշվառումը և նյութերի փաստացի ծախսումն ու ինքնարժեքի վերահսկումը: Բայց դրա համար անհրաժեշտ է, որպեսզի բոլոր գործընթացները, սկսած ինֆորմացիայի ընդունման,

*ՊՐԻԽՈԴԿՈ ՆԻԿՈԼԱՅ ԵՄԵԼՅԱՆՈՎԻՉ— Մոսկվայի պետհամալսարանի տնտեսագիտության ֆակուլտետի դոկտորանտ։*

*ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆ ՌՈԲԵՐՏ ՊԱՊԻԿԻ— ԵրԺՏԻ ավագ դասախոս, տնտեսագիտության թեկնածու։*

*ՀԱՐՈՅԱՆ ԼՅՈՒԴՎԻԳ ՎԱՆՈՒՇԻ— ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության դիրեկտորի՝ տնտեսագիտական հարցերի գծով տեղակալ։*

մշակման և հաղորդման տեխնիկական միջոցներից, լինեն փոխկապակցված և կազմեն ըստ էության մի միասնական համակարգ:

Արտադրամասերում ու տեղամասերում արտադրական ծախսերի վերաբերյալ տվյալների հավաքումը ավտոմատացնելու նպատակով տեղադրվում են հաշվիչներ ու հաղորդիչներ:

Ներտնտեսական վերահսկողության դերն էլ ավելի է մեծանում արդի պայմաններում, երբ ձեռնարկություններն անցնում են ինքնածախսահատուցման և ինքնաֆինանսավորման: Այստեղ առաջին պլան է մղվում խնայողության ռեժիմի խրստիվ կիրառումը: Մինչդեռ արտադրության ծախսերի և դրանց նկատմամբ վերահսկողության կազմակերպումը հանրապետության շատ ձեռնարկություններում ու միավորումներում չի համապատասխանում վերակառուցման առաջադրած անող խնդիրներին: Վերահսկողությունը, որպես էկոնոմիկայի առանձնահատուկ ոլորտ, դեռևս չի կազմավորվել իբրև միասնական մի համակարգ և կոմպլեքսային բնույթ չի կրում:

Աշխատանքային փորձը և գիտական հետազոտությունները ցույց են տալիս, որ ներտնտեսական վերահսկողության վերակառուցումը, նրա, իբրև կոմպլեքսային համակարգի, ստեղծումն անհրաժեշտ է հիմնել արտադրության պլանավորման և ծախսերի հաշվառման նորմատիվային եղանակի վրա՝ ԷՀՄ-ի օգտագործմամբ, այսինքն ավտոմատացնել ինքնարժեքի կառավարման պրոցեսում վերահսկողական-տնտեսական ինֆորմացիայի հավաքումն ու մշակումը:

Այդ պայմաններում ներտնտեսական վերահսկողության հիմնական խնդիրը կդառնա ծախսերի և պատասխանատվության վերաբերյալ գործող նորմաների ու նորմատիվների որակի և հիմնավորվածության ստուգումը: Նորմատիվների որակի ստուգումը կատարվում է դրանք նորմա-էտալոնների հետ համեմատելով, բայց դրա համար հարկավոր է նորմատիվ տեղեկատու ինֆորմացիայի տվյալների բանկում ձևավորել համաշխարհային ստանդարտների և հայրենական արտադրության լավագույն նմուշների մակարդակով պատրաստված «նմանակ արտադրանքների» հատուկ նորմատիվներ: Ամբողջ ինֆորմացիան պետք է հավաքվի, կուտակվի ու համակարգվի ԷՀՄ-ի հիշողության մեջ և անհրաժեշտության դեպքում օպերատիվ կերպով օգտագործվի: Էտալոնայինի հետ գործող նորմաների ու նորմատիվների համապատասխանությունը ստուգելու համար հաշվողական կենտրոնի անձնակազմը մշակում է մաթեմատիկական և մեքենայական ծրագրեր: Համեմատություններ կատարելուց հետո ծախսման նորմաները փոփոխվում են ու ճշգրտվում:

Արտադրության պրոցեսում ծախսման նորմերի վերահսկումը պետք է կատարվի առավել օպերատիվությամբ: Այդ ամենը կարող է լուծվել սկզբնական ինֆորմացիայի հավաքումն ու մշակումը ավտոմատացնելով՝ ինֆորմացիոն-հաշվողական կոմպլեքսների կիրառմամբ հանդերձ, որոնք հնարավորություն են տալիս հայտնաբերելու ծախսման նորմաներից կատարված շեղումները և անելու համապատասխան ճշգրտումներ: Վերահսկման օբյեկտ են դառնում հումքի և նյութերի բոլոր տեսակները, ծառայություններն ու այլ ծախսերը, դրանց յուրաքանչյուր տեսակն առանձին վերցված: Դա հնարավորություն է տալիս ազդելու ինքնարժեքի իջեցման վրա՝ արտադրության արդյունավետությունը բարձրացնելու, նյութատարողությունն իջեցնելու նպատակով և, վերջին հաշվով, բարձրացնելու արտադրության շահութաբերությունը:

Ինքնարժեքի կառուցվածքի վերլուծության ու վերահսկման հիմնական խնդիրը նրա իջեցման ռեզերվների որոնումն է և որոշակի կազմակերպչական-տնտեսական միջոցառումների մշակումը այդ ռեզերվներն արտադրության մեջ օգտագործելու նպատակով: Նշված ցուցանիշների նկատմամբ այդպիսի վերահսկողության անհրաժեշտությունն աճում է տնտհաշվարկի և ինքնաֆինանսավորման զարգացման պայմաններում: Ընդ որում վերահսկողությունն անհրաժեշտ է կատարել արտադրական բոլոր պրոցեսների ընդգրկմամբ՝ աշխատատեղից սկսած մինչև ճյուղային մակարդակը: Վերահսկողության համար շատ ավելի ռացիոնալ է օգտվել տնտեսական վերլուծության օպտիմալ մեթոդներից՝ ինքնարժեքի իջեցման նկատմամբ վերահսկողության տարբեր հիերարխիական մակարդակներում տնտեսամաթեմատիկական մեթոդների օգտագործմամբ:

Դրանց օգնությամբ վերահսկողություն իրականացնելիս ինֆորմացիայի փոխակերպման ամբողջ պրոցեսը կարելի է խոշորացված պատկերել հետևյալ սխեմայով. մոդելավորվող համակցության նախնական վերլուծություն, գործոն-փաստարկների թվարկության ճշգրտում, տնտեսամաթեմատիկական մոդելի կառուցում,



օբյեկտի մոդելի համապատասխանության գնահատում, մոդելի տնտեսագիտական մեկնաբանում և գործնական կիրառում:

Անհրաժեշտ է ցուցանիշների բազմազանությունից ընտրել առավել կարևորները: Վերացական վերլուծություն կատարելիս աշխատանքային հիպոթեզ է առաջադրվում ինքնարժեքի հետազոտության մեջ ընդգրկված փաստերի քանակի վերաբերյալ: Կարող է լինել երկու իրավիճակ. գործոնների չափից ավելի կամ չափից պակաս ընտրություն: Չափից ավելիի դեպքում գնահատականի շեղում չկա և այն հիմնավոր է, բայց ոչ արդյունավետ: Չափից պակասի դեպքում՝ կա գնահատականի շեղում և այն հիմնավոր չէ: Ննկասկած շատ ավելի կոպիտ սխալ կլինի գործոնների չափից պակաս ընտրությունը:

Առաջին եղանակը կտա ելակետային ինֆորմացիայի ծավալի շարժում, ինչը կարող է էապես փոխել վերահսկվող պրոցեսի մոդելը: Այդ պատճառով էլ խնդիր է առաջ գալիս ելակետային հատկանիշները փոխարինելու միմյանց հետ փոխկապակցված պարամետրերի որոշ համակցությամբ, որը պետք է պահպանի ուսումնասիրվող պրոցեսի փոփոխականության մասին ամբողջ ինֆորմացիան առանց աղավաղումների: Ինչպես հայտնի է, այդպիսի մաթեմատիկական ապարատ է հանդիսանում գլխավոր բաղադրամասերի մեթոդը (ԳԲՄ): Այն թույլ է տալիս ձեռնարկության, միավորման տնտեսական գործունեությունը բնութագրող առանձին ցուցանիշները խմբավորել խոշորացված գործոնների՝ գլխավոր բաղադրամասերի մեջ: Այդ դեպքում վերահսկման են ենթարկվում ոչ թե առանձին ցուցանիշները, այլ գլխավոր բաղադրամասերը, որոնք արդյունավետ հատկանիշների ճիշտ ընտրության դեպքում արտացոլում են տեղի ունեցող պրոցեսների ներքին բովանդակությունը:

Վերահսկողության մոդելը կառուցելուց և արդյունքն ստանալուց հետո կատարվում է մոդելի համապատասխանության գնահատում: Դետերմինացիայի գործակցի օգնությամբ որոշվում է ընտրված ցուցանիշների արժեքավորությունը: Այլ խոսքով՝ նա ցույց է տալիս կախյալ փոփոխականի դիսպերսիայի այն բաժինը, որը հաջողվում է բացատրել անկախ ցուցանիշների օգնությամբ: Տնտեսավիճակագրական մեթոդները հնարավորություն են տալիս գնահատելու ցուցանիշներից յուրաքանչյուրի համապատասխանությունը:

Այստեղ են կատարվում մոդելի վերահսկողական-տնտեսագիտական մեկնաբանումն ու նրա գործնական կիրառումը: Այս փուլում էլ հենց երևան է գալիս ներքին վերահսկողության տարբեր մակարդակներում պրոցեսը հետազոտելու համար տնտեսամաթեմատիկական մեթոդների ընտրության ճշտությունը: Ճյուղային մակարդակում ինքնարժեքի կառուցվածքի հսկողության մեջ, մեր կարծիքով, ամենաարդյունավետը գլխավոր բաղադրամասերի մեթոդն է: Ընդ որում նպատակահարմար է կառուցել երկու մոդել՝ ծախսային և ռեսուրսային: Ծախսային մոդելը թույլ կտա հետազոտելու և վերահսկելու արտադրական ծախսերը, իսկ ռեսուրսայինը՝ հնարավորություն կստեղծի գնահատելու եղած ռեսուրսների օգտագործումն ու բացահայտելու դրանց իջեցման ռեզերվները:

Ձեռնարկությունների մակարդակով ներտնտեսական վերահսկողություն կատարելու դեպքում կարելի է հաջողությամբ օգտագործել ինդեքսային մեթոդը, ինչպես նաև համահարաբերակցական և հետընթաց վերլուծությունը:

Ձեռնարկության ու միավորման արտադրական ծախսերի ներտնտեսական վերահսկողության և վերլուծության համակարգում կարևոր դեր ունեն ֆունկցիոնալ ստորաբաժանումները, որոնց գործունեությունը կապված է կառավարման որոշակի ֆունկցիաների հետ: Դրանց թվին է պատկանում նաև ներտնտեսական վերահսկողությունը: Բոլոր ստորաբաժանումների համար բաժինների ու ծառայությունների մասին պաշտոնեական հրահանգները նախատեսում են հսկողական ֆունկցիաներ: Բայց դրանցում խոսքը կազմակերպչական, տեխնիկական բնույթի վերահսկման մասին է, որը բնավ չի շոշափում վերահսկվող պրոցեսների ու գործողությունների տնտեսական կողմերը: Արտադրական ռեսուրսների ծախսման նկատմամբ տնտեսական, ընթացիկ վերահսկողությունը, իբրև կանոն, դրվում է տնտեսագիտական ծառայությունների և ավելի հաճախ՝ հաշվապահության վրա: Մեր կարծիքով, այդօրինակ վերահսկողության գործում պետք է ներգրավել ֆունկցիոնալ ծառայությունները:

Ներկայումս հաշվառման և վերահսկողության պրոբլեմն ուսումնասիրողների մեծամասնությունն այն եզրակացությանն է հանգել, որ անհրաժեշտ է ներտնտեսական հաշվարկի ու վերահսկողության շրջանակներում արտադրության վրա կատարվող ծախսերի խմբավորումն ու հաշվառումն իրագործվի ըստ պատասխանատվու-

թյան կենտրոնների: Տվյալ իրավիճակում պատասխանատվության առանձին կենտրոնների ծախսերը ներտնտեսական վերահսկողության օբյեկտներ են դառնում: Ելնելով վերահսկողությունը օբյեկտին մոտեցնելու սկզբունքից, հարկավոր է իբրև նրա սուբյեկտ առանձնացնել միավորման ֆունկցիոնալ և այլ ստորաբաժանումները, որոնք հանդես են գալիս որպես ծախսերի այս կամ այն խմբի գծով պատասխանատվության կենտրոններ: Այստեղ ի հայտ է գալիս վերահսկողության ոչ միայն հաջորդող, այլև ընթացիկ ու նախնական իրականացման հնարավորություն:

Նախնական վերահսկողությունը տվյալ դեպքում ենթադրում է նորմատիվ ցուցանիշներից հնարավոր շեղումների կանխում: Այսպես, տեխնիկական ծառայությունները պետք է նախնական վերահսկողություն իրագործեն արտադրության կոնստրուկտորական ու տեխնոլոգիական նախապատրաստման և նրա էներգետիկ ապահովվածության հետ կապված ծախսերից հնարավոր շեղումների նկատմամբ՝ ի հաշիվ կոնստրուկցիաների, արտադրության տեխնոլոգիայի կատարելագործման և այլ միջոցառումների: Դետալների մաշումը և թողարկման համաչափությունը պահպանելու նկատմամբ արտադրական-դիսպետչերական ծառայությունների հսկողությունն ազդում է անավարտ արտադրության նորմատիվները պահպանելու վրա:

Նորմատիվներից ծախսերի փաստացի շեղումը որոշվում է տնտեսական գործողություն կատարելու պահին, որի պատճառով էլ ընթացիկ վերահսկողությունը պետք է կատարվի ստորաբաժանումների կողմից, որոնք օպերատիվ կերպով կարող են ազդել բացասական շեղումների վրա: Ֆունկցիոնալ ստորաբաժանումները կարող են իրենց գործունեության առանձնահատկության բերումով օպերատիվ կերպով ներազդել ծախսերի վրա: Այսպես, օրինակ՝ մատակարարման-սպառման ստորաբաժանումները կարող են ազդել տրանսպորտային-նախապատրաստական, արտադրական ծախսերի կրճատման վրա՝ դրանց ընթացիկ վերահսկողության միջոցով: Աշխատանքի և աշխատավարձի բաժինները պետք է վերահսկողություն սահմանեն աշխատավարձի ֆոնդի օգտագործման, տարիֆների ու դրույքների ճիշտ կիրառման վրա:

Ծախսերի նկատմամբ հետագա վերահսկողությունը գործունեության բոլոր բնագավառներում ու պատասխանատվության կենտրոններում իրականացնում է հաշվապահական ծառայությունը:

Այսպիսով, ելնելով արտադրության կառավարման, մասնավորապես ներտընտեսական վերահսկման համակարգում արտադրության ծախսերի կառավարման մեջ ֆունկցիոնալ ստորաբաժանումների դերից, կարելի է տվյալ ստորաբաժանումներն առանձնացնել որպես նրա սուբյեկտներ ու որոշել նրանց կողմից վերահսկվող ծախսերի շրջանակը:

* * *

Ներտնտեսական վերահսկողության արդյունավետության բարձրացումն էական ազդեցություն է գործում արտադրական ստորաբաժանման ներսում տնտեսական հաշվարկ կազմակերպելու վրա: Այն ընդգրկում է տնտհաշվարկային խնդիրների պլանավորումը, դրանց կատարման համար նյութական պատասխանատվությունը, տնտհաշվարկային ստորաբաժանումների աշխատանքի օպերատիվ հսկողության և հաշվապահական հաշվառման դրվածքը, դրանց գործունեության արդյունքների գնահատումը, աշխատողների նյութական և բարոյական խրախուսումը:

Ներարտադրական տնտհաշվարկը ընդգրկում է արտադրության ամբողջ ոլորտը. արտադրանքի թողարկումը, աշխատանքի արտադրողականության բարձրացումը, աշխատատարության ու նյութատարության իջեցումը, արտադրանքի որակի բարելավումը: Այդ բոլոր հարցերի լուծման համար կարևոր նեցուկ է ներտնտեսական վերահսկողությունը:

---

Կուսակցական աշխատանքի

պրակտիկա

# ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ՄԵՋ՝ ԱՐԺԱՆԱՎՈՐՆԵՐԻՆ

**Հ. ՄԻՆԱՍՅԱՆ**

Կուսակցության որակական կազմի բարելավման կարևոր պայմանը նրա շարքերի համալրումն է արժանի հերթափոխով: Ահա թե ինչու ԽՄԿԿ XXVII համագումարը, ելնելով լենինյան այդ սկզբունքից, անչափ կարևորեց կոմունիստի անաղարտ ու ազնիվ կերպարի համար անդուլ պայքարի անհրաժեշտությունը, պահանջեց կուսակցությունը պատնեշել պատահական մարդկանցից, նրանցից, ովքեր նրա շարքերն են ընդունվում կարիերիստական կամ շահադիտական այլ մղումներով: Համագումարը նշեց, որ «Ամբողջությամբ կուսակցության կազմի ձևավորումը, նրա շարքերի աճը իրականացվում են կանոնադրական նորմերին համապատասխան, բայց ինչպես ամեն մի կենդանի գործ, այնպես էլ կուսակցության մեջ ընդունելությունը կարիք ունի հետագա կատարելագործման» **(ԽՄԿԿ XXVII համագումարի նյութերը, էջ 115)**: Եվ միանգամայն օրինաչափ է, որ համագումարը խնդիր դրեց է՛լ ավելի սևեռուն ուշադրություն նվիրել կուսակցության շարքերի համալրմանը, բարձրացնել կոմունիստների պատասխանատվությունը իրենց վստահված տեղամասերի գործերի վիճակի և հանձնարարությունների կատարման համար, ապահովել նրանց ավանգարդային դերը աշխատանքում և հասարակական կյանքում, ուժեղացնել սկզբնական կազմակերպությունների մարտունակությունը, մշտական հսկողություն սահմանել յուրաքանչյուր կազմակերպության, ամեն մի կոմունիստի, աշխատողի գործունեության նկատմամբ:

Կուսակցության շարքերի համալրման և նրա որակական կազմի բարելավման հարցերը մշտապես գտնվում են ՀԿԿ Բաղրամյանի շրջկոմի և շրջանի շատ սկզբնական կազմակերպությունների տեսադաշտում: Այդ գործը մենք սերտորեն առնչում ենք շրջանի առջև ծառացած սոցիալ-տնտեսական խնդիրների լուծման հետ: Բանն այն է, որ շրջանի կազմավորման առաջին իսկ օրերից նրա առջև ծառացել են մի շարք լուրջ պրոբլեմներ, ժամանակին չեն լուծվել սոցիալ-կենցաղային, գյուղատնտեսական, արդյունաբերական, շինարարական, վեց նոր ավանների ու շրջկենտրոնի կառուցման, հազարավոր հեկտարներով խամ ու խոպան հողերի յուրացման և ուրիշ այլ կարևորագույն հարցեր: Հետևաբար, մեզանից պահանջվում է ծավալել կազմակերպչական, ստեղծագործական, անմնացորդ ու հայրենանվեր աշխատանք, և մենք սպասելու, դանդաղելու ժամանակ ու իրավունք չունենք: Այսօր դա յուրաքանչյուր կուսկազմակերպությանը, յուրաքանչյուր բաղրամյանցուն ներկայացվող կարևորագույն պահանջն է: Իսկ այդ գործում լուրջ անելիքներ ունեն կոմունիստները, որոնք, գտնվելով ավանգարդում, պետք է աշխատեն անձնվիրաբար, լինեն օրինակելի, բարձր պահեն կուսակցականի անաղարտ ու ազնիվ կերպարը և առաջնորդեն մասսաներին:

Կուսշրջկոմը և սկզբնական կազմակերպությունները կուսշարքերի համալրման աշխատանքում անվերապահորեն առաջնորդվում են ԽՍՀԿԿ XXVII համագումարի սկզբունքային պահանջներով, «Կուսակցության մեջ ընդունելության, կուսակցական

---

*ՄԻՆԱՍՅԱՆ ՀԵՆՐԻԿ ՎԱՀՐԱՄԻ— ՀԿԿ Բաղրամյանի շրջկոմի առաջին քարտուղար:*

շարքերի ամրապնդման ասպարեզում Տաշքենդի մարզային կուսկազմակերպության լուրջ թերությունների մասին» ԽՄԿԿ Կենտկոմի որոշմամբ։ Դրանց հիման վրա մշակել ենք կուսշարքերի համալրման և որակական կազմի բարելավման միջոցառումների պլան։ Առանձնահատուկ ուշադրություն ենք նվիրում, որպեսզի կուսակցության մեջ ընդունվեն քաղաքականապես հասուն, կազմակերպչական ունակություններով օժտված և կուսակցության դիրեկտիվներն ակտիվորեն կենսագործող մարդիկ։

ԽՄԿԿ շարքերի համալրման գործը ամենայն պատասխանատվությամբ են կազմակերպում Քարակերտի, Վանանդի, Հուշակերտի տնտեսությունների, խոզաբուծական № 1 և 2 համալիրների, Մյասնիկյանի միջնակարգ դպրոցի սկզբնական կազմակերպությունները։ Նրանք այդ նպատակով նախապատրաստում են ռեզերվ, որոշակի ժամանակաշրջանում ուսումնասիրում կուսակցության շարքերն ընդունվողի աշխատանքային գործունեությունը, հասարակական ակտիվությունը, ծանոթանում նրա կարողությանը, տալիս են հանձնարարություններ։ Եթե ռեզերվայինը կոմերիտական է, ապա այդ ամենն արվում է ԼԿԵՄ կազմակերպության հետ միասին, հաշվի առնվում նրա մասնակցությունը կոմերիտական աշխատանքին։ Նման բազմակողմանի ուսումնասիրությունից հետո միայն ընդունվողի հարցը քննարկվում է կուսակցական դռնբաց ժողովում, որտեղ կոլեկտիվի անդամները բնութագրում են նրան, համոզվում նրա գաղափարաքաղաքական պատրաստվածության մեջ և նոր միայն ընդունում դրական կամ բացասական որոշում։ Բազմաթիվ օրինակներից նշեմ մեկը։ Մերուժան Կիրակոսյանը ընդամենը քսան տարեկան է, բայց աչքի է ընկել և՛ արտադրական, և՛ հասարակական աշխատանքում։ Ծնվել ու դաստիարակվել է աշխատավորական բազմանդամ ընտանիքում։ Հիրավի ծնողներից է ժառանգել սերը հողի նկատմամբ։ Միջնակարգ դպրոցն ավարտելուց հետո ընդունվեց Լուկաշինի անվան խորհտնտեսություն-տեխնիկում, ապա ծառայեց խորհրդային բանակում և 1986 թ. անդամագրվեց Մյասնիկյանի անվան սովխոզի № 6 բրիգադի կոլեկտիվին։ Դարձավ հմուտ հողագործ և աշխատում է մեծ նվիրվածությամբ։ Նրան ընտրեցին «կոմերիտական լուսարձակ» շտաբի կազմում, տվեցին կոմերիտական զանազան հանձնարարություններ։ Եվ նա ամեն ինչ անում էր բարեխղճորեն, ժամանակին։ Իսկ երբ 1988 թ. կուսակցական ժողովում դրվեց կոմերիտական Մ. Կիրակոսյանին ԽՄԿԿ անդամության թեկնածու ընդունելու հարցը, ժողովականները դրական կողմերով բնութագրեցին երիտասարդ հողագործին, միաձայն քվեարկեցին նրան կուսակցությանը զինվորագրվելու օգտին։

Թեկնածուական ստաժը, ըստ էության, դաստիարակության և լուրջ քննության շրջան է կուսակցությանը նոր զինվորագրվածի համար։ Մենք կարևորում ենք այդ հանգամանքը։ ԽՄԿԿ անդամության թեկնածուին պարտադիր կերպով ընդգրկում ենք քաղաքական կամ տնտեսագիտական ուսուցման մեջ, նրան նորից տալիս զանազան հանձնարարություններ, հետևում կատարման ընթացքին, լսում նրա հաշվետվությունը։ Աշխատանքում թերանալու, կուսակցական հանձնարարությունները չկատարելու դեպքում թեկնածուի հարցը կոմունիստները քննարկում են իրենց ժողովում և կա՛մ չեն երաշխավորում ընդունվելու ԽՄԿԿ շարքերը որպես անդամ, կա՛մ երկարաձգում են թեկնածուական ժամանակաշրջանը։ Երբեմն դրան անդրադառնում է կուսբյուրոն։ Այսպես, օրինակ, Քարակերտի պետական տնտեսության սկզբնական կուսկազմակերպության բյուրոն քննարկել է ԽՄԿԿ անդամության թեկնածու Մ. Մարգարյանի՝ կուսակցության շարքերը որպես անդամ ընդունվելու հարցը և չի երաշխավորել այն լսելու կուսակցական ժողովում, ավելացրել է նրա թեկնածուական ժամանակաշրջանը, տվել լրացուցիչ հանձնարարություններ։ Մ. Մարգարյանը զգաստացավ, իրեն լավ դրսևորեց և տրված հանձնարարությունները կատարելուց հետո միայն ընդունվեց ԽՄԿԿ շարքերը որպես անդամ։

Կուսակցության շարքերի համալրման աշխատանքի ուսանելի փորձ ունի նաև թեթև լցանյութերի արտադրամիավորման սկզբնական կուսկազմակերպության կոմիտեն։ Նկատի ունենալով, որ կոմունիստների կազմում բանվորների տեսակարար կշռի բարձրացումը կուսշարքերի համալրման անշեղ միտումն է, կուսկոմիտեն լուրջ ուշադրություն է նվիրում այդ գործին։ Վերջին հինգ տարում կուսակցության մեջ որպես անդամության թեկնածու ընդունվածների 84,6 տոկոսը բանվորներ են։ Դա հնարավորություն է ընձեռել ուժեղացնել կուսակցության կորիզը արտադրական բրիգադներում և ստեղծել կուսխմբեր։

Այսօր մեր շրջանի շատ սկզբնական կուսկազմակերպությունների գործունեության սկզբունքն է դարձել կուսակցության մեջ ընդունվել ցանկացողների գաղափարաքաղաքական, գործնական ու բարոյական հատկանիշների մանրակրկիտ ուսումնասիրությունը։ Խորությամբ ծանոթանում ենք նրանց անձնական գործերին, հաշվի առնում ինչպես կոմունիստների, այնպես էլ անկուսակցականների կարծիքը, որոնք աշխատում են նրանց հետ, ճանաչում՝ անձնական կյանքում։ Ընդունելությունը կատարվում է դռնբաց կուսակցական ժողովներում՝ անկուսակցական գործընկերների մասնակցությամբ։ Դա հնարավորություն է ընձեռում համակողմանիորեն քննարկել ընդունվողի արժանիքներն ու թերությունները, նրանց հարցը լուծել հրապարակայնորեն, զերծ մնալ պատահականություններից և թյուրիմացություններից։

ԱՆԺԽՏԵԼԻ Է ՍԿԶԲՆԱԿԱՆ ԿՈՒՍԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՏԵՂՆ ՈՒ ԴԵՐԸ շրջանի հասարակական-քաղաքական կյանքի վերակառուցման, սոցիալիստական դեմոկրատիայի ու հրապարակայնության զարգացման, սոցիալ-տնտեսական խնդիրների լուծման գործում։ Այդ առաքելությունը կարող է ավելի լավ կատարել միայն մարտունակ, ուժեղ կազմակերպությունը։ Նկատի ունենալով այդ հանգամանքը՝ կուսշրջկոմը հետևողականորեն բարձրացնում է սկզբնական կազմակերպությունների պատասխանատվությունը բոլոր բնագավառներում կուսակցական միջուկն ամրապնդելու, իր շարքերը արժանավոր մարդկանցով համալրելու համար։ Այս առումով մեր շրջանի պայմաններն առանձնահատուկ են. տարի առ տարի կազմավորվում են նոր տնտեսություններ, արդյունաբերական, շինարարական ու տրանսպորտի ձեռնարկություններ, սպասարկման ոլորտի հիմնարկություններ։ Հետևաբար, առաջանում է նաև այդ բնագավառներում սկզբնական կուսկազմակերպություններ ստեղծելու, դրանք ակտիվ ու մարտունակ դարձնելու անհրաժեշտություն։ Այս առումով մեզ մոտ բավականին դրական աշխատանք է կատարվել։ Շրջանի կազմավորումից հետո սկզբնական կուսկազմակերպությունների քանակն ավելացել է 12-ով, արտադրամասայինինը՝ 10-ով, կուսակցական խմբերինը՝ 12-ով, կոմունիստների թիվը աճել է 386-ով։ Ներկայումս սկզբնական կուսկազմակերպություններում հաշվառման մեջ են 1105 կոմունիստներ։ Ընդ որում, մեծապես բարելավվել է կուսկազմակերպությունների որակական կազմը։ Այդ ժամանակաշրջանում կուսակցության շարքերն ընդունված 270 կոմունիստներից 143-ը բանվորներ և կոլտնտեսականներ են, 229-ը՝ ՀամԼԿԵՄ անդամներ, 105-ը՝ կանայք։

ԽՄԿԿ շարքերի համալրման աշխատանքը նպատակային ձևով կազմակերպելու համար մենք գործնական օգնություն ենք ցույց տալիս սկզբնական կուսկազմակերպություններին։ Շրջկոմի բյուրոյում բազմիցս քննարկել ենք նրանց բյուրոների և քարտուղարների հաշվետվությունը, ընդունել գործին նպաստող որոշումներ, ապահովել դրանց կատարումը։ Կարևորը ոչ միայն կուսշարքերի խելամիտ համալրումն է, այլև կուսակցությանը նոր զինվորագրված երիտասարդների հետ տարվող դաստիարակչական աշխատանքի արդյունավետ կազմակերպումը։ Շատ սկզբնական կազմակերպություններում պրակտիկա է դարձել՝ կուսակցական ժողովներում և բյուրոյի նիստերում լսել ԽՄԿԿ անդամության թեկնածուների, երիտասարդ կոմունիստների, ինչպես նաև կոմունիստ ղեկավարների հաշվետվությունը՝ իրենց պաշտոնական պարտականությունների, տրված հանձնարարությունների կատարման վերաբերյալ։ Ընդ որում, ամեն մեկի գործունեությանը տրվում է կուսակցական գնահատական, որն ավելի է բարձրացնում կոմունիստների պատասխանատվությունը, ուժեղացնում պահանջկոտությունը ղեկավար կադրերի նկատմամբ։ Որպես կանոն ԽՄԿԿ անդամության թեկնածուների հաշվետվությունը քննարկվում է երաշխավորողների ներկայությամբ։ Անհրաժեշտության դեպքում նրանց համար պատասխան են տալիս նաև երաշխավորող ընկերները։ Այդ ամենի շնորհիվ երիտասարդ կոմունիստները հանդես են բերում մեծ ակտիվություն ու նախաձեռնություն, առավել պարտաճանաչորեն կատարում իրենց վստահված գործը, զգալի ավանդ ներդնում շրջանի կառուցապատման և բարգավաճման, գյուղատնտեսության ու արդյունաբերության զարգացման, սոցիալ-կենցաղային հարցերի լուծման գործում։ Այդ առնչությամբ ամենայն դրվատանքի են արժանի թեթև լցանյութերի արտադրամիավորման բանվոր Ռ. Բաբելյանը, Վանանդի պետական տնտեսության այգեգործուհի Մ. Հարությունյանը, Մյասնիկյանի միջնակարգ դպրոցի ուսուցչուհի Ժ. Մանուչարյանը, խոզաբուծական № 2 համալիրի օպերատոր Կ. Մարտիրոսյանը, № 7 ՇՄՇ-ի բանվոր Ռ. Մանուկյանը և շատ ուրիշներ։ Նրանք իրենց հայրենանվեր աշխատանքով շենացնում են մեր շրջանը։

ԿՈՒՍՇԱՐՔԵՐԻ ՀԱՄԱԼՐՄԱՆ ԳՈՐԾՈՒՄ վճռական դեր են խաղում կուսակցության ստորին օղակները: Նրանք գործում են բուն կոլեկտիվի խորքում և առավել լավատեղյակ են նրա գործերին ու հոգսերին, ավելի լավ են ճանաչում արտադրության մարդկանց: Եվ մեր շատ սկզբնական կուսկազմակերպություններ մշտապես հոգ են տանում կուսխմբերի ակտիվությունն ու պատասխանատվությունը բարձրացնելու մասին: Նրանց աշխատանքում պրակտիկա է դարձել ԽՄԿԿ շարքերն ընդունվել ցանկացողի դիմումը նախապես քննարկել իրենց ժողովներում: Միայն նրանց երաշխավորությունից հետո է դիմողի հարցը դրվում հետագա քննարկման: Շատ կազմակերպություններում կուսխմբերը ղեկավարում են երիտասարդ կոմունիստներ, որոնք մարդկանց հետ գործելու, կուսակցական աշխատանքի մեջ հմտանալու շնորհիվ հանդես են բերում մեծ ակտիվություն, հաջողությամբ կատարում իրենց վերապահված դերը: Այս առումով դրվատանքի է արժանի Քարակերտի պետական տնտեսության վեցերորդ բրիգադի կուսակցական խմբի գործունեությունը: Նրա կազմակերպիչն է երիտասարդ կոմունիստ Ս. Անտոնյանը: Այստեղ հմտորեն են զուգակցվում կուսակցական հանձնարարությունները աշխատանքային պարտականությունների հետ, բրիգադը մշտապես պատվով է կատարում բոլոր առաջադրանքներն ու ստանձնած սոցպարտավորությունները: Անցած տարի սոցիալիստական մրցության արդյունքներն ամփոփող շրջանային հանձնաժողովը խաղողագործական բրիգադների մեջ հաղթող է ճանաչել և ՀԿԿ շրջկոմի, շրջխորհրդի գործկոմի, ՀԼԿԵՄ շրջկոմի, ագրոարդյունաբերական համալիրի աշխատողների արհմիության շրջկոմի փոխանցիկ կարմիր դրոշը շնորհել այս բրիգադին: Նրա կոլեկտիվը, պլանավորված 390-ի փոխարեն, ստացել էր 425 տոննա խաղող: Այդ հաջողության մեջ զգալի էր բրիգադի կոմունիստների և կուսխմբի կազմակերպիչ Ս. Անտոնյանի ներդրումը:

ԽՄԿԿ ՇԱՐՔԵՐԻ ՀԱՄԱԼՐՄԱՆ ԿԱՐԵՎՈՐ ՈՒ ՊԱՏԱՍԽԱՆԱՏՈՒ ԳՈՐԾՈՒՄ կուսշրջկոմին և սկզբնական կազմակերպություններին մեծ օգնություն է ցույց տալիս շրջկոմին առընթեր կուսակցական հանձնաժողովը: Շրջկոմի բաժինների հետ համատեղ հանձնաժողովը սիստեմատիկաբար հրավիրում է շրջանի ակտիվի, սկզբնական կազմակերպությունների քարտուղարների սեմինար-խորհրդակցություններ, որտեղ հանգամանորեն քննարկվում են ԽՄԿԿ շարքերի համալրման գործի նպատակային կազմակերպման, ԽՄԿԿ ծրագրի ու կանոնադրության, XXVII համագումարի, XIX կուսկոնֆերանսի պահանջների անթերի կատարման, հետհամագումարյան պլենումների առաջադրած նոր խնդիրների իրականացման ուղիների հարցերը:

Կուսհանձնաժողովի անդամները, մինչև նիստում ԽՄԿԿ անդամության թեկնածու կամ անդամ ընդունվողների գործերի քննարկումը, նախապես լինում են տեղերում, համակողմանիորեն ուսումնասիրում նրանց գործունեությունը, տրված հանձնարարությունների կատարումը: Հանգամանորեն չնախապատրաստված, խորությամբ չուսումնասիրված գործեր ներկայացնելու կամ ընդունվողի քաղաքականապես պատրաստ չլինելու դեպքում հանձնաժողովը չի երաշխավորում հարցը շրջկոմի բյուրոյում քննարկել: Նման դեպքերում սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարներին հանձնարարվում է կրկին վերանայել չերաշխավորված գործը, իսկ ընդունվողին օգնել՝ քաղաքականապես պատրաստվելու:

Այսօր, երբ վերլուծում ենք ԽՄԿԿ շարքերի համալրման գործում կուսշրջկոմի և սկզբնական կազմակերպությունների կատարած աշխատանքը, իրավացիորեն համոզվում ենք, որ այդ ասպարեզում զգալի գործ է արված: Սակայն քննադատաբար պետք է ասել, որ ոչ բոլոր սկզբնական կուսկազմակերպություններն են ԽՄԿԿ շարքերի համալրմանը մոտենում լրջորեն, ցուցաբերում սկզբունքայնություն ու պահանջկոտություն և կուսակցության մեջ ընդունում լավագույններին, այն մարդկանց, ովքեր բոլոր բնագավառներում իրենց դրսևորում են դրական կողմերով, ունեն բարձր պատասխանատվություն և արժանի են կրելու կոմունիստի վեհ կոչումը:

Կուսակցականի անաղարտ և ազնիվ կերպարի հաստատման հարցը ամենայն սրությամբ արծարծվեց ՀԿԿ Կենտկոմի 1988 թ. սեպտեմբերյան պլենումում: Այն դիտվեց որպես հանրապետության բարոյական առողջացման կարևոր գործոն: Այդ առթիվ Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Ս. Հարությունյանը պլենումին տված զեկուցման մեջ ասաց. «Առողջ բարոյաքաղաքական մթնոլորտի ստեղծման, բարոյականության վեհ սկզբունքների հաստատման ասպարեզում առանձնապես նշանակալից դեր ունի կոմունիստի, ղեկավարի անձնական օրինակը, նրա այնպիսի հատկանիշները, ինչպիսիք են անբասիր ազնվությունը, սկզբունքայնությունը, անձնական համեստությունը»: Այս պահանջը մեզ համար գործողության ուղեցույց է կուսակցության շարքերի համալրման մեր ողջ աշխատանքում: Հենց այդպիսի հատկանիշներով պիտի օժտենք կուսակցական ընտանիքին նոր անդամագրվող երիտասարդներին, այդ պահանջների ոգով պիտի դաստիարակենք ԽՄԿԿ անդամության թեկնածուներին, բոլոր կոմունիստներին:

Կոմունիստի վեհ կոչմանը բնորոշ հատկանիշները առավել որոշակիորեն դրսևորվեցին հանրապետության հյուսիսային շրջաններում տեղի ունեցած երկրաշարժի օրերին: Մեր շրջանից օգնության մեկնած առաջին բրիգադները Լենինական են հասել երկրաշարժի իսկ օրը, երեկոյան, ժամը 20-ի սահմաններում: Նրանց կազմում եղել են նաև մեծ թվով երիտասարդ կոմունիստներ ու ԽՄԿԿ անդամության թեկնածուներ: Այսպես, № 9 շինտրեստի մեխանիկական բազայի հավաքող բանվոր, ԽՄԿԿ անդամության թեկնածու Վաղարշակ Վարդանյանը և ավտոկռունկավար, 1986 թ. ԽՄԿԿ անդամ Ասատուր Մեհրաբյանը շուրջ 18 օր (դեկտեմբերի 8—26-ը) Լենինականում ակտիվորեն մասնակցել են Լենինի հրապարակը հատող բնակելի շենքերի և ռուսական դպրոցի փլատակներում իրականացվող փրկարարական աշխատանքներին: Այդ գործում անձնական լավ օրինակ են տվել նաև երիտասարդ մեխանիզատորներ, ԽՄԿԿ անդամներ Գագիկ Գալոյանը (Բագարանի կոլտնտեսություն), Էդվարդ Ավետիսյանը (թեթև լցանյութերի արտադրամիավորում), ուսուցիչ, ԽՄԿԿ անդամության թեկնածու Նորայր Թումանյանը (Բագարանի դպրոց), բուժքույր Մարինե Սարգսյանը, ՇԱԱՄ-ի մեքենայացման և էլեկտրիֆիկացման ձեռնարկության մոնտաժող բանվոր Սարգիս Ղահրամանյանը և շատ ուրիշներ:

Ընդհանուր առմամբ մեր շրջանից աղետյալ գոտիներում կատարված փրկարարական աշխատանքներին մասնակցել է ավելի քան երկու հազար մարդ: Նրանք իրենց հետ տարել են 140 անուն տեխնիկա, այդ թվում՝ հզոր ավտոկռունկներ, ծանր ինքնաթափ ավտոմեքենաներ, ավտոբեռնիչներ, եռակցման ապարատներ, շարժական էլեկտրակայաններ և փլատակների տակից փրկել 189 մարդու կյանք, հանել 254 զոհվածի: Շրջանի աշխատավորական կոլեկտիվներն ու մեծ թվով անհատներ աղետի վայրեր են հասցրել զգալի քանակությամբ սննդամթերք (հաց, միս, պահածոներ, լիմոնադ և այլն), աղետյալների օգնության 700412 հաշվին հանձնել ավելի քան կես միլիոն ռուբլի: Ակտիվ են գործել և բուժաշխատողները: Նրանք առաջին օգնությունն են ցույց տվել 311 վիրավորների, շտապ օգնության ավտոմեքենաներով տարբեր շրջանների հիվանդանոցներ փոխադրել 139 ծանր հիվանդների: Երկրաշարժից տուժած շրջաններից մենք ընդունել ենք ավելի քան հինգ հազար մարդ, որոնց մի մասը հետագայում տեղափոխվել է հանրապետության այլ վայրեր: Ներկայումս մեր շրջանում են գտնվում հազար աղետյալներ:

Երկրաշարժից մեծապես տուժեց հանրապետության ագրոարդյունաբերական համալիրը: Հետևաբար, նաև մեր շրջանի գյուղատնտեսության աշխատողների, գյուղական կոմունիստների պարտքն է՝ ինչ-որ չափով փոխհատուցել պատճառված վնասը: Այդ նպատակով էլ աղետյալ գոտուց մեր շրջանի պետական տնտեսություններ ենք բերել ավելի քան 4.000 գլուխ մանր և 250 գլուխ խոշոր եղջերավոր անասուն: Քարակերտի սովխոզ տեղափոխած անասունների խնամքը վստահվել է երիտասարդ կոմունիստ Բարեկ Խոչբեկյանին: Եվ նա խղճի մտոք է աշխատում: Իսկ նրա օրինակը եզակի չէ:

ՄԻ ՇԱՐՔ ՍԿԶԲՆԱԿԱՆ ԿՈՒՍԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՒՄ դեռևս չի հաղթահարվել այն թյուր մտայնությունը, թե կուսակցության մեջ կարող է ընդունվել ցանկացած բանվոր, կոլտնտեսական կամ ծառայող, որը բարեխղճորեն աշխատում և կատարում է իր պլանային առաջադրանքները: Հաճախ խորությամբ չեն ուսումնասիրվում ընդունվել ցանկացողի գործնական հատկանիշները, հաշվի չեն առնվում քաղաքական պատրաստվածությունը և հետևանքը լինում է այն, որ որոշ ժամանակ անց ԽՄԿԿ անդամության թեկնածուն կամ կոմունիստը վտարվում կամ դուրս է մնում կուսակցության շարքերից: Օրինակ, Մյասնիկյանի սովխոզ-գործարանի սկզբնական կուսկազմակերպությունն իր իսկ կողմից ԽՄԿԿ անդամության թեկնածու ընդունած բանվոր Կ. Հովհաննիսյանին դուրս թողեց կուսակցության շարքերից՝ թեկնածուական ժամանակաշրջանում կուսակցական կյանքից կտրվելու և կուսակցական անդամավճար չմուծելու համար: Նույն ձևով Երվանդաշատի սկզբնական կուսկազմակերպությունը ԽՄԿԿ անդամության թեկնածու է ընդունել Շ. Այվազյանին, իսկ այնուհետև վտարել ԽՄԿԿ շարքերից՝ հարբած վիճակում ավտոմեքենա վարելու համար: Հապճեպության և նման անպատասխանատու մոտեցման հետևանքով վերջին երեք տարում մեր սկզբնական կուսկազմակերպությունների կողմից ընդունված ԽՄԿԿ

երկուական անդամներ և անդամության թեկնածուներ վտարվել, իսկ ԽՄԿԿ մեկ անդամության թեկնածու դուրս է մնացել կուսակցության շարքերից:

Ցավոք, մեզ մոտ կան նաև այնպիսի փաստեր, երբ ոմանք որպես բանվոր են աշխատում ԽՄԿԿ շարքերն ընդունվելու համար: Եվ կուսակցության անդամության թեկնածու ընդունվելուց անմիջապես հետո հրաժեշտ են տալիս բանվորական կյանքին, ստանձնում ծառայողի պաշտոն: Այդպիսի օրինակներ կան հացամթերքների կոմբինատի, Մյասնիկյանի խորհտնտեսություն-գործարանի սկզբնական կուսկազմակերպություններում:

Կուսշրջկոմին լրջորեն մտահոգում է նաև այն հանգամանքը, որ դեռևս ունենք այնպիսի պետական տնտեսություններ, որտեղ ԽՄԿԿ շարքերի ամրապնդման, որակական կազմի բարելավման կարևորագույն գործը դանդաղ է ընթանում: Ոչ մի քննադատության չի դիմանում այն փաստը, որ Բաղրամյանի և Արևադաշտի պետական տնտեսությունների սկզբնական կուսկազմակերպությունները (քարտուղարներ՝ Ս. Ասատրյան, Ա. Վարդանյան) վերջին հինգ տարում ԽՄԿԿ շարքերն են ընդունել մեկական մարդ, իսկ Կողբավանի և Արտամետի պետական տնտեսությունները մինչև օրս չունեն սկզբնական կուսկազմակերպություն: Մինչդեռ այս տնտեսություններում այնքա՜ն պրոբլեմներ և չլուծված հարցեր կան, որ կուսակցական բջջի ուժեղացումը և ստեղծումը դարձել են օրվա հրամայական պահանջը: Եվ կոմունիստները պետք է նպաստեն հազարավոր հեկտարներով դարավոր խամ ու խոպան հողերի յուրացմանը, օգնեն կառուցելու և շենացնելու ավանները: Նրանց անձնական օրինակով պետք է առաջնորդվեն աշխատավոր մասսաները:

ՄԵԶ ԱՆՀԱՆԳՍՏԱՑՆՈՒՄ Է ՆԱԵՎ ՇՐՋԱՆԻ շինարարական մի քանի սկզբնական կուսկազմակերպությունների ոչ բարձր մարտունակությունը: Բանն այն է, որ Բաղրամյանի շրջանն իր կազմավորման օրվանից հիշեցնում է շինարարական մի մեծ հրապարակ: Շրջանի սոցիալ-տնտեսական զարգացման արագացումն ու վերափոխումը ուղղակիորեն պայմանավորված են այս ճյուղի հետևողական ու համաչափ աշխատանքով: Սակայն այս բնագավառը շարունակաբար հետ է մնում: Գլխավոր պատճառներից մեկը կուսակցական կորիզի ամրապնդման, նրա շարքերի համալրման և անհրաժեշտ ռեզերվի նախապատրաստման նպատակով տարվող աշխատանքում տեղ գտած թերությունն է: Օրինակ, № 49 ՇՄՇ-ի սկզբնական կուսկազմակերպությունը (քարտուղար՝ Ս. Պապիկյան) աչքաթող է արել ԽՄԿԿ շարքերի համալրման կենսական գործը և վերջին տարիներին ոչ ոք այդ կազմակերպությունից չի ընդունվել կուսակցության մեջ, իսկ շրջկոմը հաշտվել է նման փաստի հետ:

Առանձին շինարարական կուսկազմակերպություններ դեռևս չեն կարողանում ճիշտ տեղաբաշխել կոմունիստների ուժերը, հետևողական աշխատանք չեն տանում նրանց պատասխանատվությունը բարձրացնելու համար, ցուցաբերում են հաշտվողական վերաբերմունք, որի պատճառով էլ թույլ է պետական, աշխատանքային ու կատարողական կարգապահությունը: Նրանց ղեկավարները բազում դիտողություններից, հրապարակավ քննադատությունից, կուսակցական պատասխանատվության ենթարկվելուց հետո էլ անգամ դժվարանում կամ չեն կարողանում վերակառուցել իրենց գործունեությունը: Այսպես, օրինակ, «Էլևատորշին» ՇՄՇ-ի պետ Մ. Բադալյանին, շինմոնտաժային աշխատանքների պլանային առաջադրանքները սիստեմատիկաբար թերակատարելու, օբյեկտների գործարկման ժամկետները խախտելու, արտադրության ցածր որակի, կոլեկտիվում աշխատանքային կարգապահության ամրապնդման նկատմամբ թույլ հսկողություն սահմանելու համար, կուսշրջկոմի բյուրոն հայտարարեց խիստ նկատողություն և ժամանակ տվեց՝ վերացնելու նշված թերությունները: Սակայն Մ. Բադալյանը հետևություն չարեց և «Էլևատորշին» ՇՄՇ-ում գործերը շտկելու համապատասխան միջոցներ չձեռնարկեց: Ընթացիկ տարվա հունվարին շրջկոմի բյուրոն լսեց Մ. Բադալյանի հաշվետվությունը և որոշեց նրան ազատել աշխատանքից:

Կուսակցության շարքերի համալրման և ամրապնդման գործում դեռևս շատ անելիքներ ունեն առողջապահության, շրջանային թերթի խմբագրության, կուլտուրայի և կենցաղսպասարկման ոլորտի սկզբնական կուսկազմակերպությունները: Վերջին հինգ տարիներին բուժհիմնարկի, խմբագրության, № 87 պրոֆտեխուսումնարանի սկզբնական կազմակերպությունները ԽՄԿԿ շարքերն են ընդունել ընդամենը մեկական, իսկ կենցաղսպասարկման, արտադրական վարչության, ավտոտրանսպոր-



տային ձեռնարկության սկզբնական կուսկազմակերպությունները՝ ոչ մի մարդ: Դրությունն ավելի վատ է նավթի բազայի սկզբնական կուսկազմակերպությունում: Այն ոչ միայն նոր մարդկանցով չի համալրվում, այլև այստեղ նվազում է կոմունիստների թիվը, իսկ թերություններ ու վրիպումներ հիմնարկությունում համեմատաբար շատ են:

Մեզ մոտ, չնայած ձեռնարկված միջոցներին, դեռևս կան կուսկազմակերպությունների «ծերացման» փաստեր: Նշված ժամանակաշրջանում, թեև երկաթուղային բոլոր կազմակերպություններն էլ համալրել են ԽՄԿԿ շարքերը նոր ընդունվածներով, սակայն ներկայումս Արաքս, Դալարիկ, Քարակերտ կայարանների սկզբնական կուսկազմակերպություններում կոմունիստների միջին տարիքը 55 է:

Եղած թերություններն ու թերացումները վերացնելու, ԽՄԿԿ համալրման գործը պատշաճ մակարդակով կազմակերպելու և շրջանի առաջընթացն ապահովելու գործում այսօր մեզ համար գործողության ուղեցույց են կուսակցության XIX համամիութենական կոնֆերանսի նոր պահանջները: Կուսշրջկոմն ու սկզբնական կազմակերպությունները, վերակառուցելով իրենց աշխատանքի ձևերն ու մեթոդները, ամենայն պատասխանատվությամբ ու համակողմանիորեն ստուգում են կուսակցության մեջ յուրաքանչյուր ընդունվողի գործնական ու քաղաքական տվյալները, անխոնջ կերպով պայքարում ԽՄԿԿ շարքերի անաղարտության, նրա ամրապնդման համար: Օգտագործում ենք բոլոր հնարավորությունները, որպեսզի կուսակցության շարքերը չթափանցեն պատահական մարդիկ, այլ ընդունվեն միայն ու միայն արժանավորները, նրանք, ովքեր ճիշտ են ընկալում կուսակցության ու կառավարության առաջադրած խնդիրները և անվերապահորեն պայքարում են դրանց իրականացման համար, որպեսզի «Աշխատավոր մարդը,— ինչպես ԽՄԿԿ XXVII համագումարում ասաց ընկ. Մ. Ս. Գորբաչովը,— կարողանա ասել՝ այո՛, դա կոմունիստ է»:

---

# ՄԵՆՔ ՈՒԺԵՂ ԵՆՔ, ԵՐԲ ՄԻԱՍԻՆ ԵՆՔ

**Մեր ժողովրդի հիշողության մեջ անցած տարին մնաց որպես մեծագույն ողբերգության, հսկայական մարդկային կորուստների և չտեսնված փորձությունների տարի: Հայաստանում տեղի ունեցավ ամենաուժեղ և իր հետևանքներով ամենածանր երկրաշարժերից մեկը պատմության մեջ:**

**Ինչպե՞ս ընկալեցին հայ ժողովրդի ողբերգությունը խորհրդային մարդիկ, հասարակական և պետական կազմակերպությունները, ինչպե՞ս են նրանք մասնակցում երկրաշարժի հետևանքների վերացմանը: Այս հարցերով մենք դիմեցինք Հայկական ԽՍՀ Մինիստրների խորհրդի նախագահի առաջին տեղակալ Լ. Գ. ՍԱՀԱԿՅԱՆԻՆ:**

— Դժվար է պատկերացնել,— ասաց նա,— թե ինչ վիճակում կլիներ այժմ հանրապետությունը, եթե ճակատագրական դեկտեմբերի յոթից հետո ամբողջ խորությամբ չդրսևորվեին խորհրդային մարդկանց միասնության, համախմբվածության, եղբայրության ստեղծարար հնարավորությունները: Տարողունակ և համոզիչ կերպով է ասված կուսակցությանը, խորհրդային ժողովրդին ԽՄԿԿ Կենտկոմի նախընտրական դիմումի մեջ. «Այսօր ոչ մեկին պետք չէ համոզել, որ մենք ուժեղ ենք, երբ միասին ենք: Ամբողջ երկիրը, յուրաքանչյուր հանրապետություն, յուրաքանչյուր խորհրդային ընտանիք Հայաստանի դժբախտությունն ընկալեց որպես սեփականը: Եվ յուրաքանչյուրը կիսեց այդ դժբախտությունը, օգնության եկավ»:

Մ. Ս. Գորբաչովի արտասահմանյան ուղևորության ընդհատումը և նրա ժամանումը անմիջականորեն տարերային աղետի շրջան, բնակչության հետ հանդիպումները ու զրույցները, հանրապետությանը անհետաձգելի և համակողմանի օգնություն ցույց տալու վերաբերյալ տեղում խոշոր ու գործնական որոշումների ընդունումը քաղաքական և բարոյահոգեբանական մեծ ազդեցություն ունեցան, մարդկանց համակեցին լավատեսությամբ, տարերային աղետի հետևանքների շուտափույթ վերացման վստահություն ներշնչեցին:

Հանրապետության համար բացառիկ կարևորության մոբիլիզացնող գործոն էր Ն. Ի. Ռիժկովի գլխավորած ԽՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի հանձնաժողովի գործունեությունը, որը ամենաասեղմ ժամկետներում կազմակերպված բնույթ հաղորդեց երկրաշարժի հետևանքների վերացման ամբողջ աշխատանքին և, ինչը շատ էական է, լայն հրապարակայնության պայմաններում կատարվող այդ աշխատանքը տարերային աղետի շրջանում բնակչության կենսագործունեության ապահովման խոշորամասշտաբ միջոցառումների իրականացման հնարավորություն տվեց:

Ամենից առաջ հարկ է նշել, որ հանգամանորեն քննելով աշխատանքների ամբողջ ընթացքը, ԽՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն անհրաժեշտ համարեց առաջիկա երկու տարում ապահովել ամբողջ աղետյալ շրջանի սոցիալ-տնտեսական պոտենցիալի վերականգնումը: ԽՄԿԿ Կենտկոմը և ԽՍՀՄ Մինիստրների խորհուրդը ընդունեցին մեր հանրապետության համար մի շարք բախտորոշ որոշումներ, որոնք կոմպլեքսայնություն ու հետևողականություն են հաղորդում երկրաշարժի հետևանքների վերացման աշխատանքներին: Դրանցում շարադրված է Հայաստանին օգնություն ցույց տալու կոնստրուկտիվ միջոցառումների լայն ծրագիր:

Մեր նյութական և մարդկային ռեսուրսները մոբիլիզացնելու նպատակով կազմակերպական և քաղաքական մեծ աշխատանք կատարեցին Հայաստանի կոմկուսի Կենտկոմը, հանրապետության Մինիստրների խորհուրդը, կուսակցական, խորհրդային և տնտեսական մարմինները: Հրավիրվեց հանրապետության կուսակցական-տնտեսական ակտիվի ժողով, որտեղ ելույթ ունեցան ԽՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ, ԽՍՀՄ Մինիստրների խորհրդի նախագահ Ն. Ի. Ռիժկովը և Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Ս. Գ. Հարությունյանը:



Նախանշված ծրագրերը մասշտաբային են: Վիթխարի աշխատանք է սպասում: Չէ որ երկրաշարժն ընդգրկել է հանրապետության տարածքի 40 տոկոսը՝ մոտ մեկ միլիոն բնակչությամբ: Տուժել են 21 քաղաք ու շրջան, 342 գյուղ, որոնցից 58-ը լրիվին ավերվել է: Վերջին տվյալներով զոհվել է մոտ 25 հազար մարդ, տարբեր աստիճանի խեղումներ ու վնասվածքներ է ստացել մոտ 20 հազարը:

Կորսվել է մոտ 8 միլիոն քառակուսի մետր բնակտարածություն, ինչը հանրապետության ամբողջ բնակարանային ֆոնդի 17 տոկոսն է: Անօթևան է մնացել 514 հազար մարդ: Ավերվել կամ վթարային վիճակում են 277 դպրոց, 245 մանկական նախադպրոցական հիմնարկ, առողջապահության 250 օբյեկտ, ինչպես նաև 324 ակումբ ու կուլտուրայի տուն: Լրիվին կազմալուծվել էին ջրամատակարարումը, ջերմամատակարարումը և էներգամատակարարումը, ավերվել կոմունալ-կենցաղային նշանակության, տրանսպորտի ու կապի շատ օբյեկտներ, ինժեներական կառույցներ ու հաղորդակցության միջոցներ: Դադարել են գործել ավելի քան 170 արդյունաբերական ձեռնարկություն, մասնաճյուղ և արտադրական տեղամաս: Ամբողջությամբ վերցրած կորսվել են տարեկան 2 մլրդ ռուբլու արդյունաբերական արտադրանքի թողարկման կարողություններ, 82 հազար բանվորական աշխատատեղ: Հանրապետության ագրոարդյունաբերական համալիրի կորուստները կազմում են մոտ 1,9 մլրդ ռուբլի, լուրջ վնաս են կրել ավելի քան 300 խորհտնտեսություն և կոլտնտեսություն: Շարքից դուրս է եկել շինարարական ինդուստրիայի ձեռնարկությունների զգալի մասը: Ժողովրդական տնտեսության կրած ամբողջ վնասը կազմում է մոտավորապես 10 մլրդ ռուբլի: Ընդհանուր գծերով այսպիսին են երկրաշարժի հետևանքները:

Առաջին իսկ օրերին կազմավորված կառավարչական նոր կառուցվածքները հնարավորություն տվեցին օպերատիվորեն գործի դնել մարդկային և նյութական մեծ ռեսուրսներ և դրանք օգտագործել մարդկանց փրկության, ինչպես նաև վերականգնման աշխատանքների ծավալման նախապատրաստության համար: Ձեռնարկված օպերատիվ միջոցների շնորհիվ հաջողվեց փլատակներից հանել մոտ 16 հազար մարդ: Փրկարար աշխատանքների հետ մեկտեղ կազմակերպվեց տուժած շրջաններից երեխաների, կանանց և ծերերի անհապաղ էվակուացումը: Էվակուացվել է մոտ 120 հազար մարդ:

Անգնահատելի օգնություն ցույց տվեցին խորհրդային ռազմիկները, որոնք իրենց վրա վերցրին առաջնահերթ փրկարար աշխատանքների հիմնական ծանրությունը, ռազմափոխադրական և քաղաքացիական ավիացիան, երկաթուղայիններն ու բուժաշխատողները: Իրենց մարդասիրական մեծ ջանքերի համար ժողովրդի խոր երախտագիտությանն են արժանացել խորհրդային արհմիությունները, կոմերիտմիությունը, Վ. Ի. Լենինի անվան խորհրդային մանկական ֆոնդը, կարմիր խաչի և կարմիր մահիկի ընկերությունը: Առաջին իսկ օրերից ստացվեցին և բաշխվեցին ավելի քան 100 հազար վրան, հազարավոր փայտե տնակներ և վագոնատներ, մեծ քանակությամբ շինարարական տեխնիկա և մեքենաներ: Կազմակերպվեց սննդի և վառելիքի անվճար բաշխում: Ջրմուղ ցանցի, գազամատակարարման, կոյուղու, ճանապարհների և այլ ինժեներային կոմունիկացիաների վերականգնման ինտենսիվ աշխատանքներ էին տարվում:

Միութենական կառավարության ընդունած որոշմանը համապատասխան, տուժածներին վճարվում են միանվագ նպաստներ, փոխհատուցվում է կորսված ունեցվածքի, ավերված տների, այգետնակների, օժանդակ կառույցների, տրանսպորտային միջոցների, ինչպես նաև կոտորված անասունի արժեքը: Հարյուր հազարավոր քաղաքացիներ արդեն մոտ 950 մլն ռուբլու օգնություն են ստացել:

**— Լևոն Գուրգենի, ի՞նչ է բնորոշ վերականգնման աշխատանքների նոր փուլին, որո՞նք են դրա առանձնահատկությունները, ի՞նչ պետք է արվի առաջիկայում:**

— Մենք ձեռնամուխ ենք եղել բացառիկ կարևոր այնպիսի խնդիրների իրականացմանը, ինչպիսիք են տուժած շրջանների բնակիչներին աշխատանքով ապահովումը, ավերված քաղաքների, բնակավայրերի, ձեռնարկությունների ու կազմակերպությունների՝ աղետի գոտում երկրաշարժից առաջ գոյություն ունեցող արտադրության ծավալների վերականգնումն ու վերաստեղծումը:

Չափազանց դժվար ու ծանր խնդիր է ծառացած մեր առջև. ԽՍՀՄ մինիստրությունների ու գերատեսչությունների օգնությամբ 1989—1990 թվականներին պետք է իրացնենք ավելի քան 9 մլրդ ռուբլի կապիտալ ներդրումներ, վերականգնենք և կառուցենք 8 մլն քառակուսի մետր բնակտարածություն, 112 700 աշակերտական տեղով դպրոցներ, 48 100 տեղով մանկական նախադպրոցական հիմնարկներ, 6 700

մահճակալով հիվանդանոցներ, հերթափոխի ընթացքում 12 400 հաճախում կարողությամբ պոլիկլինիկաներ, արտադրական, գյուղատնտեսական, սոցիալ-կենցաղային մեծ թվով օբյեկտներ, հասարակական, վարչական և այլ շենքեր ու կառույցներ: Կուսակցության Կենտրոնական կոմիտեի և ԽՍՀՄ Մինիստրների խորհրդի ընդունած որոշումները, որոնք նախատեսում են երկրաշարժի հետևանքների վերացման կոնկրետ ծրագիր, դրա համար կազմակերպական և նյութատեխնիկական ռեալ հիմք են ստեղծել:

Աշխատանքը տարվելու է չորս հիմնական ուղղություններով. բնակարանների և սոցիալական ենթակառուցվածքի օբյեկտների շինարարություն, արդյունաբերության, ագրոարդյունաբերական համալիրի վերականգնում և վերակառուցում, ինչպես նաև աղետի գոտում կենսապահովության նորմալ գործող համակարգի ստեղծում:

Եղբայրական միութենական հանրապետությունների, Մոսկվայի և Լենինգրադի աշխատավորական կոլեկտիվների ուժերով կվերականգնվեն փաստորեն լիովին ավերված Լենինական, Կիրովական, Սպիտակ, Ստեփանավան քաղաքները, ինչպես նաև Ալավերդին, Արթիկը, Դիլիջանը, այլ քաղաքներ, շրջկենտրոններ ու ավաններ: Նրանք կկառուցեն չորս մլն քառակուսի մետր ընդհանուր մակերեսով տներ՝ սոցիալ-կուլտուրական և կոմունալ-կենցաղային նշանակության բոլոր օբյեկտներով հանդերձ:

Զգալի է միութենական մինիստրությունների, եղբայրական հանրապետությունների դերը երկրաշարժի հետևանքները վերացնելու գործում: Միայն Լենինականում աշխատում է ավելի քան 12 հազար մարդ Ռուսաստանի Ֆեդերացիայից՝ տարբեր մասնագիտությունների բանվորներ, և մոտ հազարն էլ զբաղված է նախագծային-որոնողական աշխատանքներում: Մոսկվայի և Լենինգրադի շինարարական կազմակերպությունները վերականգնում են քաղաքի առանձին շենքեր, հողային աշխատանքներ են կատարում № 58 միկրոշրջանի 100 հեկտար տարածքում, ուր 20 հազար բնակչի համար կկառուցվի 350 հազար քառակուսի մետր բնակմակերես՝ շենքերի և կառույցների լրիվ համալիրով: ՌԽՖՍՀ քաղաքացիական շինարարության արտադրական միավորումը և «Ալմաաթաբնակշին» տրեստը ընթացիկ տարվա արդեն առաջին կիսամյակում պետք է շահագործման հանձնեն 7,5 հազար քմ բնակտարածություն: Միկրոշրջանում աշխատում է ավելի քան 900 շինարար, գործի են դրվել ավելի քան 800 շինարարական մեխանիզմ, 700 բեռնատար ավտոմեքենա: Ռուսաստանի Ֆեդերացիայի շինարարների ուժերով քաղաքում արդեն տեղադրվել է 2 800 հավաքովի տնակ, կվերականգնվեն 13 հազար աշակերտական տեղով 23 դպրոց և 2,8 հազար տեղով 29 մանկապարտեզ: Սեպտեմբերի 1-ից պարապմունքների երկհերթ-եռահերթ ռեժիմով այս դպրոցներում կկարողանա սովորել 24 հազար աշակերտ: Քաղաքի գլխավոր զանգվածում, 500 հեկտար տարածության վրա, ՌԽՖՍՀ շինարարական կազմակերպությունների ուժերով կկառուցվի ավելի քան 1,5 մլն քմ բնակմակերես: Սպիտակ քաղաքի նոր տարածքում բնակելի շենքերի և սոցիալ-կենցաղային նշանակության օբյեկտների շինարարությունը կատարում են Ուզբեկստանի պատվիրակները, որոնք պետք է կառուցեն 170 հազար քմ բնակտարածություն և այլ օբյեկտներ: Իսկ Ուկրաինայից Կիրովական է ժամանել շինարարական գնացք՝ Սումիի «Սումարդշին» կոմբինատի և մարզային գյուղշինի 500 մասնագետներով, անհրաժեշտ սարքավորումներով, մեխանիզմներով, նյութերով: Կարճ ժամանակամիջոցում Սումիի շինարարները պետք է յուրացնեն մոտ 30 միլիոն ռուբլու կապիտալ ներդրումներ: Կկառուցվեն ավելի քան 20 հազար քմ բնակատարածություն, երկու միջնակարգ դպրոց, մանկապարտեզ, կուլտուրայի տուն, արտադրական շինություններ: Դոնեցկի մարզի Արտեմովսկի շրջանային գյուղշինի շինարարները Ղուկասյանի շրջանում վերականգնելու են Ղուկասյան ավանը և Սիզավետ ու Թավշուտ գյուղերը: Նրանք կկառուցեն բնակարաններ, դպրոցներ, մանկապարտեզներ, խանութներ, կընդլայնեն Ղուկասյանին ամենամոտ Բոգդանովկա երկաթուղային կայարանի գծային տնտեսությունը: Դա հնարավորություն կտա զգալիորեն մեծացնել շինարարների համար ստացվող բեռների ծավալը: 62 տուն, 50 տեղանոց մանկապարտեզ, այլ շինություններ շահագործման կհանձնեն այս տարի Ախուրյանի շրջանի Հայկավան գյուղում Դնեպրոպետրովսկի մարզային գյուղշինի մասնագետները: Նիկոլաևի մարզային գյուղշինի տնտհաշվարկային ջոկատի կոլեկտիվը կվերակառուցի Մեղրաշատ գյուղը, այն դարձնելով օրինակելի-ցուցադրական: Ուկրաինայի շինարարները այս տարի շահագործման կհանձնեն տուֆով երեսպատված 20 հավաքովի փայտե տուն, կկառուցեն կենցաղային համալիր: Լիտվայի և Բելոռու-



սիայի շինարարները Անիի շրջանում պետք է կառուցեն 65 հազար քմ բնակտարածություն, որից 25 հազարը՝ Անիպեմզա ավանում՝ հայ մասնագետների նախագծերով: Արագածի շրջանում աշխատում են գյուղշինարարներ Ղազախստանի մարզերից, իսկ Ախուրյանում ու Լենինականում՝ վրացական շինջոկատներ:

Ներկայումս, հաշվի առնելով սեյսմիկ միկրոշրջանացման քարտեզները, մշակվել են հանրապետության տուժած քաղաքների և շրջկենտրոնների գլխավոր հատակագծերի ուրվագծերը: Որոշվել են յուրաքանչյուր բնակավայրի առաջնահերթ կառուցապատման շրջանները այն տարածքներում, որոնց ինժեներաերկրաբանական և հիդրոերկրաբանական պայմանները առավել բարենպաստ են:

Մեզ անհրաժեշտ է երկու տարում տարերային աղետի գոտում նորից ստեղծել ավելի քան 100 հազար աշխատատեղ: ԽՄԿԿ Կենտկոմի և ԽՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշմամբ նախատեսվում է միայն միութենական մինիստրությունների և գերատեսչությունների ուժերով վերականգնել ու վերակառուցել ավելի քան 130 ձեռնարկություն, ինչպես նաև բնակելի շենքեր ու սոցիալական ոլորտի այլ օբյեկտներ, որոնց համար անհրաժեշտ կլինի առանձնացված միջոցներից յուրացնել մոտ 1,1 մլրդ ռուբլի կապիտալ ներդրումներ:

Ուզում եմ ընդգծել, որ լիովին ավերվածների փոխարեն նոր ձեռնարկությունների կառուցումը նկատի է առնվում իրականացնել գիտատեխնիկական առաջընթացի այսօրվա պահանջներին, սեյսմակայունության ապահովման անհրաժեշտ պայմաններին խստիվ համապատասխան, շինարարական թեթև կառուցվածքների լայն օգտագործմամբ: Արդյունաբերության վերականգնման ծրագրում հաշվի են առնված նաև հանրապետության արտադրողական ուժերի զարգացման ու տեղաբաշխման պրոբլեմների լուծման նկատառմամբ նոր մոտեցումները՝ կապված առանձին արտադրությունների վերապրոֆիլավորման հետ:

Հանրապետության կարևոր արդյունաբերական կենտրոնները՝ Լենինականը, Կիրովականը, Երևանը, գտնվում են առավել սեյսմիկ գոտում: Արդյունաբերական պոտենցիալի և ընդհանրապես քաղաքների վերականգնումն ու հետագա զարգացումը նկատի է առնվում իրականացնել այլ սկզբունքներով, քան մինչ այժմ էր: Ընդ որում, պահանջվում է հատուկ ուշադրություն նվիրել այն հանգամանքին, որ հանրապետությունը աշխատանքային ռեսուրսների զգալի ավելցուկ ունի: Աշխատունակ բնակչության 17 տոկոսը, իսկ դա կազմում է ավելի քան 350 հազար մարդ, զբաղված չէ հանրային տնտեսության մեջ: Բայց դա՝ մինչև երկրաշարժը: Հասկանալի է, որ այժմ վիճակն ավելի է սրվել: Այս կապակցությամբ արդյունաբերական օբյեկտների վերականգնման ու կառուցման բոլոր աշխատանքները պետք է իրականացվեն՝ հաշվի առնելով ավելի աշխատատար և պակաս էներգատար ու նյութատար արտադրությունների զարգացումը:

Վերականգնման աշխատանքների մեծ ծրագիր է նախատեսված հանրապետության ագրոարդյունաբերական համալիրում: Բավական է նշել, որ երկու տարում կկառուցվեն ավելի քան 2,2 միլիոն քառակուսի մետր բնակմակերես, տասնյակ հազարավոր տեղով գյուղական դպրոցներ ու մանկական նախադպրոցական հիմնարկներ, սոցիալական ոլորտի այլ օբյեկտներ: Ամենասեղմ ժամկետներում պետք է վերականգնվեն ու գործարկվեն մսի կոմբինատները, պանրի, հրուշակեղենի, ոչ ալկոհոլային խմիչքների արտադրության ձեռնարկությունները, սառցարանները, հացի ու պահածոների գործարանները և այլ օբյեկտներ:

**— Ներկայումս աղետի գոտու շինարարական համալիրում զբաղվածների թիվն ավելի քան 67 հազար է: Նրանցից բացի, ութ հազար մարդուց ավելի կա քաղաքացիական պաշտպանության միավորումներում: Աշխատանքներում ներգրավված են նաև արտասահմանցի տասնյակ մասնագետներ: Բավակա՞ն են, արդյոք, այդ ուժերը վերականգնման աշխատանքների համար:**

— Նախնական հաշվարկները ցույց են տալիս, որ շինարարական աշխատանքների ամբողջ ծրագիրն իրականացնելու համար քաղաքներում ու շրջկենտրոններում կպահանջվի ոչ պակաս, քան 100 հազար շինարար, իսկ գյուղական վայրերում՝ մոտավորապես 40 հազար: Այս ուժերը անհրաժեշտ է մոբիլիզացնել ինչպես Հայաստանում, այնպես էլ այլ միութենական հանրապետություններում, ժողովրդական տնտեսության ճյուղերում:

Պարզ է, որ այս որոշումներն ունեն վիթխարի սոցիալական ու ժողովրդատնտեսական նշանակություն: Սակայն պակաս մեծ չէ դրանց քաղաքական նշանակությունը, քանի որ որոշվում է հանրապետության մի խոշոր ռեգիոնի բախտը, ուր ապրում

է նրա բնակչության ավելի քան քառորդ մասը: Դա կենսական հարց է Հայաստանի, նրա ժողովրդի, նրա ապագայի համար: Ուստի և ամբողջ երկրի հոգսը դարձավ:

Վերականգնման աշխատանքների ողջ ընթացքում բացառիկ կարևոր, ես կասեի, որոշիչ նշանակություն է տրվում երկաթուղու, ամբողջ տրանսպորտի անխափան աշխատանքի ապահովմանը: Տարերային աղետից հետո առաջին իսկ օրերից կտրուկ մեծացավ բեռների և ուղևորների հոսքը հանրապետություն: Այն դեռ կմեծանա, և միայն երկաթուղով առաքված բեռների ծավալը կհասնի տարեկան 40—42 մլն տոննայի կամ կանի ավելի քան 2—3 անգամ:

Այսօր, ըստ էության, բնակչության բժշկասանիտարական սպասարկման նոր, ոչ պակաս կարևոր փուլ է սկսվել: Նկատելիորեն փոխվել է ընդհանուր իրավիճակը: Եթե սկզբնական շրջանում առավելապես վիրաբուժական, վնասվածքաբանական օգնություն էր ցույց տրվում, ապա այժմ գլխավորը պայքարն է մրսածության, վարակիչ և այլ հիվանդությունների դեմ: Ստուգվում է աղետի գոտու բոլոր բնակիչների առողջական վիճակը, յուրաքանչյուրը ստանում է անհրաժեշտ բուժօգնություն:

Երկրաշարժի ողբերգական հետևանքներից մեկը հաշմանդամների թվի զգալի ավելացումն է, որոնք կարիք ունեն թոշակային ապահովման, պրոթեզների: Հանրապետությունում արագ վերակառուցվում են համապատասխան ձեռնարկությունները, որտեղ կարտադրվեն փոխագուցավոր պրոթեզներ: ԽՄԿԿ Կենտկոմը և ԽՍՀՄ Մինիստրների խորհուրդը պաշտպանել են ԽՍՀՄ կարմիր խաչի և կարմիր մահիկի ընկերությունների միության, ինչպես նաև կարմիր խաչի ու կարմիր մահիկի ընկերությունների համաշխարհային լիգայի առաջարկությունը՝ հանրապետությունում կառուցելու ողնաշարի վնասվածքներով հիվանդների բուժման մասնագիտական կենտրոն և պրոթեզների արտադրության ձեռնարկություն:

**— Ինչպիսի՞ն է երկրաշարժից տուժած շրջանների ու քաղաքների պատմական ու մշակույթի հուշարձանների վիճակը:**

— Դրանք զգալի վնաս են կրել: 8461 հուշարձանից տուժել է 2338-ը, որից 155-ը ավերվել է լրիվին: Հանրապետության կառավարությունը արդեն քննարկել է աղետի գոտու պատմության ու մշակույթի հուշարձանների վերականգնման ու կոնսերվացման հարցը, վերականգնող կազմակերպությունների նյութատեխնիկական բազան հարստացնելու կոնկրետ օգնություն է ցույց տալիս. նրանց հատկացվել են մեխանիզմներ, սարքավորումներ, տրանսպորտային միջոցներ, նպատակահարմար է հուշարձանների վերականգնմանը ներգրավվել նաև արտասահմանցի մասնագետների: Օգնության մի շարք առաջարկություններ արդեն ընդունվել են: Այսպես, Իտալիայի տարբեր մարզերի պատվիրակություններ հանդես են եկել հուշարձանների վերականգնման համատեղ աշխատանքների կազմակերպման նախաձեռնությամբ: Իտալիայի կառավարությունը որոշել է սեփական ուժերով անհատույց վերականգնել Հայաստանի ճարտարապետական հուշարձաններից մեկը: Բացի այդ, վերականգնման նորագույն տեխնոլոգիաներին ծանոթանալու և հետագա համագործակցության համար Իտալիա են հրավիրվել սովետական փորձագետներ: Համանման առաջարկություններ են ստացվել Բուլղարիայից և այլ սոցիալիստական երկրներից:

Այցելելով աղետի շրջան, ՅՈՒՆԵՍԿՕ-ի փորձագետների հանձնաժողովը նախապատրաստել է համապատասխան նյութեր, որոնք ներկայացվելու են այդ կազմակերպության ղեկավարությանը: Հանձնաժողովի անդամները առաջարկում են 12 ճարտարապետական հուշարձանի վերականգնումը իրականացնել ՅՈՒՆԵՍԿՕ-ի անդամ երկրների հետ համատեղ, կազմակերպել հայ մասնագետների որակավորումը աշխարհի տարբեր երկրներում, ինչպես նաև Հայաստանին անհատույց տրամադրել անհրաժեշտ սարքավորումներ ու մեխանիզմներ:

**— Ընկեր Սահակյան, քանի որ Դուք արտասահմանյան օգնության հետ կապված առաջարկությունների քննարկման հանրապետական հանձնաժողովի նախագահն եք, խնդրում եմ ավելի մանրամասն պատմեք այդ օգնության մասին:**

— Անկեղծ երախտագիտություն ենք հայտնում մեր դժբախտությանը ջերմորեն արձագանքած բոլոր ժողովուրդներին, պետություններին, միջազգային կազմակերպություններին, արտասահմանյան ֆիրմաներին, տարբեր երկրների քաղաքացիներին: Նման լայն համերաշխությունը արդյունք է, նախ և առաջ, այն արտաքին քաղաքական կուրսի, որ վարում է կուսակցությունը 1985 թ. ապրիլից հետո, մեր երկրի անած միջազգային հեղինակության: Դա նոր քաղաքական մտածողության է գործողության մեջ, որը հիմնված է համամարդկային արժեքների գերակայության, անբաժանելի և փոխկախված աշխարհի իրողությունների նոր ըմբռնման վրա: Հենց վերակառուցման հսկայական հեղինակությունը կանխորոշեց Հայաստանի նկատմամբ



կարեկցանքի այդպիսի ջերմ ալիք: Ուզում եմ ընդգծել. միջազգային ընկերակցությունից մենք օգնություն չենք խնդրել, մոլորակի բոլոր կողմերից օգնության առաջարկություններ սկսեցին ստացվել անմիջապես, երբ աշխարհն իմացավ երկրաշարժի մասին: Եվ մենք, բնականաբար, չէինք կարող չընդունել այդ օգնությունը, թեև մեր երկիրը դժբախտությունն ինքնուրույն հաղթահարելու բավարար հնարավորություններ ունի:

Երկրաշարժի լուրն անսահման ցավով ընդունվեց արտասահմանի հայ գաղթօջախներում: Մեր հայրենակիցների սրտագին աջակցությունն ու ապրումները մենք ընկալում ենք որպես մայր հայրենիքին՝ Խորհրդային Հայաստանին նրանց ջերմ նվիրվածության արտահայտություն:

Եվ ընդհանրապես, պետք է նշեմ, որ արտասահմանյան օգնության վիճակագրությունը շատ դինամիկ է, փոխվում է ժամ առ ժամ: Ներկայումս, մեր տվյալներով, Հայաստանին օգնում են ավելի քան 100 պետություն և մի շարք միջազգային կազմակերպություններ: Մենք պետությունների միջև տարբերություն չենք դնում ըստ փոխանցված միջոցների չափի, գլխավորը կարեկցանքն է: Այդ երկրների թվում են սեփական բարդ պրոբլեմները լուծող աղքատ պետություններ, նույնիսկ այնպիսիք, որոնց հետ Խորհրդային Միությունը դիվանագիտական հարաբերություններ չունի:

Աղետի գոտում առաջին իսկ օրերից բոլոր միութենական հանրապետությունների պատվիրակների հետ ուս-ուսի անձնվիրաբար աշխատում էին հազարավոր օտարերկրացիներ՝ փրկարարներ, բժիշկներ, հրշեջներ, երկրաշարժագետներ...

Ավերված բնակավայրերի վերականգնմանը այլ երկրների մասնակցության շուրջ բանակցությունները առայժմ տարվում են առավելապես անվարձահատույց օգնության շրջանակներում կատարվելիք աշխատանքների կապակցությամբ: Զուգահեռաբար ԳՖՀ-ի, Ճապոնիայի, Իտալիայի, Ֆրանսիայի, ԱՄՆ-ի և այլ երկրների մի շարք ֆիրմաների հետ բանակցում ենք համատեղ նախագծերի վերաբերյալ, որոնք կիրականացվեն կոմերցիոն հիմունքներով:

Ընդհանուր առմամբ Հայաստանում աշխատել է մոտ 3,6 հազար արտասահմանցի մասնագետ, շատերն այսօր էլ գտնվում են հանրապետությունում:

Երկրաշարժի հետևանքների վերացման երկրորդ փուլին՝ վերականգնման աշխատանքներին անցնելու կապակցությամբ առանձնապես կարևորվում է արտասահմանյան երկրներից, ֆիրմաներից, միջազգային կազմակերպություններից ստացվող օգնության առաջարկությունների առանց ձգձգման քննարկումը: Առ 15-ը մարտի ԽՍՀՄ արտաքին տնտեսական բանկի հաշվին է փոխանցվել շուրջ 20 միլիոն արտասահմանյան վալյուտային ռուբլի, որը, ԽՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշմամբ, հանձնվել է հանրապետության կառավարության տնօրինությանը: Մեր խնդիրն է, միավորելով ուժերը, առավելագույն հատույցով օգտագործել հավաքված ամբողջ դրամը և ապրանքանյութական արժեքները՝ տեխնոլոգիաների, սարքավորումների, բուժախտորոշիչ հիմնարկների, շինինդուստրիայի օբյեկտների, թեթև, սննդի, բժշկական ու վերամշակող արդյունաբերության ձեռնարկությունների տեսքով: Ներկայումս շատ առաջարկություններ քննարկվել են, որոշվել են կոնկրետ կազմակերպություններն ու նրանց գործունեության շրջանները:

Մինչև հիմա 44 արտասահմանյան երկրից Հայաստան է ժամանել 400 ինքնաթիռ: Մեր հանրապետության համար արտասահմանից օգնություն են հասցրել նաև 6 օտարերկրյա և 44 խորհրդային նավ, մոտ 500 բեռնատար ավտոմեքենա: Ստացել ենք փրկարար, հրշեջ, շինարարական տեխնիկա, դաշտային հոսպիտալներ, բուժսարքավորումներ ու դեղորայք, վրաններ, տնակներ, տրանսպորտի և կապի միջոցներ, հագուստ, սննդամթերք:

Չի իջնում գթասրտության և հայ ժողովրդի հետ համերաշխության ալիքը: Մարդասիրությունն ու անշահախնդիր օգնությունը դրսևորվում են իրենց ողջ խորությամբ: Անընդհատ Երևան են հասնում Հայաստան ուղարկվող բեռների մասին հեռագրեր: Ուրուգվայից Լենինգրադ է ժամանել «Վլադիմիր Իլյիչ» բեռնանավը, որը կրում է երկու տոննա ալյուր և մեկ տոննա չոր կաթ: Դա Ուրուգվայի կառավարական օգնության երկրորդ խմբաքանակն է: Ուղարկվել է նաև տեղի հայկական համայնքի կողմից հավաքված հագուստ: Նյու Յորքից ելած «Ուլան Բատոր» ջերմանավով ամերիկյան «Ֆլիթսթրիթ» և «Ուոլդ վայդ վելդինգ կո» ընկերությունները երկրաշարժից տուժածներին են ուղարկել մեկ կոնտեյներ տաք վերարկու և էլեկտրապլազմային եռակցող մեքենա: Մեկ այլ նավ Բոստոնից բերել է 200 տոննա դեղորայք և հագուստ: «Մուրման մանյուֆեքչուրս» ֆիրման պատրաստ է ուղղակի Հայաստան առաքել սառնարանային պահպանում չպահանջող 500 տոննա երշիկեղեն: Իլ—62

ինքնաթիռով Սան-Ֆրանցիսկոյից Մոսկվա են հասցվել դիալիզի 14 մեքենա, բժշկական սարքավորումներ, նարկոզի և ներերակային ներարկման պրեպարատներ, ձեռքի և ոտքի պրոթեզներ: Վերջերս Հայաստան այցելեցին շվեյցարական հայտնի «Միտկո ինտերնեշնլ» ֆիրմայի պրեզիդենտ Սիլվանո Տոդարոն և ֆիրմայի դիրեկտորների խորհրդի անդամ Ջուլիանո Բեզանան: Երկրաշարժից հետո առաջին օրերին ընկերությունը մեծապես օգնեց դեղորայքով, բժշկական սարքավորումներով, շինարարական տեխնիկայով: Շվեյցարացի բիզնեսմենները հանրապետության կառավարության հետ քննարկեցին մեզ մոտ շինինդուստրիայի, թեթև, սննդի և վերամշակող արդյունաբերության ձեռնարկություններ ստեղծելու մի շարք փոխշահավետ առաջարկություններ: Քննարկվեցին նաև Հայաստանի բնական քարերի՝ մարմարի, գրանիտի, ուրիշ ոչ հանքային հանածոների արդյունահանման, վերամշակման, արտադրության և իրացման համատեղ ձեռնարկությունների հիմնադրման հարցեր:

Ֆրանսիայի «ՍՈՍ-Հայաստան» հասարակական բարեգործական կազմակերպության ներկայացուցիչները, ընդունվելով հանրապետության կառավարության կողմից, հայտնեցին, որ իրենց այցի նպատակը երկրաշարժից տուժածներին ցույց տրված նախնական օգնության արդյունքների ամփոփումն է և կազմակերպության աշխատանքի երկրորդ փուլի՝ տարերային աղետի գոտում ձեռնարկությունների ստեղծմանն անմիջականորեն մասնակցելու հետ կապված հարցերի քննարկումը: «ՍՈՍ-Հայաստան»-ը իր մարդասիրական գործունեության ոլորտն է ընդգրկել Ֆրանսիայի 30, Բելգիայի երկու քաղաքի, ինչպես նաև Իտալիայի և Շվեյցարիայի հայկական համայնքերն ու հայ եկեղեցին: Կազմակերպության անդամները որոշել են Սպիտակ քաղաքում և շրջանում հիմնել տրիկոտաժի, կարի, կոշիկի, փայտամշակման ոչ մեծ ձեռնարկություններ, դրանք հագեցնել անհրաժեշտ սարքավորումներով, գործուղել տեխնոլոգիական գծերի և մեքենաների տեղակայման, կադրերի ուսուցման մասնագետների: Համանման առաջարկներով մեզ են դիմել Կանադայի, ԱՄՆ-ի և այլ երկրների հայերը:

Խորհրդային Հայաստանի կառավարությունը բարձր է գնահատում սփյուռքահայության հայրենասիրական զգացմունքները, մայր հայրենիքին սատար կանգնելու հետևողական գործնական աշխատանքը և, իր հերթին, պատրաստ է աջակցելու «ՍՈՍ-Հայաստան»-ի բարի գործերին: Առաջարկվող արդյունաբերական օբյեկտների համար հանրապետությունը կկառուցի անհրաժեշտ շենքեր: Կողմերի փոխադարձ համաձայնությամբ, սարքավորումներ ընտրելու և դրանց տեղափոխումը կազմակերպելու համար Ֆրանսիա կմեկնեն հայ մասնագետները:

Այժմ Սպիտակում կառուցվում է այսպես կոչված «իտալական գյուղը»՝ 200 քոթեջ՝ տնային անհրաժեշտ կահ-կարասիով, ինքնասպասարկման լիովին ինքնավար համակարգով: Դա իտալական կառավարության և Իտալիայի կազմակերպությունների նվերն է տարերային աղետից տուժածներին: Նորվեգիայի կարմիր խաչի ընկերությունը պատրաստի փայտե կոնստրուկցիաներից Սպիտակում կկառուցի հիվանդանոց: Հողատարածքն արդեն հատկացվել է: «Ֆինլանդիա—ԽՍՀՄ» բարեկամության ընկերությունը, բարեկամության խորհրդային ընկերությունների միության և խորհրդային մանկական ֆոնդի բաժնեհաս մասնակցությամբ, ինչպես նաև Իտալիայի և ԳՖՀ-ի ֆիրմաները Հայաստանի համար նվիրատվության կարգով կկառուցեն 300 տեղանոց ռեգիոնալ վերականգնողական կենտրոն՝ պոլիկլինիկայով, լողավազանով, այգիով: «Բեռլինի օգնությունը Հայաստանին» աշխատանքային խումբը Լենինականին է նվիրել երեխաների և հղի կանանց համար նախատեսված, հազար քառակուսի մետր ընդհանուր մակերեսով պոլիկլինիկա, որը կառուցելու և կահավորելու են գերմանացի մասնագետները:

Վերջում ուզում եմ ընդգծել, որ հայ ժողովուրդը երախտագիտության խոր զգացումով է ընկալում հանրապետությանը ցույց տրվող օգնությունը, անկեղծորեն շնորհակալ է բոլոր նրանց, ովքեր ուժերի ներածին չափով ավանդ են բերում երկրաշարժի հետևանքների վերացմանը հայոց հինավուրց հողում:

Գրի առավ **Ռ. ԿԱՐԱԳՅՈԶՅԱՆԸ**



# ՔՈ ՕՋԱԽԸ ԵՎ ՄԵՐ ԸՆԴՀԱՆՈՒՐ ՏՈՒՆԸ

## (ԱԶԳԱՅԻՆ ԲՆԱՎՈՐՈՒԹՅԱՆ ՊՐՈԲԼԵՄԸ ԳՐԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՄԵՋ)

**Ե. ԱԼԵՔՍԱՆՅԱՆ**

ՄԵՐ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ հեղափոխական վերափոխումների երկար սպասված ժամանակը, որ վերջապես եկավ և, բնականաբար, առաջացրեց նաև ազգային ինքնագիտակցության աննախընթաց վերելք, լույս սփռելով մեր բազմազգ երկրի ազգային հարաբերություններում եղած թե՛ դրական, թե՛ բացասական կողմերի վրա, օգնեց բացահայտելու «շքեղ ճակատի» հետևում թաքնված հակասությունները, մերկացրեց «նեգատիվ երևույթներն ու ձևախախտումները»: Այդ մասին արդարացիորեն խոսվեց տակավին երկու տարի առաջ՝ ԽՄԿԿ Կենտկոմի 1987 թ. հունվարյան պլենումում և է՛լ ավելի մեծ անհանգստությամբ վերջերս՝ գիտական ու ստեղծագործական մտավորականության հետ Մ. Ս. Գորբաչովի ունեցած հանդիպման ժամանակ, քանզի այդ ժամանակաշրջանում հայտնի իրադարձություններ տեղի ունեցան մի շարք ազգային հանրապետություններում և, ամենից առաջ, Լեռնային Ղարաբաղում, որոնք նոր մտածողությամբ խոր իմաստավորման կարիք ունեն:

Փորձել նոր պրոցեսների իրողությունը խցկել անդեմ ինտերնացիոնալ միասնության շաբլոնի մեջ, ինչպես այդ արվում էր առաջ, կնշանակեր հեռանալ ժամանակակից հասարակության բարոյական օրգանիզմում առկա ազգայինի և ինտերնացիոնալի փոխգործողության բարդ մեխանիզմն ավելի կատարյալ ուսումնասիրելու անհրաժեշտությունից: Հասարակություն, որտեղ քաղաքական և սոցիալական կլիմայի ամեն մի տատանում, շեշտադրումների ամեն մի, նույնիսկ հազիվ նշմարելի տեղափոխություն հղի են հոգևոր կյանքի ամենածանր ձևախեղումներով:

Ինտերնացիոնալիզմի բուն էությունը հասկանալու անհրաժեշտությունը, առանց այն ապազգայնացմամբ փոխարինելու և, մյուս կողմից, առանց ազգայինը բացարձակ դարձնելու, պարզելով մշակույթների մերձեցման, ինտեգրացման պրոցեսի արգասավորությունն ու բնահատկությունը, վերաբերում է նաև գրականությանը, որպես խոսքով արտահայտված ժողովրդական կենդանի ոգու առանցքակետի: Այս տեսակետից ևս բազմազգ սովետական գրականությունը հենց այնպիսի մի եզակի հոգևոր ֆենոմեն է, որի մեջ հավասարապես ուժեղ են կենտրոնախույս և կենտրոնաձիգ միտումները: Իսկ սովետական ազգային գրականությունների բնահատուկ փոխներգործությունն ու փոխազդեցությունը ոչ միայն չեն խախտում ազգային գեղարվեստական հիմքերը, այլ, ընդհակառակը, նպաստում են նրանց փոխհարստացմանը: Որպեսզի չընկնենք ազգային պատվասիրությունների ծայրահեղությունների մեջ, իսկ մյուս կողմից, չհամահարթենք ազգային-առանձնահատուկը, որպեսզի ժամանակակից հումանիստական գիտակցության մակարդակով պարզենք սեփական լումայի նշանակությունը բազմազգ գեղարվեստական փորձի գանձարանում, մեր կարծիքով, պետք է կոնկրետ ուսումնասիրել, այլ ոչ թե հռչակել առանձին ազգային գրականությունների յուրահատկությունը, ազգային գեղարվեստական գիտակցության ինքնօրինակ էությունը: Իհարկե, այստեղ պետք է հիշել, որ սեփականի ու համամարդկայինի կապը հետզհետե ավելի է խորանում և ավելի շոշափելի դառնում:

Գրականության ազգային յուրահատկության պրոբլեմի նկատմամբ եղած հայացքների հիմքում ընկած են ազգայինի պատմականությունն ու սոցիալական էությունը՝ ինտերնացիոնալի հետ նրա ունեցած դիալեկտիկական կապի մեջ: Լենինը հատկապես նշում էր «մարդկության» դիֆերենցումը» հոգեկան կյանքի... հարստության և բազմազանության իմաստով» (ԵԼԺ, հ. 26, էջ 342): Առաջնորդվելով ազգայինի

*ԱԼԵՔՍԱՆՅԱՆ ԷԼԵՆԱ ԱՇՈՏԻ— Հայկական ԽՍՀ ԳԱ Մ. Աբեղյանի անվան գրականության ինստիտուտի գրական կապերի բաժնի վարիչ, բանասիրական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր:*

պրոբլեմի նկատմամբ մարքսիստական մոտեցմամբ, ժամանակակից սոցիոլոգները, փիլիսոփաները, հոգեբանները ձգտում են տալ տեսական ու մեթոդաբանական ճիշտ հանձնարարականներ, որոնք օգնում են գրականագետներին՝ կողմնորոշվելու ազգայինի և ինտերնացիոնալի փոխգործողության ու փոխհարստացման բարդ ոլորտում: Այդ նորարարական պրոցեսներն ընկած են բազմազգ խորհրդային գրականության գեղարվեստական ֆենոմենի հիմքում, որի մասին նախանշել էր դեռ Ա. Մ. Գորկին գրողների համամիութենական առաջին համագումարում. «Մեր բոլոր հանրապետությունների բազմազգ, բազմալեզու գրականությունը հանդես է գալիս որպես միասնական ամբողջություն...» (А. М. Горький. Собр. соч., М., 1953. т. 27 ,с. 296):

Գրականությունների ազգային զարգացման ինչպես յուրօրինակությունը, այնպես էլ ինտեգրացման և միասնականացման միտումները բացարձակացնելու ձգտումը նկատվում էր և՛ արտասահմանյան, և՛ սովետական գրականագիտության մեջ: Այսպես, սխալ մեկնաբանելով յուրաքանչյուր ազգային մշակույթի մեջ երկու մշակույթների մասին լենինյան տեսությունը, 30—40-ական թվականների մեր որոշ վայ քննադատներ, որոնք հաճախ քաղաքական «եղանակ» էին ստեղծում, փորձում էին ընդհանուր դեմոկրատական գրական շարժումից կտրել ազգային-ազատագրական գաղափարներ դավանող դասական գրողների ստեղծագործությունը: Հայաստանում այդպիսի կոպիտ նշավակման էին ենթարկվել Ռ. Պատկանյանը և Րաֆֆին, որոնք ոչ միայն առավել խոր ու լրիվ էին արտահայտում ժողովրդի ազգային ինքնագիտակցության վերելքը, այլև իրենց ստեղծագործությամբ խթանում էին նրա հոգևոր հասունացումն ու ինքնահաստատումը:

«Ժամանակի ընթացքում,— գրում էր Յու. Վեսելովսկին,— հայ գրողների բոլոր ամենանշանավոր ստեղծագործությունները, իհարկե, կթարգմանվեն ռուսերեն, և կարդալով այդ ազնիվ էջերը, որոնք շնչում են հայրենիքի ջերմ սիրով և դրա հետ մեկտեղ նրանց խորթ է նեղ հայրենասիրությունը, ռուսական հասարակությունը կզգա եվրոպական այն հասարակության մեծագույն մասի անսիրտ անտարբերության... ողջ անարդարացիությունը, որը երկու և կես միլիոն կուլտուրական քրիստոնյաներին հանձնում է անկիրթ ու անողոք ժողովրդի ձեռքը» («Армянские беллетристы», т. I, М., 1893, с. 103—104):

Գրականության ազգային յուրահատկության ու նրա ինտեգրացիոն էության, գեղարվեստական համակարգերում ազգայինի, ինտերնացիոնալի, համամարդկայինի փոխգործողության բարդ պրոբլեմների ավելի ու ավելի խոր իմաստավորման տեսակետից ուշագրավ են սովետահայ մեծ բանաստեղծ Եղիշե Չարենցի տեսական դիրքորոշումն ու բուն ստեղծագործությունը, որը, ինչպես հայտնի է, նույնպես ճաշակել էր հարազատ ժողովրդի մշակույթից երկար ժամանակ վտարված գրողների դառը ճակատագիրը. զարմանալի՜ օրինաչափություն: Հանճարի մտքի պայծառացմամբ միայն կարելի է բացատրել ազգային գրականությունների փոխհարստացման նոր պրոցեսի կանխարկումը նրա կողմից, նրանց մեկուսացված, անջատ-անջատ գոյության անհնարինության ըմբռնումը, ասենք նաև փոխհարստացում տերմինի կիրառումը գրական տեսության ոլորտում: Հիշեցնենք նրա կրքոտ հարձակումը ուղղված գրական հերմետիզմի դեմ: «Ես ևս, որպես հայ գրող,— ասել է Չարենցը սովետական գրողների առաջին համագումարում արտասանած ճառում,— պատկանում եմ «փոքր» ազգության և գիտեմ, որ եթե իմ ստեղծագործական գործունեությունը հոգեբանորեն սահմանափակեմ ազգային ներփակված շրջանակներում, ապա շատ ողորմելի կլինի նրա դիապազոնը և ազդեցության ոլորտը: Ես երջանիկ եմ և զգում եմ ինձ մարդկության ամենաառաջավոր հոսանքի մասնիկը շնորհիվ այն բանի, որ Հոկտեմբերյան հեղափոխությունը վերացրել է իմ հոգևոր տեսադաշտից ազգային ինքնասահմանափակումների այդ ողորմելի ցնորքը» (Երկերի ժող., ՀՍՍՀ ԳԱ հրատ., 1967, հ. 6, էջ 272): Յուրաքանչյուր ազգային մշակույթի մեջ շեշտը դնելով առաջադիմականի, ժողովրդականի վրա՝ Չարենցը գտնում էր, որ առանձին ազգային մշակույթների փոխգործողության պրոցեսում է միայն լավագույնս դրսևորվում սեփական, ազգային-յուրահատուկը, ընդսմին շարունակ հարստանալով իր հոգևոր փորձով:

Վաղուց, դեռ 30-ական թվականներին որոտացին Չարենցի ու նրա համախոհների բուռն մարտերը դոգմատիկների ու արվեստը գռեհկացնողների դեմ, որոնք իբր պրոլետարական գրականությունը պաշտպանում էին «ազգային յուրահատկության» նախանձախնդիրներից, որոնց նմանները շատ էին ռուսական, ուկրաինական, վրացական և այլ գրականություններում: 40-ական թվականներին բանավեճեր տեղի ունեցան ուրիշ, թվում էր, թե ավելի տեղային պրոբլեմների շուրջը, ինչպիսիք



էին, օրինակ, համամիութենական բանավեճը պատմավեպի մասին, որը նույնպես հիմնովին ու գռեհկորեն շոշափում էր ազգայինի պրոբլեմը: Քանիցս կասկածի տակ է դրվել անգամ բուն ազգային լեզուների գոյության տևողության հարցը, երբ, իբր, նշմարելի էր դարձել լեզվական ասիմիլացման պրոցեսը: Բոլորովին վերջերս, մշակույթի գործիչների հետ ունեցած հանդիպման ժամանակ Մ. Ս. Գորբաչովը հիշեցրեց կուսակցության ներկայումս գործող ծրագրի մեջ ազգերի միաձուլման գաղափարն անցկացնելու ռեալ գոյություն ունեցած սպառնալիքի մասին: Ազգային ինքնատիպության, այդ թվում և արվեստի յուրօրինակության դեմ կատարվող հարձակումների թվարկումը կարելի է շարունակել:

Մեր փոքրիկ էքսկուրսը ոչ միայն հիշեցնում է վաղ և ոչ վաղ անցյալի սխալներն ու մոլորությունները, այլև վկայում է խնդրո առարկա պրոբլեմի բարդությունը, գիտական կողմնորոշիչների անհամոզչությունն ու երերունությունը, սովետական գրականության բազմազգ գեղարվեստական օրգանիզմում տեղի ունեցող պրոցեսների ուսումնասիրմանը նորից ու նորից վերադառնալու անհրաժեշտությունը:

Դեռ Բելինսկին էր ազգայինը արվեստի մեջ համարում «իրերը հասկանալու եղանակ»: Բանաստեղծական ընկալման և աշխարհազգացողության այդ եղանակը, յուրատեսակությունը կապված են ամենից առաջ ազգային կյանքի հասկացության հետ, որը այն կազմող բաղադրամասերի մեջ որոշակիությամբ հանդերձ ինչ-որ անփոփոխ, ստատիկ բան չէ, քանի որ պայմանավորված է ամբողջությամբ վերցրած հասարակական կեցության փոփոխությամբ: Ընդունված է համարել, որ ազգային կյանքի յուրատեսակություն ասելով պետք է հասկանալ նաև ժողովրդի ազգագրական առանձնահատկությունները, պատմությունը, նրա սոցիալ-դասակարգային պայքարի՝ ժառանգություն ստացած ավանդույթները, ինքնագիտակցության և հոգեբանության զարգացման բնորոշ հատկանիշները: Իր ազգային կյանքի այդ բոլոր առանձնահատկությունները, որոնք կարծես ծածկագրված են արվեստագետի աշխարհազգացողության ու անհատական հոգեբանության մեջ, յուրօրինակ կերպով արտահայտվում են ստեղծագործության կերպարային համակարգի ստեղծման, գրողի իրականության կոնցեպցիայի, նրա գեղարվեստական աշխարհի սկզբունքներում: Ուստի բացառիկ կարևոր իմաստ է ստանում գեղարվեստական կերպարի կամ ազգային բնավորության ազգային-յուրահատուկ հիմքի իմաստավորումը, որտեղ զուգակցվում են ժողովրդական կյանքի ավանդույթները, նրա բարոյական ու գեղագիտական նորմերը, ազգի հոգևոր փորձը: Այդ փորձի մեջ ամրագրված են գեղեցիկի իդեալները, որոնք գալիս են բանահյուսական պատկերացումներից, ազգի պատմական կեցությունից և բնական իրողություններից: Մյուս կողմից, ազգի հոգևոր փորձը իր մեջ ներառում է համամարդկային գաղափարներն ու ուրիշ ազգերի փորձը, վերափոխվելով ու դառնալով ազգայինի ու ինտերնացիոնալի մի համաձուլվածք, որի բաղադրիչ տարրերը երբեմն դժվար է տարբերակել: Պատմական կյանքի, հեղափոխական պայքարի ընդհանրությունը, հոգևոր նորացման և ժողովրդական իդեալի, սոցիալիստական ապրելակերպի միտումները, այս ամենը նպաստում է ազգային գրականությունների է՛լ ավելի մերձեցմանը, ազգայինի ու ինտերնացիոնալի է՛լ ավելի օրգանական զուգակցմանը: Սակայն ազգային գեղարվեստական համակարգերի տիպաբանական քննադատման արդյունավետությունը հենց նրանց ազգային յուրօրինակ գեղարվեստական պրակտիկան բացահայտելու մեջ է, որը իր նորամուծություններով հարստացնում է ողջ սոցիալիստական գրականությունը:

Հայ գրականության հոգևոր հիմքը հասկանալու, նրա անկրկնելի երանգը զգալու, նրա պաթոսով համակվելու համար պետք է հիշողության մեջ վերականգնել հինավուրց ժողովրդի պատմությունը, ազգի բազմադարյա, ողբերգական կատակլիզմներով, վտարանդիություններով լի, գոյապահպանման ու մշակույթի պահպանման համար մղած պայքարի պատմությունը, իր փրկության, արդարության հաղթանակի, հարազատ մշակույթի նկատմամբ ունեցած անսահման սիրո մասին ռոմանտիկական երազանքի պատմությունը, մշակույթ, որը պետք է օգներ նրան պահպանելու իր ազգային պատկանելությունը, հոգեպես ու ֆիզիկապես գոյատևելու: Պետք է հիշել նրա գաղթականների թափառական գողգոթան, անվերադարձ կորցրած հայրենիքի նկատմամբ ունեցած հայրենաբաղձությունը, այդ հիմքի վրա ձևավորված նրա բարոյական մտահորիզոնն ու բարոյական արժեքների համակարգը: Եվ այդ ժամանակ հասկանալի կդառնա, թե ինչու մեր գրականության մեջ այդքան հերոսականորեն ու ողբերգականորեն է հնչում պատմության ահազանգը, թե ինչու ճամփաների ու տան թեման այնքան խորհրդանշական բովանդակություն է ստանում և որքան ուժեղ է դրա մեջ քնարական-ռոմանտիկական շունչը:

Պատմական հիշողությունը յուրաքանչյուր ազգի գեղարվեստական գիտակցության անկապտելի հատկությունն է: Ակադեմիկոս Դ. Լիխաչովը իրավացիորեն հիշողությունը համարում է «այն մեծագույն հիմքերից մեկը, որի վրա խարսխվում է մշակույթը» (Искусство памяти—память искусства. Прошлое—будущему. Л., 1985, с. 64):

Հայ գրականության մեջ պատմության հիշողությունը, թերևս, առանձնապես ուժեղ է ապրած ցեղասպանության անմխիթար ցավով, պատմական Հայաստանի տարածքի կորստյամբ, տարանջատված, միասնական հայրենիքից զրկված ժողովրդի հազվադեպ ողբերգականությամբ լի ճակատագրով:

Հենց պատմական հիշողության հրամայականի շնորհիվ էլ մեր «Սասունցի Դավիթ» էպոսում արտակարգ ուժեղ է արարման գաղափարը, որը շատ բնորոշ է հայկական ժողովրդական գիտակցությանը և առկա է նրա բոլոր մակարդակներում, ինչպես, օրինակ, «Ասք Իգորի ճակատամարտի մասին» էպոսում միասնության գաղափարը: Այստեղից էլ, եթե կարելի է այսպես արտահայտվել, էպոսի հակաագրեսիվականությունը, չնայած նրա դյուցազուն հերոսների և ամենից առաջ հենց իր՝ Սասունցի Դավթի խիզախությանն ու հաղթությանը: Վիպական այս հերոսի քաջությունն ու ուժը թշնամու, օտարի ունեցածի ոչնչացմանը չեն ուղղված: Նա, ելնելով սեփականը պաշտպանելու պահանջմունքից, ձգտում է պաշտպանել իր ժողովրդին, իր հայրենիքը:

Ժողովրդի, ինչպես և նրա բանաստեղծի համար կարևոր էր հասկանալ, թե ինչ սկզբունքներ են գերակշռում հերոսի մեջ, որպեսզի հավատա նրան ու մեծարի: Ազգային բնավորության գեղարվեստական մարմնավորման տեսակետից մեզ համար հետաքրքրական են Իսահակյանի խորհրդածությունները Աբու-Լալա-Մահարիի կերպարի մասին, որոնք բացահայտում են բանաստեղծի աշխարհընկալման պայմանավորվածությունը նրա ժողովրդի պատմական հիշողությամբ: Հայտնի է, որ, ստեղծելով իր նշանավոր պոեմը արաբ բանաստեղծի մասին, որն ուղղված է աշխարհի անարդարության ու չարիքի դեմ, Ավ. Իսահակյանը գտնվում էր Նիցշեի «Զրադաշտի» որոշ ազդեցության տակ: Սակայն նրա փիլիսոփայության մարդատյաց բնույթը, բռնության ու գերմարդու ջատագովությունը խորթ էին հայ բանաստեղծին, որը երևում է բուն պոեմից ու արևի փառաբանությունից, որպես ճշմարտության ու բարու մարմնավորման, աշխարհի ու մարդկության բոլոր չարիքների ու անարդարությունների դեմ ուղղված նրա կրքոտ խոսքերից:

Ժամանակակից հայ գրականության մեջ ազգային բնավորության պրոբլեմն ստանում է սոցիալական նոր բովանդակություն և բարոյական պարամետրեր: Գրականության ավանդույթները, ժամանակակից աշխարհըմբռնման դիրքերից ժողովրդի ճակատագրի իմաստավորումը, համամարդկային գեղարվեստական փորձը իրենց սինթեզի մեջ տալիս են ազգային բնավորության ըմբռնումը՝ ազգային կյանքի ու անձի կեցության գծերի ողջ յուրօրինակությամբ: Գեղարվեստական ավանդույթի դերը հատկապես շոշափելի է ժամանակակից գրականության կողմից հայրենասիրական պրոբլեմատիկայի անսպառ նյութը մշակելու ժամանակ: Վերջինս հայ գրականության մեջ ամուր կապված է հայրենիքի կորստյան հայրենաբաղձական մոտիվի հետ: Թերևս, աշխարհում ոչ մի գրականության մեջ այդքան չի գերակշռում ազգի տարանջատվածության մոտիվը և տնից զրկված պանդուխտի կերպարը այնքան համապարփակ չի դառնում, թե՛ արձակում, թե՛ պոեզիայում:

Ազգային ինքնաճանաչման բուն պրոցեսը հասկանալու համար անչափ օգտակար է խորամուխ լինել ժողովրդի պատմության մեջ, քանի որ պատմական իրողություններին դիմելը դարձյալ կարևոր չափանիշներ է բացում կամ հաստատնում ժամանակակից աշխարհըմբռնման ու աշխարհզգացողության խնդրում: Դա նախ և առաջ վերաբերում է մարդու և ժողովրդի մեջ հայրենասիրական զգացմունքի ձևավորմանը, գրականության այդ առաջատար, և, ժողովրդական բնավորության մեջ ազգայինի ըմբռնման համար, թերևս, առանցքային պրոբլեմին: Այս խորհրդածությունների համատեքստում առանձնահատուկ տեղ է գրավում Խ. Դաշտենցի «Ռանչպարների կանչը» վիպասքը, մի ստեղծագործություն, որը հիրավի եզակի է իր յուրօրինակությամբ և հայրենասիրական գաղափարի հնչեղության ուժով: Դիմելով պատմության ամենահիվանդագին կետերից մեկին՝ սուլթանական Թուրքիայի դեմ ժողովրդի մղած պայքարին, ֆիդայիների շարժմանը, ընդհանուր առմամբ հայ կյանքի բեկումնային պահին, երբ լուծվում էր մեր ազգի լինել-չլինելու հարցը, Դաշտենցն իր գրքի գեղարվեստական աշխարհը ձևավորել է ժամանակակից էպոսի օրենքներով:



Ազգի կեցությունը գրքում վերարտադրվում է որպես ժողովրդի կոլեկտիվ հուշ ոչ վաղ անցյալի ողբերգական օրերի մասին, որպես ժամանակակից արվեստագետի ստեղծած զրուցավեպ հերոսների մասին: Ստեղծելով իր ազգային էպոսը, Դաշտենցը ժողովրդի հոգևոր կեցության պրոբլեմները բարձրացնում է նրա պատմության ամենաճգնաժամային պահերից մեկում: Անլուր այն փորձությունները, որ ճակատագիրը պատրաստել էր նրա համար, անբուժելի ցավ ու դաժան սպիներ էր թողել ազգի սրտին: Բայց դրանք անընկճելի դարձրին ժողովրդի ոգին, կոփելով նրա կենսասիրությունն ու կենսատոկունությունը:

Վեպում կան առանձին հերոսներ. դրանք են առասպելական զորավար Անդրանիկն ու փառապանծ Սմբատ փաշան, ինչպես նրան անվանում էին, Մախլուտոն: Եվ այնուհանդերձ ստեղծագործության իսկական հերոսը հայ ժողովուրդն է՝ ռանչպարները, հովիվները, արհեստավորները, խաղաղ մարդիկ, որոնք սուր էին վերցրել անհրաժեշտությունից դրդված, քանի որ հրո ճարակ էին դառնում նրանց տները, իսկ իրենց ու երեխաների կյանքը մահացու վտանգի տակ էր: Հայրենիքի փրկության թեման վեպում ստանում է էպիկական ուժ, մասշտաբայնություն և ժողովրդի երջանկության փշոտ ճանապարհի թեմայի ընդգրկուն իմաստ: Վեպի կենտրոնական էպիկական գաղափարները մահվան և անմահության, բարու և չարի, այլանդակության ու գեղեցկության հակադրություններ են: Դրանք միավորված են հայրենիքի ազատության, հավերժ գեղեցկի, մարդկային անանց սկզբունքների հաղթանակի համար մղած պայքարի ոգով և Դաշտենցի մոտ գեղարվեստականորեն իրականացվում են որպես ամբողջական ժողովրդական ճակատագրի մարմնավորում:

«Ամեն մի ժողովուրդ,— գրել է Բելինսկին,— ունի իր պատմությունը, իսկ պատմությունն ունի իր տագնապալից պահերը, որոնցով կարելի է դատել նրա ոգու ուժի ու վեհության մասին, և, հասկանալի է, որքան ավելի բարձր է ժողովուրդը, որքան ավելի մեծ, վեհաշուք է նրա պատմության բարոյական արժեքը, այնքան ավելի զարմանահրաշ է նրա տագնապալից պահերի ողբերգական վեհությունը և դրանցից հաղթանակի պատվով ու փառքով դուրս գալու վեհությունը» (Полн. собр. соч. т. 3, М., 1959, с. 346): Հայ գրողը ըմբռնել է իր ժողովրդի ոգու զորությունը, կարողացել է հաղորդել ժողովրդի ազատագրական գաղափարների հաջորդայնությունը, «Ավարայրի անմահ ոգին»: Գտնելով ժողովրդի ազգային հիմքի, նրա ոգու խոր արտահայտման իր առանձնահատուկ բանալին՝ Դաշտենցը ազգայինի միջոցով արտահայտում է համաժողովրդական պրոբլեմների հումանիստական էությունը: Ուստի և վիպասքը ընկալվում է որպես ժողովրդական հերոսական էպոպեա, որը դուրս է գալիս տեղային-ազգային պրոբլեմատիկայի շրջանակներից, իսկ նրա հերոսները նման են ուրիշ ժողովուրդների հերոսներին՝ պահպանելով իրենց ազգային ինքնությունը:

Սկզբունքորեն նշանակալի են Դաշտենցի վիպասքի կապերը Մուշեղ Գալշոյանի արձակի հետ: Կարծես թե նույն հերոսներն են, միայն արդեն տարիքներն առած, կորցրած երկրի նկատմամբ հայրենաբաղձությամբ լի նախկին ֆիդայիներ: Ներկան դառնում է անցյալ, իսկ անցյալը վերակենդանանում է հիշողության մեջ, և այդ պատմական հիշողությունը, որից դուրս անհնար է ազգի, մարդու գոյությունը, դառնում է ոչ թե պարզապես հուշ անցյալի մասին, այլ ձևավորում է բարոյական զգացում, որպես ժողովրդի էթիկական մտահորիզոնի, հերոսների մարդասիրական էության անկապտելի ներգործուն մասը: Մ. Գալշոյանն ընկալվում է իբրև մի գրող, որն իր ողջ պրոբլեմատիկայով, հերոսների ազգային առանձնահատկությամբ կարծես ամուր կառչած է մնում իր ժողովրդի կյանքի ինքնօրինակ ազգային հիմքերին: Այստեղ դրամատիկորեն հնչում է և՛ հարազատ երկրի նկատմամբ հայրենաբաղձական սիրո թեման, և՛ կորցրած տան թեման, և՛ ժողովրդական բնավորության գեղարվեստական մարմնավորման յուրատեսակությունը: Վերջապես, ժողովրդական բնավորության մեջ կարելի է նշմարել մարդկային ճակատագրի ընկալումը՝ որպես ցեղի շարունակողի, որպես կապող օղակի՝ ժամանակների այն շղթայում, որտեղ յուրաքանչյուրը պետք է հաղորդի սերունդների կուտակած փորձը, դրանով արգասավորի ապագա կյանքը, բազմապատկի իր հողի ու աշխարհի գեղեցկությունը: Եթե դրան ավելացնենք գրողի հերոսների առանձնահատուկ արժեքային մտահորիզոնը և դրա դրսևորման յուրատեսակ եղանակները, որտեղ առաջատար տեղերից մեկը պատկանում է լեզվին՝ Սասունի բարբառին, մենք կստանանք բանաստեղծական մտածողության ու աշխարհի պատկերման առանձնահատուկ միաձուլվածք, որը հասնում է պատկերավորության ժողովրդական ակունքներին:

Ավանդույթների, ժողովրդական արմատների, հիշողության ու հաջորդայնության

# ՆՅԱՐԴԱՅԻՆ ՀԱՄԱԿԱՐԳԻ ԳԱՂՏՆԻՔՆԵՐԻ ՎԵՐԾԱՆՄԱՆ ՃԱՆԱՊԱՐՀԻՆ

(ԱԿԱԴԵՄԻԿՈՍ Վ. Բ. ՖԱՆԱՐՋՅԱՆԻ ԾՆՆԴՅԱՆ 60-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)

**ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ** հեղափոխական նորացումն անհնար է առանց երկրի մտավոր և հոգևոր պոտենցիալի ըստ ամենայնի ակտիվացման: Կյանքի ամենատարբեր բնագավառներում գիտության դերի մեծացումը ստիպում է քննադատաբար վերաիմաստավորել վերջին 70 տարում ստեղծված բոլոր արժեքները, դրանց թվում առանձնացնել այնպիսիք, որոնք նպաստել են հասարակության սոցիալական և գիտատեխնիկական առաջադիմությանը: Ժամանակն ստիպում է հրաժարվել պատրանքներից և նախապաշարումներից, առավել սթափ նայել անցյալին:



Այժմ, երբ մարդկային գործոնի պրոբլեմը դարձել է համակողմանի ուսումնասիրության առարկա, հասարակական մեծ նշանակություն է ձեռք բերել նաև մարդու ֆիզիոլոգիայի հետազոտումը, դրա յուրահատկությունների խոր իմացությունը: Այս իմաստով ՀԽՍՀ ԳԱ Լ. Ա. Օրբելու անվան ֆիզիոլոգիայի ինստիտուտի գիտնականների որոնումները տվել են նշանակալի արդյունք, հաստատությունը դուրս բերել մարդու մասին համաշխարհային գիտության առաջավոր դիրքեր:

Ֆիզիոլոգիան մեր հանրապետությունում սկսեց լայն թափով զարգանալ 1943 թվականից, երբ պատերազմի ծանր տարիներին ստեղծվեց Հայկական ԽՍՀ գիտությունների ակադեմիան, իսկ նրա կազմում՝ ֆիզիոլոգիայի գիտահետազոտական ինստիտուտը: Հայաստանում այն ժամանակ ֆիզիոլոգիական գիտությունը ներկայացնում էին այնպիսի խոշոր անհատներ, ինչպես Լ. Օրբելին, Է. Հասրաթյանը, Խ. Կոշտոյանցը, որոնք ակադեմիայի կազմավորման օրվանից ընտրվեցին դրա իսկական անդամներ: Աժմ էլ Հայաստանի ֆիզիոլոգները, շարունակելով հանրապետության առաջին ակադեմիկոս-ֆիզիոլոգների սկզբնավորած լավագույն ավանդույթները, արժանի ներդրում ունեն հայրենական գիտության զարգացման մեջ: Ինստիտուտը «Ողնուղեղի բնի և ուղեղիկի ինտեգրացիայի մեխանիզմները» բաժնի գծով երկրում գլխադաս գիտական կենտրոնն է: Իսկ ԽՍՀՄ ԳԱ «Ուղեղ» համամիութենական ծրագրի մեջ մտնող այդ բաժինը ղեկավարում է ԽՍՀՄ ԳԱ թղթակից անդամ, ՀԽՍՀ փոխպրեզիդենտ, ակադեմիկոս, ԳԱ Լ. Ա. Օրբելու անվան ֆիզիոլոգիայի ինստիտուտի դիրեկտոր, կենտրոնական նյարդային համակարգի ֆիզիոլոգիայի լաբորատորիայի վարիչ, նյարդաֆիզիոլոգ Վիկտոր Բարդուղիմեոսի Ֆանարջյանը:

Գիտության տարբեր ճյուղերի կողմից ուղեղի ուսումնասիրման վերջնական նպատակը վարքային մեխանիզմների բացահայտումն է: Բոլոր ֆիզիոլոգների երազանքն է՝ կենդանու վարքն ուսումնասիրել որոշակի վարքագծի համար պատասխանատու առանձին նյարդային բջիջների գործունեության օրինակով և, վերջին հաշվով, հետազոտել բջջային նյարդաֆիզիոլոգիայի մակարդակով՝ ուղեղում տեղի ունեցող պրոցեսների մեխանիզմների քննության առավել ճշգրիտ մեթոդով: Ֆանարջյանը նվիրվեց շարժողական վարքի այս բարդ պրոբլեմի և նրա արտահայտման ձևի՝ շարժողական ակտի կազմավորման ուսումնասիրությանը:

Վ. Բ. Ֆանարջյանը ծնվել է 1929 թ. մարտի 30-ին Թբիլիսիում: Նույն թվականին ընտանիքը տեղափոխվել է Երևան: Ապագա գիտնականը հասակ է առել գիտական և երաժշտական միջավայրում. հայրը՝ ՀԽՍՀ ԳԱ ակադեմիկոս, ԽՍՀՄ ԲԳԱ թղթակից անդամ Բարդուղիմեոս Արտեմի Ֆանարջյանը, Հայաստանի ռենտգենաբանության և ուռուցքաբանության դպրոցի հիմնադիրն է, մայրը՝ հայտնի երգչուհի, վաստակավոր արտիստուհի Ելենա Լեոնարդի Ֆանարջյանը: Վիկտոր Ֆանարջյանի գիտական նախասիրությունները և ակտիվ հասարակական խառնվածքը դրսևորվում են արդեն ուսանողական տարիներին: Երևանի պետական բժշկական ինստիտուտում սովորելու ժամանակ ԽՍՀ ԳԱ տեղեկագրում տպագրվում է Ֆանարջյանի առաջին գիտական աշխատանքը, որը վերաբերում էր չարորակ ուռուցքների առաջացման գործում նյարդային համակարգի նշանակությանը և կատարվել էր պաթոլոգիական ֆիզիոլոգիայի ամբիոնում:

Իր հետազոտություններին առանձնակի պահանջկոտությամբ վերաբերվող Ֆանարջյան գիտնականի հետագա ճակատագիրը կանխորոշում են ասպիրանտական ուսումնառության տարիները ԽՍՀՄ ԲԳԱ Լենինգրադի փորձարարական բժշկության ինստիտուտի համեմատական ֆիզիոլոգիայի բաժնում՝ ԽՍՀՄ ԲԳԱ ակադեմիկոս, պրոֆեսոր Դ. Բիրյուկովի ղեկավարությամբ և անմիջական գիտական շփումները ԽՍՀՄ ԳԱ թղթակից անդամ Ա. Քարամյանի հետ:

Լենինգրադում Վ. Ֆանարջյանի ասպիրանտական ուսումնառությունը համընկավ սովետական ֆիզիոլոգիայի ծանրագույն տարիներին և անցավ այսպես կոչված «հակապավլովյան ուղղության» քննադատության մթնոլորտում: Նրան բախտ վիճակվեց հանդիպել և շփվել Լ. Օրբելու, Ս. Անիչկովի, Պ. Կուպալովի և այլ առաջատար մասնագետների հետ: Գնահատելով այդ ժամանակաշրջանը, Ֆանարջյանը գտնում է, որ ԽՍՀՄ ԳԱ և ԽՍՀՄ ԲԳԱ 1950 թ. միացյալ գիտական նստաշրջանը լրջորեն արգելակեց երկրում ֆիզիոլոգիայի և մի շարք հարակից գիտությունների զարգացումը: Ընթանալով գիտական բանավեճի ոգուց զուրկ մթնոլորտում, բարոյական նորմերի արհամարման, ամենաթողության և թելադրանքի պայմաններում, նստաշրջանը անտեսեց հարցի փաստական կողմը, հիմք ընդունեց մեթոդաբանական սկզբունքների սխալ մեկնաբանություններ: Փորձելով կանոնականացնել Ի. Պավլովի ուսմունքը, նստաշրջանը մեծ վնաս հասցրեց նրա գաղափարներին, գիտությունից վտարեց բազմաթիվ առաջնակարգ գիտնականների, բացասաբար անդրադարձավ ամբողջ կենսաբանական գիտության վրա: Նստաշրջանը սոցիալհոգեբանական և բարոյաէթիկական ծանր հետևանքներ ունեցավ:

Խորհրդային ֆիզիոլոգիայի դժվարին տարիները խիստ բացասական հետք թողեցին ակադեմիկոս Լ. Օրբելու և նրա դպրոցի վրա, որը սուր քննադատության ենթարկվեց: Նստաշրջանի ժամանակ, իսկ այնուհետև գիտական խորհրդի նիստերում ակադեմիկոս Ի. Պավլովի ֆիզիոլոգիական ուսմունքի պրոբլեմների կապակցությամբ Լ. Օրբելու հասցեին մեղադրանքները մտացածին էին և հիմնազուրկ:

1954 թվականին կոմունիստ գիտնականը թեկնածուական դիսերտացիա է պաշտպանում «Նյարդային հետքերի մեխանիզմների էվոլյուցիայի մասին» թեմայով: Դիսերտացիայի մեջ մանրամասն վերլուծված են ֆիլոգենեզում շարժողական պայմանական ռեֆլեքսների մշակման մեխանիզմները, բացահայտված են նյարդային հետքերի ֆիքսման էվոլյուցիայի առանձնահատկությունները: Արդեն այս աշխատանքը վկայեց, որ ֆիզիոլոգիական գիտությունը համալրվել է գիտահետազոտական գործունեության համար անհրաժեշտ բոլոր հատկություններով օժտված տաղանդավոր գիտնականով:

1955 թ. Վ. Ֆանարջյանը վերադառնում է Երևան, աշխատանքի անցնում ՀԽՍՀ ԳԱ Լ. Օրբելու անվան ֆիզիոլոգիայի ինստիտուտում: 1962 թվականից Վ. Ֆանարջյանը կենտրոնական նյարդային համակարգի ֆիզիոլոգիայի լաբորատորիայի վարիչն է: Այդ ժամանակվանից նրա աշխատանքի հիմնական ուղղությունը, որ ներկայացնում է հետազոտությունների մի միասնական շղթա, շարժողական ակտի մեխանիզմների բացահայտումն ու ուսումնասիրումն է: Վ. Ֆանարջյանը շարժողական ակտի կենտրոնական մեխանիզմների հարցերի մշակման ինքնատիպ և հիմնարար առաջարկություններ է արել: Նա այդ

պրոբլեմները հետևողականորեն ու բազմակողմանի ուսումնասիրել է ուղեղի տարբեր մակարդակներում պայմանական ռեֆլեքսային գործունեության և շարժողական կենտրոնների նեյրոնային կազմակերպման տեսանկյունից: Գիտնականի հիմնական աշխատանքները նվիրված են ուղեղիկ և ուղեղի բնի շարժողական բջիջներ ինֆորմացիա բերող կենտրոնախույս համակարգի տարբեր օղակների նեյրոնային և սինապսային կազմակերպման հետազոտությանը, որի մակարդակով տեղի է ունենում ուղեղիկային և կեղևային ազդանշանների ինտեգրացիան: Վ. Ֆանարջյանը էապես լրացրեց և մի շարք դեպքերում վերանայեց գիտության այդ բնագավառի որոշ պատկերացումներ: Լայն մտահորիզոնը, փորձարարի փայլուն ընդունակությունները նրան հնարավորություն ընձեռեցին ժամանակակից մեթոդական մակարդակով, որը նույնական է այս կամ այն խնդրի պարզաբանման համար, առաջադրել և լուծել նյարդաֆիզիոլոգիայի մի շարք կարևորագույն հարցեր:

Ձեռքբերովի շարժողական ակտի կազմավորման մեխանիզմների հետազոտության՝ գիտնականի կողմից ընտրված մեթոդը հնարավորություն ընձեռեց շարժողական պայմանական ռեֆլեքսների կենտ~~րոնախույս~~ կենտրոնացման և մասնագիտացման առանձնահատկությունների օրինակով ուսումնասիրել շարժողական վարքի բարդ ձևերը: Նոր մեթոդական մոտեցման մշակումը թույլ տվեց նուրբ և ճշգրիտ արտացոլել օրգանիզմի ամբողջական շարժողական ռեակցիաների դինամիկան և առաջ քաշել դրույթ պայմանական կապերի երկու անջատ համակարգերի առկայության մասին: Բացահայտվել է ուղեղիկի դերը դինամիկ շարժողական հսկման իրագործման ժամանակ: Ցույց է տրվել, որ մասնագիտացված շարժողական ակտի մշակումը և իրագործումը ուղղակիորեն կախված են ուղեղիկի, հատկապես նրա կիսագնդերի բաժինների առկայությունից: Վերջինների բացակայության դեպքում կենդանիների մեջ չեն նկատվում մասնագիտացված շարժողական պայմանական ռեֆլեքսներ: Օնտոգենեզի վաղ շրջանի հետազոտությունները ցույց տվեցին, որ բարձրագույն նյարդային համակարգի վրա ուղեղիկի ազդեցությունը զարգանում և կատարելագործվում է կենդանու անհատական զարգացման պրոցեսում: Կատարված հետազոտությունները Վ. Ֆանարջյանին հանգեցրին այն եզրակացության, որ շարժումների կազմակերպման և հսկման ուղեղիկային մեխանիզմները նշանակալի չափով հիմնված են ուսուցման պրոցեսների վրա: Ուղեղիկի կորիզների գրգռման պայմանական ռեֆլեքսների մշակման ժամանակ էլեկտրաֆիզիոլոգիական և վարքային ցուցանիշների միջև նյարդաֆիզիոլոգիական համահարաբերակցության վերլուծությունը ցույց տվեց, որ պայմանական ռեֆլեքսային գործունեության պրոցեսում նկատվում է ուղեղիկ-կեղև իմպուլսացիայի օրինաչափ փոփոխություն:

Վ. Ֆանարջյանն այն գիտնականներից է, որոնք վերին աստիճանի զգայուն են նորի, առաջավորի նկատմամբ: Նա ինստիտուտի և իր լաբորատորիայի հետազոտություններում ակտիվորեն ներդնում է ձևակերպված խնդիրների լուծման նոր փորձարարական մեթոդներ:

Ջգտելով թափանցել ուղեղի գաղտնիքների մեջ, հետազոտել յուրաքանչյուր նյարդային բջջի գործունեության ներքին մեխանիզմները, ֆիզիոլոգիական գիտությունն իր զարգացման ճանապարհին խոր փոփոխություններ է կրել: Ստեղծվեցին ուղեղում միկրոէլեկտրոդներ մտցնելու տեխնիկա, նյարդային բջջի գործունեության կենսաբանական ազդակները գրանցող էլեկտրոնային սարքավորումներ, որոնք հնարավորություն ընձեռեցին ուսումնասիրել բջջի ֆիզիոլոգիական մեխանիզմները: Տաղանդավոր փորձարարը Հայաստանում առաջիններից մեկը իր աշխատանքներում կիրառեց էլեկտրաֆիզիոլոգիական, իսկ հետագայում՝ ներբջջային հետազոտության մեթոդը: Սկսեցին ուսումնասիրվել բջջի մարմին գնացող և դրանից եկող ինֆորմացիայի փոխանցման մեխանիզմները: Բջջից բջիջ, մի գոյացությունից մյուսը ինֆորմացիայի փոխանցումն ուսումնասիրելու օբյեկտ ընտրվեց ուղեղիկը՝ գլխուղեղի այն բաժինը, որն օրգանիզմի ռեֆլեքսային գործունեության, մասնավորապես շարժողական գործունեության և վերջինիս հետ կապված ուղեղի բնի այլ շարժողական կառուցվածքների կարգավորիչն է: Վ. Ֆանարջյանի և իր գործընկերների աշխատանքում գլխավորը ուղեղիկի կենտրոնախույս համակարգի նեյրոնային կազմակերպման քննությունն է: Հետազոտվել է ուղեղիկի դերը տեսողական անալիզատորում կենտրոնաձիգ ազդակների հոսքը կարգավորելիս, վերլուծվել ուղեղիկի ազդեցությունը զգայաշարժական կեղևի նեյրոնային ակտիվության, կեղևի բրգային, ոչ բրգային և միջանկյալ նեյրոնների վրա: Հանգամանորեն հետազոտվել են ուղեղիկային էֆեկտները ասոցիատիվ գագաթային կեղևի տարբեր տիպի նեյրոնների վրա:

Ուղեղի կեղևի վրա ուղեղիկի վերընթաց ազդեցությունը հետազոտելիս գիտնականի ստացած տվյալները հիմնարար նշանակություն ունեն: Ցույց է տրվել, որ ուղեղիկի վերընթաց ազդեցության՝ գրականության մեջ ընդունված երկու ուղիներից զատ (կամուրջ-փոփոխիչի ցանցանման գոյացությամբ և տեսաբլուրի սպեցիֆիկ կորիզներով) գոյություն ունի նաև երրորդ ուղի՝ տեսաբլուրի ոչ սպեցիֆիկ կորիզներով: Ֆանարջյանը մանրամասն բնութագրել է հայտնաբերված ոչ սպեցիֆիկ ուղեղիկ-թալամուս-կեղև պրոյեկցիոն համակարգը, որը ուղեղիկի կորիզներից սկիզբ առնող երկնեյրոնային ռեֆլեքսային աղեղ է, մեկնաբանել համակարգի գործողությունը: Մանրակրկիտ վերլուծվել է ուղեղիկի ազդեցությունը ուղեղի զգայաշարժական և ասոցիատիվ կեղևի նեյրոնային ակտիվության վրա: Ցույց է տրվել ուղեղիկի մոդուլացնող ներգործությունը կեղևային և ներթալամուսային ինտեգրատիվ մեխանիզմների վրա: Ուսումնասիրվել են ուղեղիկի առանձնահատկություններն ու կապը հիպոկամպի և պոչավոր կորիզի հետ, ճշտվել է դրա դերը այս գոյացություններից ինֆորմացիայի ինտեգրացման պրոցեսում: Վ. Ֆանարջյանի և իր աշակերտների աշխատանքների այս շարքը լայն ճանաչման է արժանացել, խթանել ուղեղիկի վերընթաց ազդեցության ֆիզիոլոգիայի հետազոտությունների հետագա զարգացումը:

Ուղեղիկի կենտրոնախույս համակարգի առաջին օղակի՝ կեղև-կորիզային կապերի էլեկտրաֆիզիոլոգիական հետազոտությունը երևան հանեց կեղև-կորիզային ազդեցությունների արտակարգ մանրատվածությունն ու խայտաբղետությունը այդ փոխներգործության ներքին և ինտեգրատիվ մեխանիզմների վերածման ժամանակ: Ուղեղիկի կեղևի տոպիկ կազմակերպման՝ գրականության մեջ արմատացած պատկերացումներին ի հակակշիռ, բացահայտվել են ուղեղիկում ֆունկցիայի տեղայնացման մեծ պլաստիկությունն ու դինամիկությունը: Վերլուծվել է ուղեղիկի կենտրոնական կորիզների սինապսային կազմակերպումը, դասակարգվել են նեյրոնները, ուսումնասիրվել դրանց շփման տեսակները արտաուղեղիկային հյուսվածքաթելերի հետ ուղեղի բնի տարբեր բաժիններում և ուղեղի կեղևում: Այս հետազոտությունները թույլ տվեցին ենթակեղևային կորիզները դիտել իբրև սեփական ինտեգրատիվ մեխանիզմներով օժտված գոյացություններ: Պարզվեց, որ ուղեղիկի կորիզը շատ ավելի բարդ ֆունկցիոնալ կազմակերպում ունի, քան ներկայանում էր մինչև այժմ:

Վ. Ֆանարջյանը Հայաստանում հետազոտությունների նոր փորձարարական ներբջջային տեխնիկայի ներդրման հսկայական աշխատանք է կատարել, շատ ուժ ու եռանդ նվիրել մեծ թվով համապատասխան կադրերի պատրաստման գործին:

Փորձերի նույնական մեթոդների ընտրության հարցում գիտնականի մեծ պահանջկոտությունը առաջադրված խնդիրների լուծման և հուսալի արդյունքների ստացման երաշխիք է տալիս: Վ. Ֆանարջյանը և իր գործընկերները հանգամանորեն հետազոտել են ուղեղիկի կենտրոնախույս համակարգի մեջ մտնող Դեյտերսի լատերալ վեստիբուլյար կորիզի նեյրոնային կազմակերպումը: Վեստիբուլյար-ողնուղեղային ռեֆլեքսային ուղու ուսումնասիրումը հնարավորություն տվեց ըստ ֆունկցիոնալ նշանակության ճշգրիտ դասակարգել վեստիբուլյար-ողնուղեղային տրակտի բջիջները: Ուղեղիկի կեղև-վեստիբուլային պրոյեկցիաների տոպոգրաֆիկ կազմակերպումը վերլուծելիս բացահայտվեցին վերին և ստորին վերջույթների համաձայնեցված շարժումների կոորդինացման մեխանիզմները: Ֆանարջյանի պատկերացմամբ, տոպոգրաֆիկ կազմակերպման սահմանված սկզբունքը մասնագիտացված շարժողական ակտերի իրականացման ժամանակ կոորդինացիոն մեխանիզմների հիերարխիկ կազմակերպման ընդհանուր կանոն է: Հետազոտությունների հիմնական շղթայում աշխատանքների մի մեծ շարքի օբյեկտ է դարձել վարընթաց ուղեղիկային ազդեցությունները հաղորդող ուղեղի բնի գոյացություններից մեկի՝ կարմիր կորիզի ինտեգրատիվ գործունեության ուսումնասիրումը: Պարզվել է, որ ռուբրո-ողնուղեղային նեյրոնների գրգռումը նրանց աքսոնների կոլատերալ ճյուղավորման շնորհիվ ակտիվացնում է ուղեղի բնի շատ կառուցվածքներ, ինչը կարևոր նշանակություն ունի վարընթաց առաքման ինտեգրացիայում: Վ. Ֆանարջյանը մանրամասն հետազոտել է ուղեղիկից և զգայաշարժական կեղևից ելնող, ռուբրո-ողնուղեղային նեյրոնների վրա սինապսային ազդեցության համապատասխանաբար տարբեր տիպեր ներկայացնող ռուբրո-ողնուղեղային նեյրոնների մինասինապսային գրգռման առանձնահատկությունները: Առաջին անգամ ցույց է տրվել ասոցիատիվ գագաթային կեղևից կարմիր կորիզում միասինապսային պրոյեկցիաների ակռայությունը և մանրամասն հետազոտվել են դրանց առանձնահատկությունները, ինչը բերում է ռուբրո-ողնուղեղային նեյրոնների ակտիվացման ավելի պրոքսիմալ տիպի, քան ազդակները զգայաշարժական կեղևից: Բացահայտվել և հետազոտվել են ստրիոպալիդար համակարգից և սև սուբստանցիայից կարմիր կեղևում պրոյեկցիաների առանձնահատ-

կությունները: Ցույց է տրվել, որ ուղեղիկ-ռուբրալային նեյրոնները վերահսկվում են ռուբրո-ուղեղիկային հյուսվածքաթելերով և ռուբրո-ողնուղեղային նեյրոնների կոլատերալներով իրացվող հետադարձ կապի մեխանիզմով: Կարմիր կորիզում հայտնաբերվել են բազմասինապսային ռեակցիաների ծագմանը մասնակցող միջանկյալ նեյրոններ: Ուսումնասիրվել է այդ կորիզի կենտրոնաձիգ կազմակերպվածությունը, բացահայտվել կարմիր կորիզում մաշկի զգայնությունը ներկայացնող սոմատիկ սկզբունքը, ցույց տրվել ողնուղեղի հետին եղջյուրների կորիզներից շարժազգայական ինֆորմացիայի փոխանցումը անմիջականորեն կարմիր կորիզ: Այդ աշխատանքների շնորհիվ հայտնաբերվել են կարմիր կորիզի ինտեգրատիվ գործունեության մի շարք նեյրոնային ու սինապսային մեխանիզմներ և կարմիր կորիզի կենտրոնախույս առաքումների կազմակերպման համակարգային սկզբունքը, որոնք նշանակություն ունեն շարժողական ռեակցիաներ իրականացնելիս: Օրգանիզմի շարժողական ռեակցիաների ձևավորման բարդ պրոբլեմն ըմբռնելու հետաքրքիր տվյալներ են ստացվել ասոցիատիվ գագաթային կեղևի կենտրոնախույս նեյրոնների երեք տիպի էլեկտրաֆիզիոլոգիական ուսումնասիրության ժամանակ, որոնք պրոյեկտվում են կարմիր կորիզի, կամրջի սեփական կորիզների և զգայաշարժական կեղևի վրա: Նշված նեյրոնների աքսոնների կոլատերալ ճյուղավորումը ուղեղի բնի շարժողական կառուցվածքներում և զգայաշարժական կեղևում ակտիվացնում է ուղեղի բնի կառուցվածքները և կարևոր նշանակություն ունի շարժման ինտեգրացման համար:

Վ. Ֆանարջյանի աշխատանքների մի շարք նվիրված է դիմանյարդի կորիզի մոտոնեյրոնների ակտիվության կարգավորմանը: Կարևոր տվյալներ են ստացվել դիմանյարդի կորիզի ֆունկցիոնալ կազմակերպման էլեկտրոֆիզիոլոգիական հետազոտության ժամանակ: Ուսումնասիրվել են ուղեղի կեղևի, ենթակեղևային գոյացությունների և ուղեղի բնի կառուցվածքների վարընթաց վերահսկողության սինապսային մեխանիզմները: Այս հետազոտություններով պարզվել է, որ դիմանյարդի կորիզի մոտոնեյրոնների և կենտրոնաձիգ մուտքերի առանձնահատկությունները օրգանիզմի տարբեր ռեֆլեքսային ռեակցիաներում կորիզի լայն մասնակցության, ինչպես նաև դիմային մկանային համակարգի շարժողական ռեակցիաների բարձր պլաստիկության և խայտաբղետության պայմաններ են ապահովում: Ստեղծվել է օրգանիզմի ռեֆլեքսային ռեակցիաներում դիմանյարդի կորիզի մասնակցությունը ապահովող վարընթաց ուղիների նեյրոնային կազմակերպման մանրամասն սխեմա:

Արժեքավոր տվյալներ են ստացվել նախաուղեղիկային կառուցվածքների՝ Բեխտերևի կամրջի ծածկի ցանցանման կորիզի և կամրջի սեփական կորիզների էլեկտրաֆիզիոլոգիական վերլուծության ժամանակ: Բացահայտվել են բարդ կեղև-ուղեղիկային ռեֆլեքսային հանգույցում այս գոյացություններից յուրաքանչյուրի առանձնահատկությունները բնութագրող սինապսային մեխանիզմները:

Վ. Ֆանարջյանը հեղինակ է ավելի քան 280 գիտական աշխատանքի, այդ թվում մեր երկրում և արտասահմանում հրատարակված մենագրությունների, ֆիզիոլոգիական ձեռնարկների բաժինների, ընդհանրացնող հոդվածների: Գիտնականի նոր գաղափարները պատշաճ տեղ ունեն գիտական գրականության մեջ: Վ. Ֆանարջյանը գիտական սերտ կապեր ունի խորհրդային և արտասահմանյան նյարդաֆիզիոլոգների հետ, մի շարք աշխատանքներ կատարել է ԳԴՀ-ի, Հունգարիայի, Ճապոնիայի գիտնականների մասնակցությամբ: Հայաստանի և Վրաստանի գիտնականների միջև կապերի ամրապնդման գործում ներդրած մեծ ավանդի համար 1980 թ. նրան շնորհվել է Վրացական ԽՍՀ գիտության վաստակավոր գործչի պատվավոր կոչում:

Վ. Ֆանարջյանը ըստ արժանվույն է ներկայացնում ֆիզիոլոգիական գիտությունը համամիութենական և միջազգային գիտաժողովներում և ինքն էլ գործուն մասնակցություն է բերում դրանց կազմակերպմանը: Նա նախաձեռնողն է «Ուղեղիկի կառուցվածքային և ֆունկցիոնալ կազմակերպումը» պրոբլեմի գծով պարբերաբար հրավիրվող գիտաժողովների:

Վ. Ֆանարջյանը մեծ ուշադրություն է նվիրում կադրերի աճին: Գիտնականի ղեկավարությամբ պաշտպանվել է 24 դոկտորական և թեկնածուական դիսերտացիա, նրա լաբորատորիայի հինգ աշխատակիցներ արժանացել են հանրապետության լենինյան կոմերիտմիության մրցանակի: Լինելով լաբորատորիայի վարիչ, ինստիտուտի դիրեկտոր, ՀԽՍՀ ԳԱ փոխպրեզիդենտ, նա խոշոր գիտակազմակերպչական աշխատանք է կատարում՝ անսահմանորեն նվիրված մնալով գիտնականի իր կոչմանը: Վ. Ֆանարջյանը «Ինտերմոզգ» պրոբլեմային հանձնաժողովի փորձագետների խմբի ղեկավարն է, ուղեղի հետազոտման միջազգային կազմակերպության խորհրդային ազգային կոմիտեի, Ի. Պավլովի անվան համամիութենական ֆիզիոլոգիական ընկերության կենտրոնական խորհրդի նախագահության, ՀԽՍՀ գիտության և տեխնիկայի բնագավառի պետական մրցանակներ շնորհող հանձնաժողովի անդամ, Հայաստանի լենինյան կոմերիտմիության գիտության և տեխնիկայի բնագավառի մրցանակներ շնորհող հանձնաժողովի նախագահ, ՅՈՒՆԵՍԿՕ-ի «Մարդը և կենսոլորտը» ծրագրով Հայկական ԽՍՀ հանրապետական կոմիտեի, ինչպես նաև հայրենական և արտասահմանյան առաջատար ֆիզիոլոգիական ամսագրերի խմբագրական կոլեգիաների և խմբագրական խորհուրդների անդամ: Վ. Ֆանարջյանը ՀԿԿ Կենտկոմի «Լենինյան ուղիով» տեսական-քաղաքական ամսագրի խմբագրական կոլեգիայի անդամ է:

Գործունեության ամենատարբեր ասպարեզներում Վ. Ֆանարջյանն առանձնանում է անսպառ էներգիայով և աշխատասիրությամբ, իր և շրջապատի նկատմամբ խըստապահանջությամբ: Նրա ղեկավարած ստեղծագործական կոլեկտիվը տասնամյակների ընթացքում մշակում է ուղեղիկի ֆիզիոլոգիայի և ուղեղի բնի կառուցվածքների բնագավառի հիմնարար նշանակության հարցեր:

Վ. Ֆանարջյանի գործունեությունը բընութագրվում է գիտական որոնումների առավել հրատապ և հեռանկարային ուղղությունները առանձնացնելու կարողությամբ: Այսօր նրա հետազոտությունները նվիրված են միլիարդավոր բջիջներով ներկայացված նյարդային համակարգի պլաստիկ հատկությունների ֆիզիոլոգիական մեխանիզմների իմացությանը: Նյարդային բջիջները շատ անկայուն են. դրանք անընդհատ մեռնում են: Բայց այդ բջիջները բազմաքանակ են և միմյանց հետ կապված այնպես, որ դրանցից շատերը աշխատում են զուգահեռ, և մի բջիջը կարող է պլաստիկորեն կրել մյուսի ֆունկցիան: Նյարդային բջիջների այդպիսի կատարելությունը նրանց գործունեության կազմակերպման սկզբունքների վիթխարի հնարավորություններ է ամփոփում և սպասում է իր խոր ուսումնասիրմանը: Այժմ այդ պրոբլեմի և նյարդային համակարգի մյուս գաղտնիքների վերածնմանն են նպատակամղված ՀԽՍՀ ԳԱ Լ. Ա. Օրբելու անվան ֆիզիոլոգիայի ինստիտուտի դիրեկտորի և գիտական ղեկավարի՝ Վիկտոր Բարդուղիմեոսի Ֆանարջյանի գիտական որոնումները:

**Ե. ՊԱՊՈՅԱՆ**
**ՀԽՍՀ ԳԱ Լ. Ա. Օրբելու անվան ֆիզիոլոգիայի ինստիտուտի գիտական քարտուղար, կենսաբանական գիտությունների թեկնածու**

# ԿՈՉՈՒՄ

## Հ. ՀԱՅՐԱՊԵՏՅԱՆ

*Վաղուց էի ճանաչում Ալեքսեյ Միկոյանին և չեմ կարող չպատմել նրա մասին։*

*1962 թվականի ապրիլն էր։ Գրող Վարդգես Թևեքելյանն ու կոմպոզիտոր Ալեքսանդր Դոլուխանյանը ինձ հրավիրել էին ընթրիքի։ Մոսկվայի Նեգլիննայա փողոցի վրա գտնվող «Արարատ» ռեստորանում հանդիպեցինք Ալեքսեյ Միկոյանին, որը նոր էր գեներալի կոչում ստացել։ Վարդգես Թևեքելյանը բացականչեց. «Կյանքի երեսունյոթերորդ տարում դառնալ գեներա՞լ։ Դա, ասեմ ձեզ, ամեն մեկին չի հաջողվում, այն էլ խաղաղ պայմաններում»։ Արդարացիորեն նշվեց նաև, որ Ալեքսեյն իր աշխատանքով ու համառությամբ էր արժանացել այդ աստիճանին։*

*Դա իմ երկրորդ հանդիպումն էր Ալեքսեյ Միկոյանի հետ։ Իսկ դրանից չորս տարի առաջ, երբ աշխատում էի երեսունյոթ թվականի ամառը չարանենգ զրպարտության զոհ դարձած երկրորդ կարգի բանակային կոմիսար Հայկ Հովսեփյանին նվիրված վավերագրական ակնարկի վրա, մի առիթով հեռախոսով կապվեցի Յան Գամառնիկի դստեր՝ Վիկտորյա Յանովնայի հետ և առաջարկեցի հանդիպել։*

*Բանն այն է, որ առաջին կարգի բանակային կոմիսար Յան Գամառնիկը երեսնական թվականներին զբաղեցնում էր կարմիր բանակի քաղաքական վարչության պետի բարձր պաշտոնը, իսկ Հայկ Հովսեփյանը նրա առաջին տեղակալն էր։ 1937 թվականի մայիսի 31-ին Յան Գամառնիկը, որին երկրում անվանում էին «Կարմիր բանակի խիղճը», ինքնասպան եղավ. չուզեց հանձնվել ստալինյան դահիճներին։ Հաջորդ օրը ձերբակալեցին նաև Հայկ Հովսեփյանին։ Վիկտորյա Յանովնան լավ ծանոթ էր Հովսեփյանի ընտանիքին, մտերիմ էր վերջինիս որդու՝ Վլադիմիրի հետ։*

*... Ինձ դիմավորում է գեղեցիկ, ալեհեր մի կին, թեև գիտեմ, որ նրա քառասունն էլ դեռ չի բոլորել։ Նա ինձ ներկայացնում է պերճաշուք մուգ-կապույտ կոստյումով մի համակրելի երիտասարդի։ Ազնվաբարո կեցվածք, շագանակագույն աչքերի բարի հայացք, վաղաժամ ալեհեր՝ սև, խիտ գանգուրներում։*

*— Ալեքսեյ,— ներկայացավ նա ու, դառնալով տանտիրուհուն, շարունակեց ընդհատված զրույցը։— Ինչ վերաբերում է պատմական լավատեսությանը, սիրելի Վետոչկա, ապա մինչև վերջերս մեր անցյալում տեսնում էինք լոկ փայլուն հաղթանակներ, իսկ ժողովրդին բաժին հասած դառնություններից ամոթխածաբար գլուխ էինք թեքում։ Ժողովուրդն ընկալվում էր որպես պատմության ֆոն՝ անդեմ ու միապաղաղ։ Բավական ժամանակ պահանջվեց, մինչև սկսեցին այդ ֆոնի վրա տարբերել առանձին մարդկանց, դեմքեր։ Շնորհակալություն Նիկիտա Սերգեևիչ Խրուշչովին՝ այդ խիզախ մարդուն... Ներիր, խոսքով ընկա, Վետոչկա, հարկ չկա այդ ամենը քեզ ասելու, ինքդ էլ ճաշակել ես ստալինյան դարաշրջանի «հաճույքները»...*

*Գնալիս, Ալեքսեյ Միկոյանն ասաց, որ «չանհետանամ», թողեց հիմնարկի և տան հեռախոսների համարները։*

*— Աքսորից վերադառնալուց հետո,— հիշում է Վիկտորյա Յանովնան,— ինձ շատ օգնեց Անաստաս Իվանովիչ Միկոյանը։ Մինչև երեսունյոթ թվականի այն ճակատագրական մայիսյան օրը մենք Միկոյանի ընտանիքի հետ ապրում էինք նույն ամառանոցում։ Նա ուներ հինգ որդի, և բոլորն էլ մտերիմ ընկերներս էին։ Վոլոդյան զոհվեց պատերազմում։ Ստեփանը, Սերգոն, Վանյան և Ալյոշան միշտ թանկագին մարդիկ են եղել ինձ համար և այսօր էլ մնում են այդպիսիք։ Բայց բոլորից շատ սիրում եմ Ալեքսեյին։ Ըստ իս, նա աշխարհի ամենավեհանձն մարդն է։ Որքան լավություն է անում մարդկանց։*

*Ինչ մեղքս թաքցնեմ, նախկին բանակային կոմիսարի դստեր մոտից հեռանալիս, ուրախանում էի, որ իմ հայրենակիցը իսկապես վեհանձն մարդ է, օգնության է հասել իր մանկության ընկերուհուն, դժբախտության ժամին երբեք երես չի թեքել նրանից։*

*Այն երեկո ռեստորանում, ուր մտերիմ բարեկամները շնորհավորում էին նորաթուխ գեներալին, ես ջանում էի ավելի մոտիկից ճանաչել մեր հայրենակցին։ Երկնքում օդաչուները շրջահայաց մարդիկ են, իսկ երկրի վրա նրանք,*

---

*ՀԱՅՐԱՊԵՏՅԱՆ ՀԱՅԿ ԱՐՇԱԿԻ— պահեստի գնդապետ, ԽՍՀՄ գրողների միության անդամ։*



*իմ կարծիքով, մի քիչ անհոգ, անգամ անօգնական են։ Գուցե և այդպես չէ, չեմ պնդում։*

*Այն ժամանակ իմ բախտը բերեց։ Իմ կողքին նստած էր Ալեքսեյ Միկոյանի ռազմաճակատային ընկերը՝ գնդապետ Կոնստանտին Լարիոնովը, որը հիանալի, նույնիսկ տաղանդավոր պատմող է։ Տեսնելով, թե ինչպիսի ուշադրությամբ է նրան լսում Վարդգես Թևեքելյանը, «խանդից» սկսեցի սղագրել փորձառու օդաչուի պատումները։ Ահա դրանցից մեկը։*

*Մի անգամ ավիացիոն դիվիզիայի հրամանատար գեներալ-մայոր Մատիսլավ Մեշչերսկին էսկադրիլիայի հրամանատար Ալեքսեյ Միկոյանին հրամայում է ոչնչացնել թշնամու կործանիչները նրանց իսկ օդանավակայանում։ Երկու օր հետո վերջինս հետևում ու հայտնաբերում է ֆաշիստական ինքնաթիռների վայրէջքի տեղը։ Հետո հավաքում է իր մարտական ընկերներին ու առաջարկում ֆաշիստներին հրավիրել օդային մարտի։ Բոլոր օդաչուները պաշտպանում են իրենց հրամանատարի առաջարկությունը։ Անձամբ Ալեքսեյ Միկոյանը ֆաշիստներին վերջնագիր է գրում՝ կամ ընդունեք մարտահրավերը, կամ կսպանվեք գետնի վրա։*

*Վաղ առավոտյան Լա-5-երի էսկադրիլիան օդ բարձրացավ և սլացավ թշնամու օդանավակայանի վրայով։ Օդաչուները վայր գցեցին Ալեքսեյ Միկոյանի վերջնագիրն ամփոփող պատյանը. «Եթե 10 րոպե հետո օդ չբարձրանաք, կգնդակահարենք գետնի վրա»։ Շուտով օդանավակայանում եղած բոլոր տասներկու ֆաշիստական ինքնաթիռները վեր խոյացան։ Երկնքում գոյացավ մի հսկայական «հրե կարուսել»։ Կես ժամ հետո ֆաշիստական ինքնաթիռներից տասնմեկը խփված էին։ Էսկադրիլիայի հրամանատարը կարգադրեց. «Վերջինին չխփե՛լ։ Կտանենք վայրէջքի»։*

*Քիչ անց Ալեքսեյ Միկոյանը զեկուցում էր դիվիզիայի հրամանատարին. «Հրամանը կատարված է, ոչնչացված է ֆաշիստական տասնմեկ կործանիչ, տասներկուերորդը նստեց «պատվավոր պաշտպանության ներքո»։*

*— Ինչպե՞ս թե «նստեց»,— զարմացած հարցրեց գեներալը։*

*Էսկադրիլիայի հրամանատարը պատմեց եղելությունը։ Գեներալը խիստ պարսավեց նրան ու էսկադրիլիայի բոլոր օդաչուներին այդ «ինքնագործունեության» համար։ Լռեց ու քիչ հետո ավելացրեց.*

*— Քո բախտից, Ալեքսեյ, հաղթողներին չեն դատում։*

*... Մի անգամ հանդիպեցինք գեներալ-գնդապետ Խաչիկ Համբարյանի բնակարանում՝ երկարատև գործուղումից տանտիրոջ վերադարձի առիթով։ Իմ ձախ ձեռքի վրա՝ ժամացույցից վերև Ալեքսեյը տեսավ արկի պարկուճից պատրաստված ապարանջանը։*

*— Դա ի՞նչ է, նորաձևությու՞ն է,— հարցրեց նա։*

*— Թալիսման է։ Կյանքս փրկել է։*

*Նա շոշափեց ապարանջանս ու ասաց.*

*— Պատերազմի ժամանակ ես էլ թալիսման ունեի....*

*Ահա թե ինչ պատմեց նա 1982 թվականի մայիսյան այդ երեկո։*

*Մարտերն ընթանում էին Վիսլայի ափերին։ Ալեքսեյ Միկոյանն անցավ գետն ու հայտնվեց թշնամու կողմում։ Ֆաշիստները լուռ էին։ Նա թռչում էր ռազմաճակատի գծի երկայնքով։ Ուշադրությունը գրավեց բլրոտ անտառեզրը։ Այնտեղ չէ՞ արդյոք թշնամու մարտկոցը։ Օդաչուն կտրուկ ցած իջավ ու այսպես կոչված խուզող թռիչքով կրկնեց գրոհահերթը։ Համազարկը լուսավորեց անտառեզրը։ Ալեքսեյ Միկոյանը միացրեց լուսանկարչական սարքը, բարձրությունը հավաքեց ու շտապեց հետ՝ պետք էր հնարավորին չափ արագ հրամանատարությանը հայտնել այդ նզովյալ մարտկոցի կոորդինատները։*

*Հանկարծ մեքենայի հետնամասում հայտնվեցին կրակի շիթեր։ Վնասվել էին թևերն ու ֆյուզելյաժը։ Ալեքսեյն անմիջապես շրջադարձ կատարեց՝ պատրաստվելով մարտի։ «Մեսսերշմիտի» սավերն ընկավ խցիկի առաջնամասին։ Նա սեղմեց ձգանները։ Ֆաշիստը քարի պես ցած ընկավ՝ հետևից սև ծուխ արձակելով։ Սակայն Ալեքսեյ Միկոյանի ինքնաթիռն էլ էր ընկնում։ Մեքենան փրկելու մասին խոսք անգամ չէր կարող լինել։ Օդաչուն բացեց լապտերն ու իրեն դուրս գցեց խցիկից։ Ներքևում նա տեսավ պարաշյուտի կեղտականաչավուն գմբեթը։ Դա խփված ֆաշիստն էր։ Եթե նա առաջինը հասնի գետնին, կհասցնի նախապատրաստվել կրակելու։ Պետք է արագացնել անկումը։ Նա ձգեց պարաշյուտի պարաններն ու վայրէջք կատարեց թշնամուց անմիջապես հետո։ Ազատվեց ձգափոկերից, հանեց ատրճանակն ու պառկեց գետնին, հետո սողեսող շարժվեց դեպի մոտակա սոճին։ Շատ մոտ գտնվող թփուտները ցնցվեցին։ Գնդակը սուլոցով անցավ Ալեքսեյի գլխի վրայով։ Տեսնելով հաղթանդամ թշնամուն, Ալեքսեյը երեք անգամ կրակեց նրա վրա։ Ֆաշիստն ընկավ։ Լռություն տիրեց։*

*«Ստացա՞վ»,— հոգնած մտածեց Միկոյանը։ Գլանակ հանեց ու սկսեց ծխել։ Բայց անսպասելի կրակոցը պատռեց լռությունը, աջ ուսը ծանրացավ ու տաքացավ։ Նույն պահին լսեց թշնամու հաղթական քրքիջը։ Գերմանացին, հավանաբար, կարծում էր, թե հաղթել է։ Բայց Ալեքսեյը ատրճանակը փոխանցեց ձախ ձեռքն ու սկսեց կրակել թփերի ուղղությամբ։ Ֆաշիստը լռեց։ Իսկ Միկոյանը, թաքնվելով սոճու հետևի խոտերում, փոխեց պահունակն ու որոշեց զուր տեղը չվատնել փամփուշտները։ Ֆաշիստը ընդամենը երեք անգամ է կրակել, ուրեմն դեռ փամփուշտ ունի։*

*Ալեքսեյ Միկոյանը հանեց սաղավարտը, խոտ ու մամուռ լցրեց, հարմարեցրեց մի ոստի վրա ու դուրս ցցեց ծառաբնի հետևից։ Ճայթեցին*

կրակոցներն ու սաղավարտը մի կողմ թռավ։ Փոխհրաձգությունը շարունակվում էր։ Շուտով երկուսի մոտ էլ վերջացան փամփուշտները։ Ֆաշիստը դուրս քաշեց դանակն ու շարժվեց դեպի Ալեքսեյը։ Հիշելով հոր նվիրած գրչահատի մասին, Ալեքսեյը սկսեց տենդագին տնտղել գրպանները։ Բայց, սա ի՞նչ է։ Մատները կպան ինչ-որ սառը առարկայի։ Փամփո՜ւշտ։ Կայծակնային արագությամբ մտքին եկավ, թե ինչպես հետախուզական թռիչքից առաջ ընկերներից մեկը, նվիրելով այդ փամփուշտը, կատակեց՝ թող «թալիսմանդ» լինի։

Լսելով ատրճանակի փակաղակի չխկոցը, ֆաշիստը կանգ առավ։ Նա ամեն ինչ հասկացավ։ Ժպիտը դեմքից չքացավ։ Սակայն Ալեքսեյը չկրակեց։ Մեկ ժամ անց լեհ գյուղացու ուղեկցությամբ հայտնվեցին մեր հետախույզները...

1949 թվականին Ալեքսեյ Միկոյանը ավարտում էր ռազմաօդային ակադեմիան։ Դիպլոմային աշխատանքի պաշտպանությունն էր։ Հանկարծ տեղից ելավ ԳԴՀ-ի ժողովրդական բանակի մի փոխգնդապետ ու հայտարարեց.

— Ես չգիտեմ, թե ինչում է ընկեր Միկոյանի դիպլոմային աշխատանքի նորության էությունը։ Այն գնահատելը ձեր գործն է։ Սակայն զինվորի իմ պարտքն եմ համարում ասել, որ ընկեր Ալեքսեյ Անաստասի Միկոյանը շատ վեհանձն մարդ է...

Ալեքսեյը ճանաչեց «իր» գերմանացուն։

Իրար ընդառաջ եկան ու գրկախառնվեցին։ Այդ օրվանից ԳԴՀ-ի ազգային ժողովրդական բանակի սպա Գուգո Վերներին կոչում են Թալիսման։

... Այս դեպքը տեղի է ունեցել Թուրքեստանյան զինվորական օկրուգում։ Այն ժամանակ ես լեռնահրաձգային գնդի հրամանատար էի։ Գունդը բնակավայրերից հեռու էր գտնվում։ Եվ ահա, մի անգամ ուշ գիշերով ինձ արթնացրեց օպերատիվ հերթապահի տագնապալից զանգը.

— Արտակարգ դեպք է, ընկեր փոխգնդապետ։ Մի քանի հարբած սպաներ ստուգիչ-անցագրային կետում ծեծում են կարգախմբին։

Տագնապով բարձրացնելով հերթապահ վաշտը, ալացա դեպի դեպքի վայրը։ Դժվար է նկարագրել այն, ինչ տեսա. սպայական կոչումներ կրող հարբած դերոշիրներն իսկական ախոռի էին վերածել հերթապահի սենյակը։

Երևի, պետք է զսպեի ինձ, չէ՞ որ նրանք օկրուգի շտաբից էին։ Բանակային առածն ասում է. «Քամուն հակառակ մի թքիր, ղեկավարությանը դեմ մի գնա»։ Բայց եթե այն ժամանակ հանուն անձնական բարօրության լռեի, կկորցնեի մարդկային, հրամանատարական հեղինակությունս ինձ ենթակա սպաների ու զինվորների աչքերում։ Եվ որոշեցի՝ պատիվն ամեն բանից թանկ է։ Իմ հրամանով հերթապահ վաշտի զինվորները մի ակնթարթում դերոշիրներին տարան կայազորային կալանատուն։

Գաղտնահեռագիր ուղարկեցի օկրուգի զորքերի հրամանատարի հասցեով, որին, որպես կայազորի պետ, ենթակա էի անմիջականորեն։ Հաջորդ օրը ստացա պատասխանը՝ ձերբակալվածներին բաց թողնել և ուղարկել Տաշքենդ։

Անցավ մի քանի ամիս։ Վրա հասավ վերահրսկչական ստուգումների ժամանակը։ Մեր կայազոր եկավ սպաների մի խումբ։ Ու գրեթե բոլորի դեմքերը՝ ծանոթ. այն նույն դերոշիրներն էին։

Տեղակալներս մռայլ արձանագրեցին.

— Հրամանատար, նրանք մեզ «երկու» կնշանակեն։

Եվ իսկապես, թեև բանակում շատ հազվադեպ է այդպես լինում, զինվորական օկրուգի հանձնաժողովը մեր առանձին լեռնա-հրաձգային գնդին «երկու» նշանակեց։ Զինված ուժերի համար դա շարքային դեպք չէ։

Սրտի ցավով ստացած գնահատականի մասին գաղտնահեռագիր ուղարկեցի Ցամաքային զորքերի գլխավոր հրամանատարի հասցեով։ Սպասում էի նրա ցուցումներին։ Բայց հրաման ստացա տեղակալներիս հետ մեկնել Տաշքենդ՝ մասնակցելու օկրուգի զինվորական խորհրդի նիստին։ Այն տարիներին զինվորական խորհրդի անդամները սովորաբար նման հարցերը երկար չէին քննարկում. որոշումները հար և նման էին իրար՝ իջեցնել պաշտոնը կամ զինվորական աստիճանը և, ի հավելումն՝ կուսակցական տույժ...

Զինվորական խորհրդի անդամ, օկրուգի քաղաքական վարչության պետ, գեներալ-լեյտենանտ Նիկոլայ Դյոմինը շանթեր էր արձակում։ Գնդի հրամանատարությանն ու անձամբ ինձ ներկայացվում էին ամենածանր մեղադրանքները։ Զմոռացան հատուկ նշել, որ գնդի հրամանատարը մորուք է պահում։ Նիկոլայ Դյոմինին միահամուռ կերպով պաշտպանեցին զինվորական խորհրդի մյուս անդամները։ Բայց, ահա տեղից ելնում է օկրուգի ռազմա-օդային ուժերի հրամանատար, գեներալ-լեյտենանտ Ալեքսեյ Միկոյանը։ Հիշողությանս մեջ մինչև հիմա մնացել են նրա զայրալից խոսքերը օկրուգի զորքերի հրամանատար, բանակի գեներալ Նիկոլայ Լյաշչենկոյի հասցեին.

— Մի՞թե չեք հասկանում, որ մեր գեներալներն ու սպաները իսկական փարիսեցիական կատակերգություն են սարքել սոսկ այն պատճառով, որ կայազորի պետը պարտքի ու պատվի մարդ է ու ձերբակալել է մեր ներկայացուցիչներին՝ չնայելով պաշտոններին ու կոչումներին։ Մի՞թե մեզ համար համազգեստի պատիվն ավելի թանկ է, քան պարզ ազնվությունը, տարրական մարդկայնությունը։ Ես վճռականորեն դեմ եմ այս ներկայացմանը և հրաժարվում եմ վերապահում դիմելու անձամբ պաշտպանության մինիստր Ռոդիոն Յակովլևիչ Մալինովսկուն։

Հազիվ էր Ալեքսեյ Միկոյանը վերջացրել իր ելույթը, երբ վեր կացավ գեներալ-լեյտենանտ Գավրիլ Կամոևը՝ նույնպես մեր հայրենակիցը, որը օկրուգի հրթիռային զորքերի և հրետանու հրամանատարն էր։ Գավրիլ Ստեպանովիչը առաջարկեց ընդհատել նիստը, իսկ նիստի նախաձեռնողին՝ գեներալ Դյոմինին ենթարկել պատասխանատվության։

Օկրուգի զորքերի հրամանատար, նույն ինքը՝ զինվորական խորհրդի նախագահ, բանակի գեներալ Նիկոլայ Լյաշչենկոն, ինձ թվաց հաճույքով հայտարարեց ընդմիջում... մինչև ուշ երեկո։

Ալեքսեյ Միկոյանը մոտեցավ ինձ ու ամուր գրկեց.

— Շնորհակալ եմ, ծերուկ, որ չես վախեցել, չես երկչել պաշտոններից։ Իսկ հիմա քեզ ու քո տեղակալներին հրավիրում եմ ճաշի։

Մինչ մենք ճաշում էինք, Մոսկվայից ստացվել էր գաղտնահեռագիր. Ցամաքային զորքերի գլխավոր հրամանատար, բանակի գեներալ Իվան Պավլովսկին չեղյալ էր հայտարարել մեր գնդին տրված գնահատականը և իր հանձնաժողովն էր ուղարկել՝ ստուգումներն անցկացնելու համար։ Նման բաները չեն մոռացվում։ Չէ՞ որ դա տեղի էր ունենում բազմաթիվ չքանչաններով ու աստղերով զարդարված Լեոնիդ Բրեժնևի «անարյուն պաշտամունքի» կառավարման տարիներին։ Այն ժամանակ ֆիզիկապես չէին ոչնչացնում։ Բարոյապես էին սպանում։

Մեծ Հայրենականի քառասնամյակին լրացավ Ալեքսեյ Միկոյանի 60 տարին։ Նրան վաղուց փոխադրել էին մայրաքաղաք, ծանրակշիռ պաշտոն էին վստահել Գլխավոր շտաբում։ Ծառայության մեջ ամեն բան կարգին էր։ Իսկ ահա անձնական կյանքը, իր իսկ մեղքով, չստացվեց...

Այդ տարի՝ 1985-ին Սովետական բանակի կենտրոնական տանը մի առիթով նա ասաց.

— Սկսել է կյանքից հեռանալ մեր սերնդի լավագույն մասը, սերունդ, որը խիզախ էր մարտերում, շիտակ՝ դատողություններում, անկախ՝ վարքում ու արարքներում...

Ես չհամաձայնեցի մեր սերնդի այդ գնահատականի հետ, քանի որ քիչ էի հանդիպել իրենց վարքում ու արարքներում անկախ մարդկանց, հեշտ չէ ապրել պաշտամունքի ու լճացման տարիներին։ Գուցե նրա՝ քաղբյուրոյի անդամի որդու համար, հեշտ էր...

Այստեղ նա պայթեց.

— Կարծում ես, իմ կյանքը հե՞շտ է եղել։ Շա՛տ ավելի դժվար։ Այն, ինչ դուք չէիք կարող իմանալ այդ տարիներին, ես գիտեի, տեսնում էի։ Ես եղել եմ մարդկային ստորության ու մարդկային արիության ականատեսը...

Նա լռեց։ Կրկին խոսեց երկար դադարից հետո։ Խոսեց մինչ այդ ինձ անծանոթ ձայնով.

— Պատանեկան ու վաղ երիտասարդական տպավորությունները մեր հիշողության մեջ ապրում են իրենց հմայքն ու սրությունը ժամանակի ընթացքում չկորցնող կերպարների տեսքով։ Մանավանդ, եթե այդ տպավորությունները վառ էին ու նոր՝ անկախ այն բանից, որ գահակալում էր բոլոր ժամանակների դահիճ Իոսիֆ Ստալինը կամ զառամախտահար Բրեժնևը։ Մեկը միլիոններով է ոչնչացրել, մյուսի խղճի վրա հազարներ են։ Տուժողների համար տարբերություն չկա... Դու պետք է իմանաս, ծերուկ, միլիոնավոր մարդկանց մեջ, որոնք ականատես եղան կամայականության անպատժելիությանը, կրկին գլուխ բարձրացրեց մարդկանց մսի ու արյան մեջ մտած վախը։ Մի խոսքով, բրեժնևյան ժամանակները՝ նույն ստալինյան ժամանակներն էին, միայն՝ զառամած, հարմարավետ բազկաթոռում նիրհած և երկրի էկոնոմիկայի ու կուլտուրայի հետ միասին, կենդանության օրոք փտել սկսած։ Չէ՛, եղբայրս, իմ կյանքը հեշտ չի եղել։ Չէ՞ որ, ի վերջո, ես Անաստաս Միկոյանի որդին եմ, որի մասին ժողովրդի մեջ ոչ առանց չարահեգնության ասում են. «Իլյիչից մինչև Իլյիչ՝ առանց ինֆարկտ ու պարալիչ...»։ Իսկ գիտե՞ն արդյոք անեկդոտների այդ արարիչները, որ դամոկլյան սուրը միշտ կախված էր Անաստաս Իվանովիչի գլխի վրա։ Չգիտեն։ Եվ դեռ շուտ չեն իմանա...

Հիշում եմ, այն ժամանակ Ալեքսեյ Միկոյանին խնդրեցի պատասխանել իմ մի քանի հարցերին։ Նա խոստացավ՝ ավելացնելով.

— Միայն ճշմարտությունը, ամբողջ ճշմարտությունը, ինչպես ասում էր մեր լեգենդար Հայկ Բժշկյանցը։ Իմիջիայլոց, նրա «Դեպի Վարշավա» գիրքը այն մղձավանջային տարիներին պահում էի շատ օրինավոր մի ընկերոջս մոտ։ Մեր տանը չէր կարելի, ցանկացած ժամի կարող էին վրա հասնել Եժովի, Բերիայի, Սեմիչաստնու մարդիկ... Իսկ հիմա, տու՛ր քո հարցերը։

— Ո՞րն էր քո կյանքի ամենածանր օրը։

— Ծանր օրեր շատ եմ ունեցել։ Բայց, ինչ արած, կընտրեմ միայն մեկը։ Դա ստորու կողմից անիծված 1937 թվականի մայիսն էր։ Կիրակի օր էր։ Գնացի դպրոցական ընկերոջս՝ Դիմա Ռակիտինի մոտ, նախորդ օրը պայմանավորվել էինք մեկնել մեր ամառանոցը։ Բնակարանի վրա կնիք էր դրված։ Բախեցի հարևանների դռները։ Ոչ մեկը չբացեց։ Երբ իջնում էի հինգերորդ հարկից, վերևից ինձ հասավ իմ տարիքի մի տղա. «Նրանց մոտ մեկ ժամ առաջ տարան»։ Ոտքերս ինձ հազիվ հասցրին բակ՝ ծանոթ տաղավարի մոտ։ Եվ հանկարծ բակում տեսա Սվետոչկային՝ Դիմայի քրոջը, նա քնած էր ավազի վրա՝ գլուխը դրած հաստափոր, ծուռթաթ արջուկի վրա։ Լուսամուտի թակոց լսեցի, շրջվեցի. դռնապան քեռի Բորյան մատի շարժումով կանչում էր ինձ։ Պարզվեց, որ երբ

Ռակիտիններին տանում էին, Սվետոչկան փողոցում խաղում էր երեխաների հետ։ Հայրիկներն ու մայրիկները շտապեցին իրենց երեխաներին տանելու. փոքրիկ Սվետոչկան, որ դեռ հինգ տարեկան էլ չկար, դարձել էր հայրենիքի դավաճանի ընտանիքի անդամ։ Այդ ամենին ականատես էր եղել դռնապանը, միտանի թաթար քեռի Բորյան, որին վաղուց էի ճանաչում։ Պատկերացնո՞ւմ ես, մեծ շենքի հսկայական բակ և ավազի վրա քնած փոքրիկ աղջիկ։ Խեղճը դեռ չգիտեր, որ դժբախտությունն արդեն սավառնում էր իր գլխավերևում…

Վերցրի քնած փոքրիկին ու եկա տուն։ Մայրս շտապեց հայտնել հարևաններին, որ…

Այստեղ ես ընդհատեցի նրան.

— Ովքե՞ր էին ձեր հարևանները։

— Կազանովիչները, Կալինինները, Շկիրյատովները, մենք ապրում էինք նույն հարկում։ Ուրեմն, մայրս ասաց նրանց, որ Հայաստանից բերել են մեր զարմուհուն՝ բուժման նպատակով։ Դժբախտությունն այն էր, որ աղջիկը մեկ բառ անգամ չգիտեր հայերեն։ Այդպես «ժողովրդի թշնամի, երկրորդ կարգի բանակային հրամանատար Ռակիտինի» աղջիկը մնաց մեր տանը։ Կես տարի անց Կիսլովոդսկից եկավ մեր ազգականուհին՝ Զարմանդուխտ Օսիպովնա Շահմուրադովան, և իր հետ տարավ մեր Սվետային, որին մենք Անուշ էինք կոչում։ Հիմա նա բժշկական գիտությունների դոկտոր է, արդեն տատիկ։ Իմիջիայլոց, անդրանիկ որդուն կոչել է իմ անունով։ 1956 թվականին նրա հորը հետմահու արդարացրին, ու նա սկսեց կրել Շահմուրադովա-Ռակիտինի ազգանունը…

Ալեքսեյ, դժվար է Անաստաս Միկոյանի որդին լինելը։

— Հեշտ չէ, ավելի շուտ դժվար է, ես կասեի՝ պատասխանատվությունը մեծ է։ Պատերազմի ժամանակ մեջս վախ կար, մշտական վախ, որ հանկարծ թշնամու տարածքի վրա կխփեն իմ մեքենան ու գերի կընկնեմ։ Իմ մասին չէի մտածում։ Մահից չէի վախենում։ Վախենում էի գերության խայտառակությունից։ Համոզված էի, որ եթե գերի ընկնեմ, Լավրենտի Բերիան տեղնուտեղը մատնագիր կպատրաստի Ստալինի անունով, իբր ինքնակամ եմ հանձնվել թշնամուն, և ստալինյան մուրճը կիջնի ամբողջ ընտանիքիս վրա։ Գիտե՞ս, ինչպես է զոհվել եղբայրս՝ Վլադիմիրը. ինչ-որ հրաշքով խփված ինքնաթիռը հասցրել է մերոնց մոտ ու մահացել խցիկում։ Երբ գնում էի պատերազմ, հայրս տանը չէր, մայրս ասաց. «Հիշի՛ր, որդիս, Միկոյանների պատիվը, ճակատագիրը քո ձեռքերում է։ Հիշիր, լավ է զոհվես մարտում, քան գերի ընկնես։ Մյուսներին կարելի է, մեզ՝ ոչ»։

Ալեքսեյը կրկին անսպասելիորեն լռեց։ Երկար ժամանակ լուռ էր։ Ես արդեն կշտամբում էի ինքս ինձ. ինչո՞ւ անհանգստացրի նրա հիշողությունը։ Նրա համար, երևի, հեշտ չէ հիշել անցյալը։ Պատրաստվում էի փոխել խոսակցության նյութը։ Չհասցրի։

— Ընդունված է ասել, որ պատմությունը ստորադասական եղանակ չի ճանաչում։ Ինչ եղել է՝ եղել է, և այլ կերպ չէր կարող լինել։ Բայց դա, ծերուկ, այդպես չէ։ Պատասխանենք պարզագույն մի հարցի։ Եթե չլինեին երեսնական թվականների բռնությունները, մի՞թե երկիրը կապրեր 1941—1942 թվականների ողբերգությունը։ Երբե՛ք։ Ահա դու անընդհատ հարցնում ես կյանքիս ծանր օրերի մասին։ Դե, ուրեմն, լսի՛ր։ 1937 թվականի հուլիսի 5-ն էր։ Եղբորս՝ Վոլոդյայի հետ գնացել էինք մեր Անուշի համար խաղալիք գնելու։ Նա փոքրիկ շոգեքարշ էր ուզում։ Նա այդպիսի շոգեքարշ ունեցել էր. հայրն էր բերել Շվեյցարիայից մեկ տարի առաջ։ Եվ ահա մենք երկրի ամենամեծ հանրախանութում ենք։ Նայում ենք բենզինե պտտույգով նավակին ու թղթազանգվածե ցատկող գորտին։

— Եվ ուրիշ ոչի՞նչ,— հարցրինք մենք։

— Տղաներ, կոնֆիսկատներում եղե՞լ եք։

Մենք չհասկացանք հարցը։ Վաճառողուհին բացատրեց.

— Սրետենկայի վրա է։ Բարձրացեք Կուզնեցկիով, հետո Լուբյանկայով մինչև Սրետենսկի դարպասները՝ ու փողոցի ձախ կողմով՝ մինչև վերջ։ Անկյունի շենքն է…

Թանկարժեք շրջանակների մեջ առնված նկարներով գրեթե ծածկված պատի երկայնքով շարված վաճառասեղանները անկանոն էին թվում։ Մենք ակամայից դանդաղեցրինք քայլերը։ Պատրաստի հագուստեղենի բաժնում զարմացրեց զինվորական համազգեստների առատությունը։ Ճիշտ է, քիչ չէին նաև քաղաքացիական կոստյումները, բայց դրանք չէին երևում, կարծես օտար միջավայր ընկած լինեին։ Մահուդե ֆրենչներ, բարակ շևրոտից ու գաբարդինից զինվորական վերնաշապիկներ, անհատական պատվերներով կարված շքեղ բեկեշներ, կաշվե ռեգլաններ, կապույտ ծովային կիտելներ։ Վաճառասեղանների վրա տարածվել էր հնացած իրերի բույրը։ Հագուստի կողքին կոշկեղենն էր, որ շարված էր ինչպես զինվորական պլացում։ Այստեղ էլ գերակշռում էին զինվորական երկարաճիտ կոշիկները։

Տարիքով մեզանից մեծ երկու գնորդ լուռ դիտում էին առանց պիտակների ու գնաթերթիկների ապրանքները։ Սովորական ժխորի փոխարեն՝ քչփչոց։ Թվում էր, թե այն երկուսը հասկանում էին, որ այստեղ պետք չէ հարցեր տալ։ Խանութ մտնելուն պես մեզ համակած տարօրինակ զգացումը չէր անցնում։ Ի՞նչ է սա։ Աճո՞րդ, կոնֆիսկցիո՞ն։ Ո՞ւմ հարցնել։ Ինչ-որ մեկը անվստահ հայացքով նայում էր կամարաձև հայելու մեջ։ Շոշափում-ստուգում էր, տեղո՞ւմ են արդյոք ֆրենչի ախլակները։ Տրնտղեց գրպանները, կարծես ստուգում էր. նախկին տերը հո բան չի՞ մոռացել։ Լավ չէ։ Քիչ մեծոտ է ֆրենչը։

Ու նայեց մեզ, չկարողանալով առանց կողմնակի խորհրդի որոշել. գնել, թե՞ ոչ։ Ահա արդեն հանել է ֆրենչը, պահում է ձեռքում, հայացքով ընտրելով՝ ո՞ր մեկը փորձի։ Երևի կյանքում առաջին անգամ այդպիսի ընտրության հնարավորություն ուներ։

Տեսանք այն, ինչից վախենում էինք, ինչի մասին կռահումն անգամ սարսռեցնում ու առաջին իսկ քայլերից սեղմում էր քունքերս. ֆրենչի մակակարների վրա երևում էին շեղանկյունների հետքեր։ Այդ ֆրենչի նախկին տերը, հավանաբար բարձրահասակ էր ու լայնաթիկունք։ Վաճառասեղանների վրա, երևի դրված էին նաև նրա կապույտ գալիֆեն ու երկարաճիտ կոշիկները։ Դիվիզիայի՞ հրամանատար էր։ Կորպուսի՞։ Բանակի՞։ Շեղանկյունների աղոտ հետքերը, կարծես, թաքցնում էին նրա զինվորական կոչումը։ Ինչ լավ է, որ այստեղ մենմի հատիկ թույլ լամպ է լարից կախված. պոկված տարբերանշաններով խեղված մակակարների տեսքն անտանելի էր։

Հանկարծ Վոլոդյան ձեռքը դրեց ֆրենչի գրպանին։

— Ալյոշա, հիշո՞ւմ ես։

Այո, ես չէի մոռացել։ Ընդամենը երեք-չորս շաբաթ առաջ բանակի կոմիսար Սահակովը, մեր սիրելի քեռի Օնիկը, մեր տանը նստած էր սեղանի մոտ ու մեր խնդրանքով պատմում էր պատերազմի մասին։ Նրա ծխամորճը հանգել էր, և երբ Վոլոդյան վառեց լուցկին, դրա գլխիկը ֆշշոցով, հետևից ծուխ թողնելով թռավ ու կպավ նրա զինվորական վերնաշապիկի գրպանին՝ Կարմիր Դրոշի շքանշանից մի քիչ ցած։ Ամենաերևացող տեղում փոքրիկ անցք առաջացավ։ Մայրիկն անմիջապես ստիպեց Սահակովին հանել վերնաշապիկն ու կարկատեց…

Չեմ հիշում, թե որքան վճարեցինք վերնաշապիկի համար, փաթաթեցինք ու վազեցինք տուն։ Մայրիկը շոշափեց իր արած կարկատանն ու առաջին անգամ մեր ներկայությամբ չպահեց արցունքները։

— Խե՜ղճ Օնիկ… Խե՜ղճ Օնիկ,— ցածրաձայն լալիս էր նա, մերթ ընդ մերթ առաստաղին ուղղելով հայացքը։ Ամենաբարձրյալից ինչ-որ բան էր, երևի, խնդրում պրոֆեսիոնալ հեղափոխականի կինը, թեև երիտասարդ ժամանակ սովորել էր ճեմարանում։ Այսպես մենք իմացանք հիանալի մարդու, մեր ընտանիքի մտերիմ բարեկամի, բանակային հին քաղաշխատողի, քաղաքացիական պատերազմի հերոս Օնիկ Սահակովի մահվան մասին։

Ալեքսեյը կրկին երկար լռեց։ Սակայն հիմա արդեն կարելի էր հարցեր չտալ. համոզված էի, որ Միկոյանը կշարունակի պատմել.

— Չգիտեմ ինչու, բայց մենք ապահով թաքցրինք քեռի Օնիկի վերնաշապիկը։ Նորից վազեցինք դեպի այն խանութը։ Չեմ կարող այժմ բացատրել մեր որոշումը։ Չգիտեմ։ Բայց մենք գնացինք։

Հանկարծ մեզ հասան թույլ սուլոցներ և կողքի վաճառասեղանի վրա տեսանք մետաղե շրջագծով մարդատար գնացք տանող մի փոքրիկ խաղալիքային շոգեքարշ։

— Սրանից շա՞տ ունեք,— հարցրեց Վոլոդյան։

— Շա՞տ,— զարմացավ աղջիկը։— Միակն է։

Վոլոդյան կռացավ վաճառասեղանի վրա։ «Պատրաստված է Շվեյցարիայում»— կարդաց նա շոգեքարշի վրա։ Փորձում էր էլի ինչ-որ բան գտնել տենդերի վրա։ Գուցե ուզում էր տեսնել ռուսերեն տառերով խզմզված այն տղայի կամ աղջկա անո՞ւնը, որից խաղալիքի հետ միասին խլել էին հայրիկին ու մայրիկին։

Ես անմիջապես ճանաչեցի այդ շոգեքարշը ու անսպասելիությունից, հավանաբար կորցրել էի խոսելու ունակությունը։ Ուշքի եկա և ձեռքս դրեցի եղբորս ուսին։

— Վոլոդյա, սա Դիմկա Ռակիտինի շոգեքարշն է։ Այո, նայիր առաջին վագոնի աջ կողին։

Նա կռացավ, երկար նայեց։

— Այստեղ քո անունն էլ է խզբզած։

Ես լուռ գլխով արեցի, խոսել չէի կարող։

— Վերցնո՞ւմ եք,— հարցրեց աղջիկը,— հիանալի խաղալիք է։

Վոլոդյան դանդաղ շրջվեց, նայեց ուղիղ այդ աղջկա աչքերին ու, առանց կանգ առնելու, մոռանալով թե որտեղ է, ասաց.

— Հավատացեք ինձ, օրիորդ, այս խաղալիքը այլևս երբեք չի կարող հիանալի լինել։ Երբե՛ք։ Բայց մենք կվերցնենք այն, որպես հուշ այս ժամանակների մասին։

Հիշիր, ծերուկ, դա այն անիծյալ երեսունյոթ թվականի հուլիսի 5-ին էր։ Իսկ հաջորդ օրը «Դինամո»-ում մերոնք խաղալու էին բասկերի հետ…

Ցավոք, Ալեքսեյ Միկոյանը չի կարդա այս ակնարկը։ Վերջերս նա հեռացավ կյանքից…

# ՄԻԽԱՅԻԼ ԲԱԿՈՒՆԻՆԸ ԵՎ ՄԻՔԱՅԵԼ ՆԱԼԲԱՆԴՅԱՆԸ

## (Մ. Ա. ԲԱԿՈՒՆԻՆԻ ԾՆՆԴՅԱՆ 175-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)

ՄԻԽԱՅԻԼ ԱԼԵՔՍԱՆԴՐՈՎԻՉ ԲԱԿՈՒՆԻՆԸ (1814—1876) XIX դարի ռուսական ու միջազգային հեղափոխական շարժման ականավոր գործիչներից է։ Երբ դարասկզբին Ռուսաստանում հանգանակություն էր կազմակերպվել նրա հուշարձանի կառուցման համար, լենինյան «Իսկրան» 1903 թ. մայիսի 1-ի համարում գրում էր. «... Չնայած մեր և Մ. Ա. Բակունինի հայացքներում առկա խորը տարբերություններին, մենք կարողանում ենք գնահատել նրանում մի մարդու, որն ամբողջ կյանքում հաստատակամորեն ու անձնուրաց պայքարել է հանուն իր համոզմունքների»։ Ուշագրավ է, որ մոնումենտալ պրոպագանդայի լենինյան պլանի համաձայն 1918 թ. Կրեմլի պատի մոտ կանգնեցվեց հուշաքար, որի վրա ռուս հեղափոխականների փառապանծ անունների շարքում փորագրվեց նաև Բակունինի անունը։

Մ. Բակունինն անցել է գաղափարական զարգացման բարդ ու հակասական ուղի։ Նա նարոդնիկության հիմնադիրներից մեկն էր, սերտորեն կապված էր առաջին «Զեմլյա ի վոլյա»-ի հետ։ Ժամանակակից հետազոտողի բնութագրմամբ, Բակունինը ներկայացնում էր «ուտոպիական սոցիալիզմի հերոսական ժամանակաշրջանի հեղափոխական առաջնորդի կերպարը» (Н. Пирумова. Бакунин М., 1970, с. 392)։ Բնավորությամբ նա վառ, ուժեղ անհատականություն էր։ Լիովին տոգորված հեղափոխական խոյանքով, Բակունինն իր հետևից էր տանում նաև ուրիշներին, և առաջին հերթին՝ հեղափոխականորեն տրամադրված երիտասարդությանը։ Հետագայում Պյոտր Կրոպոտկինը նրա մասին կասի. «Նրա մոգական ուժը, հավանաբար, խարսխվում էր մարդու նկատմամբ հավատի վրա, նա հավատում էր, որ այն մեծ գործը, որին ինքը հաղորդակից էր դարձնում մարդուն, արթնացնելու է վերջինիս մեջ եղած լավագույնը։ Եվ այն իսկապես արթնացնում էր, ու Բակունինի ազդեցության տակ մարդը կարճ ժամանակում հեղափոխությանն էր տալիս այն լավագույնը, ինչին ընդունակ էր» (П. Кропоткин. Анархия, её философия и идеал. М., 1906, с. 62)։ Նրա «մոգական ուժի» ազդեցության տակ ընկավ նաև մեր Միքայել Նալբանդյանը։ Այդ իրողության վրա ժամանակին ուշադրություն է դարձրել Ալ. Մյասնիկյանը «Միքայել Նալբանդյան» իր հայտնի աշխատության մեջ (1919)։ Ըստ նրա, Բակունինի ազդեցությամբ են կանխորոշվում Նալբանդյանի՝ որպես մինչմարքսյան սոցիալիզմի երևելի գործչի «հասարակական դավանանքներն ու սիմպատիաները» (Ալ. Մյասնիկյան, Երկեր, հ. 1, Երևան, 1984, էջ 73)։

Մ. Նալբանդյանը ծանոթանում ու մտերմանում է Բակունինի հետ Լոնդոնում 1862 թ. սկզբին։ Հայ հեղափոխականին հրապուրում էին ամենից առաջ նրա կրակոտ ելույթների հեղափոխական պաթոսն ու խանդավառությունը։ Ինտերնացիոնալ եղբայրության և համերաշխության, ստրկացված ազգերի ազատագրման գաղափարները, Բակունինի խոստովանությամբ, եղել են նրա «idée fixe»-ն ու «գործնական մասնագիտությունը»՝ սկսած Արևմտյան Եվրոպայում 1848—1849 թթ. հեղափոխությունից, որի ակտիվ մասնակիցներից էր։ Այս տրամադրությամբ էլ նա ժամանեց Լոնդոն 1861 թ. դեկտեմբերի վերջին՝ հանդուգն փախուստ կատարելով սիբիրյան աքսորից։ Այդ ժամանակից ի վեր ռուսական հեղափոխությունը՝ որպես բոլոր ճնշված ժողովուրդների փրկության երաշխիք, դարձավ նրա ամբողջ հետագա բուռն հեղափոխական-պրակտիկ գործունեության գլխավոր ու վերջնական նպատակը։

Բակունինի՝ 60-ական թվականների սկզբի գործունեությունը բնութագրելիս հարկ է ձերբազատվել այն բնորոշումներից, որոնց նա արժանացավ հետագայում՝ I Ինտերնացիոնալում իր պառակտչողական գործունեության հետևանքով։ 1864 թ. նոյեմբերի 4-ին Լոնդոնից Ֆ. Էնգելսին գրած նամակում Կ. Մարքսը հիմնականում դրական գնահատական է տալիս ռուս հեղափոխականին՝ վերջինիս համար առավելագույն հոգևոր վերելքի ու խանդավառության այդ ժամանակաշրջանում։ Նկարագրելով իր նոր հանդիպումը Բակունինի հետ (նախորդը տեղի էր ունեցել 1848 թ.), Մարքսը նրա մասին խոսում է որպես «մեկն այն փոքրաթիվ մարդկանցից, որոնք... այս տասնվեց տարվա ընթացքում հետ չեն գնացել, այլ, հակառակը՝ **հետագա զարգացում են ապրել**» (К. Маркс и Ф. Энгельс. Соч., т. 31, с. 13—14։ Ընդգծումը մերն է.— Ս. Դ.)։ Մարքսի այս խոսքերը շատ կարևոր են նաև Նալբանդյանի հետ Բակունինի փոխհարաբերությունների ճիշտ, օբյեկտիվ գնահատման համար, քանի որ նախկինում պատմականության սկզբունքի խախտման, Բակունինի գործունեության միակողմանի լուսաբանման հետևանքով այս հարցում թույլ են տրվել սխալներ։ Այժմ, երբ մեզանում զգալիորեն բարձրացել է հետաքրքրությունը հեղափոխական ժառանգության նկատմամբ, մենք կարող ենք վերականգնել պատմական ճշմարտությունը ցարական Ռուսաստանի ժողովուրդների և Արևմտյան Եվրոպայի ճնշված ժողովուրդների ազգային-ազատագրական շարժման վերելքի ժամանակաշրջանում Նալբանդյանի հետ Բակունինի բարեկամության ու համագործակցության մասին։

Լոնդոն գալուն պես Բակունինն ակտիվորեն ներգրավվում է ռուս հեղափոխական էմիգրացիայի գործունեության մեջ, որը գլխավորում էին Ա. Գերցենը և Ն. Օգարյովը։ Բակունինի նոր ծանոթությունների լայն շրջանակի ուղեծրում հայտնվեց նաև Նալբանդյանը, որը հաճախ էր լինում «Կոլոկոլի» հրատարակիչների տանը։ Պատահական չէ, որ Ն. Ա. Տուչկովա-Օգարյովան շատ տարիներ անց հիշատակում է Նալբանդյանին հենց Բակունինի իրենց մոտ գալու կապակցությամբ. «Բակունինի Լոնդոնում եղած ժամանակ Ռուսաստանից եկածների մեջ հիշում եմ Նալբանդով անունով մի հայի... Բակունինը վերջնականապես իր ազդեցության տակ գցեց նրան. ամեն օր շրջում էր նրա հետ Լոնդոնում...» (Н. А. Тучкова-Огарева. Воспоминания. М., 1956, с. 189—190)։

Լոնդոն գալուց հետո գրված առաջին իսկ հոդվածում՝ «Ռուս, լեհ և բոլոր սլավոն բարեկամներին» («Կոլոկոլ», 15. 02. 1862 թ.) Բակունինը, պատասխանելով Օգարյովի «Ի՞նչ է պետք ժողովրդին» ծրագրային հոդվածում դրված հարցին, հաստատակամորեն հայտարարում էր. «Կրկնում եմ **Կոլոկոլի հետ միասին՝ հող և կամք»։** Ընդլայնելով «Զեմլյա ի վոլյա» հեղափոխական ընկերության մարտական լոզունգի աշխարհագրական ու ազգային շրջանակները. նա ամենայն սրությամբ դիմակազերծում էր ցարիզմի գաղութային քաղաքականությունը Ռուսաստանի բոլոր՝ այդ թվում նաև Կովկասի, ժողովուրդների նկատմամբ, և սոցիալական ու ազգային ճնշումից նրանց ազատագրումը կապում էր Ռուսաստանի ազատագրման հետ (դա մտնում էր նաև Նալբանդյանի ծրագրերի մեջ)։ **«Ազատագրված ռուս ժողովուրդը,—** գրում էր Բակունինը,— **եղբայրական ձեռք կմեկնի իր հետ ազատագրված բոլոր ազգություններին»** (Ընդգծումը մերն է.— Ս. Դ.)։ Երբ արտասահմանից վերադառնալուց հետո Նալբանդյանին ձերբակալեն, նրա մոտ կգտնեն այս հոդվածի առանձնատիպն ու կկցեն գործին։

Մի ուրիշ հոդվածում՝ «Մի քանի խոսք ճնշված սլավոններին» («Կոլոկոլ», 08. 04. 1862 թ.), Բակունինը, դիմելով թուրքական ու ավստրիական լծի տակ տառապող սլավոնական ժողովուրդներին, հարցնում էր. «Ձեզ դաշնակիցնե՞ր են պետք։ Ձեռք մեկնեք ձեր հարևաններին՝ ռումիններին, **հայերին,** որոնք այժմ ապստամբել են հանուն իրենց անկախության» (Ընդգծումը մերն է.— Ս. Դ.)։ Կասկածից վեր է, որ «հայերի» հիշատակումը հոդվածում Բակունինի զրույցների արդյունքն է Նալբանդյանի հետ, որն անշուշտ պատմել էր ընդդեմ թուրքական լծի արևմտահայ հայրենասերների պայքարի մասին (Ա. Սվաճյանի— Ս. Թագվորյանի խումբը), որի վկան ու կազմակերպիչներից մեկն էլ Նալբանդյանն էր։

Բակունինը վաղուց էր իր մեջ կրում Ռուսական, Ավստրիական ու Թուրքական կայսրությունների ոչնչացման, աշխարհի

ԴԱՐՈՆՅԱՆ ՍԵՐԳԵՅ ԿԱՐԱՊԵՏԻ— *Բանասիրական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր, Վ. Բրյուսովի անվան ռուսաց և օտար լեզուների մանկավարժական ինստիտուտի ռուս գրականության ամբիոնի վարիչ։*

բոլոր ստրկացված ժողովուրդների ազատագրման ծրագրերը: Դրա շնորհիվ էլ նա կարողացավ իր հետևից տանել Նալբանդյանին ու վերջինիս բազմաթիվ նոր բարեկամներին, որոնք Նալբանդյանի հետ կիսում էին իրենց հայրենիքի փրկության հույսերը: Այս առումով հետաքրքրական է 1862 թ. մայիսի 10-ին Լոնդոնից Գարիբալդիին հղված Բակունինի նամակը, որը հայտնաբերվել էր Բակունինի կողմից Գարիբալդիի մոտ ուղարկված լոնդոնյան գործակալ Ա. Նիչիպորենկոյի ձերբակալման ժամանակ (Նալբանդյանը Նիչիպորենկոյին հանդիպել է Փարիզում՝ Ի. Տուրգենևի մոտ): «Որտեղի՞ց կսկսվի շարժումը,— հարցնում էր Բակունինը:— Գուցե ազդանշան տա Ֆրանսիայի փառասիրությու՞նը կամ ներքին հանգամանքնե՞րը: Գուցե սկզբում դա կլինի իտալական, մադյար, սլավոն, հայ և հույն ժողովուրդների ապստամբությու՞ն: Կամ գուցե այնուամենայնիվ ռուսակա՞ն հեղափոխություն: Սա է խնդիրը: Համենայն դեպս, ներդնենք բոլոր ջանքերը, որպեսզի այդ ապստամբությունները նպաստեն ու հասնեն նույն նպատակին՝ Իտալիայի լիակատար ազատագրում, **ամբողջ Արևելքի ապստամբություն և ազատագրում:** Պետք չեն Ավստրիան և գերմանական տիրապետությունը, բայց միևնույն ժամանակ Ռուսաստանում պետք չեն նաև ցարիզմն ու կայսրությունը: Այդ ամենի տեղում՝ **բոլոր ազատ ժողովուրդների ինքնավարություն և ֆեդերացիա»** (Мих. Лемке. Очерки освободительного движения «шестидесятых годов». СПб., 1908, с. 87: Ընդգծումը մերն է.— Ս. Դ.):

Եվ կրկին Բակունինը (հիմնվելով, անշուշտ, Նալբանդյանի «հուշած» տեղեկությունների վրա) այն ժամանակ ծավալված հայոց ազգային շարժումը մտցնում է Ռուսաստանի, Արևմտյան Եվրոպայի ու Մերձավոր Արևելքի ժողովուրդների ազատագրական պայքարի կոնտեքստի մեջ՝ առանձնահատուկ նշանակություն տալով իտալական ժողովրդի՝ Գարիբալդիի ղեկավարած պայքարին: Այդ նպատակով Բակունինը ձգտում էր իր հայ բարեկամին հաղորդակից դարձնել Իտալիային նվիրված նորագույն գրականությանը: Այդ մասին տեղեկանում ենք հետաքննության ժամանակ Պետրոպավլովյան ամրոցում Նալբանդյանի տված ցուցմունքներից: Հատուկ քննչական հանձնաժողովի «Ի՞նչ բրոշյուր եք... խնդրել Բակունինին ուղարկել ձեզ Լոնդոնից» հարցին բանտարկյալը պատասխանել է. «Ես խնդրել էի Բակունինին ուղարկել ինձ ոմն Չիխաչովի բրոշյուրը Իտալիայի մասին, բայց նա այդ ինձ չուղարկեց» (Մ. Նալբանդյան, ԵԼԺ, հ. 3, Երևան, 1940, էջ 402—403):

Հետաքրքիր խոստովանություն, որը նախկինում չի արժանացել նալբանդյանագետների ուշադրությանը: Բակունինի կողմից բրոշյուրի հեղինակի ընտրությունը պատահական չէր և, դատելով ըստ ամենայնի, Չիխաչովի մասին նա Նալբանդյանին պատմել էր դեռևս լոնդոնյան հանդիպումների ժամանակ: Պ. Չիխաչովը (1808—1890) ականավոր ռուս բնախույզ-գիտնական ու արևելագետ էր, որի մի շարք գիտարշավներ էր կազմակերպել Արևմտյան Եվրոպայի, Ասիայի և Աֆրիկայի երկրներում: Ավելի քան քսան տարի Չիխաչովը ճանապարհորդել է օսմանյան կայսրությունում, ութ անգամ գիտարշավ է կազմակերպել դեպի Փոքր Ասիա ու Հայաստան, և այդ ամենի արդյունքը հանդիսացավ համաշխարհային ճանաչման արժանացած նրա «Փոքր Ասիա» աշխատությունը, որը ֆրանսերեն հրատարակվել է Փարիզում (1853—1869): Նա հրատարակել է նաև Հայաստանին նվիրված մի շարք աշխատանքներ, այդ թվում՝ «Փոքր Ասիայի և Հայաստանի բարձրլեռնային բուսականության հետազոտությունը» (Փարիզ, 1857) և ավելի ուշ՝ «Ճանապարհորդություն Փոքր Ասիայում և Հայաստանում» (Բեռլին, 1867): Նալբանդյանի ցուցմունքներում հիշատակված «Իտալիայի մասին» Չիխաչովի բրոշյուրը կարող է լինել այդ ժամանակ Փարիզում արդեն տպված նրա երկու գրքերից մեկը՝ «Իտալիան և Թուրքիան» (1859) կամ «Իտալիայի պետությունը» (1862):

Չիխաչովի գործերը, որոնք տոգորված էին մատերիալիստական ոգով, ժամանակին եղել էին Բելինսկու ու Չեռնիշևսկու տեսադաշտում: Չիխաչովը, որը դավանում էր առաջադիմական հայացքներ (նրա մայրը հայտնի դեկաբրիստ Մ. Պ. Բեստուժև-Ռյումինի մոտիկ ազգականն էր), ստիպված էր կյանքի մեծ մասն անցկացնել արտասահմանում՝ սերտ կապեր պահպանելով ռուս քաղաքական վտարանդիների հետ, այդ թվում նաև՝ լոնդոնաբնակ: Նա հետևողականորեն հանդես էր գալիս որպես իտալացիների և մյուս ճնշված ժողովուրդների ազգային-ազատագրական պայքարի կրքոտ կողմնակիցը: Դրանով էլ գիտնական ու արևելագետ էր, որը մի ջոցով՝ նաև Նալբանդյանի ուշադրությունը: Անդրադառնալով Իտալիայի իրադարձություններին, 1859 թ. Չիխաչովը գրում էր. «Հեշտ էր ենթադրել, որ պայքարը կանգ չի առնի իր զարգացման մեջ... Ազատությունն ու քաղաքակրթությունը կհաղթանակեն միայն հեղափոխական պայքարի օգնությամբ» (մեջբերումը ըստ՝ П. А. Чихачев. Страница о Востоке. Пер. с франц. М., 1962, с. 13 գրքից):

Ռուսաստանում 1861 թ. գյուղացիական ռեֆորմի նախօրեին արդեն հիշատակված «Իտալիան և Թուրքիան» գրքում Չիխաչովը գրում էր, որ Ռուսաստանյան կայսրությանը «անհրաժեշտ է գրեթե ամեն ինչ վերակառուցել», և ամենից առաջ պետք է «ազատություն շնորհել ճորտերին» (П. А. Чихачев. Великие державы и Восточний вопрос. Пер. с франц. и немец. М., 1970, с. 148—149):

Վերջապես, Չիխաչովի աշխատություններում, ինչպես և Բակունինի ու Նալբանդյանի ելույթներում «արևելյան հարցը» անխզելիորեն կապված էր սուլթանական լծի տակ տառապող տարբեր ժողովուրդների, այդ թվում նաև հայերի ազգային շարժման հետ: «Հանդես գալով ի պաշտպանություն հայերի, հույների և քրիստոնեություն դավանող այլ ազգությունների ներկայացուցիչների, Չիխաչովը միևնույն ժամանակ պարզ տեսնում է, որ ազգային թշնամանքը կառավարող շրջանների կողմից հրահրվող արհեստական երևույթ է...» (В. В Цыбульский. П. А. Чихачев-исследователь, путешественник. М., 1961, с. 116):

Այսպիսով, Բակունինի վառ, ակտիվ անհատականությունը չէր կարող չհրապուրել Նալբանդյանին, որը նույնպես տոգորված էր հեղափոխական պոռթկումով ու հարազատ ժողովրդի ազատության ծարավով: Բակունինի նկատմամբ իր վերաբերմունքը նա արտահայտել է «Երկրագործությունը որպես ուղիղ ճանապարհ» բրոշյուրում, որը գրվել է Լոնդոնում ու հրատարակվել 1862 թ. գարնանը Փարիզում: Անդրադառնալով Ռուսաստանի դրությանը տխրահռչակ գյուղացիական ռեֆորմից հետո, Նալբանդյանը մեջբերում է «Կոլոկոլ»-ում (22. 03. 1862 թ.) հրատարակված տվերյան ազնվականության խնդրի լրիվ տեքստը (ընդ որում, առանց նշելու հրատարակության աղբյուրը), որպես «վերևներում» հակասությունների ուժեղացման վկայություն: Խնդրի տեքստի ծանոթագրություններում նա հայտնում է, որ «տվերյան գործով» ձերբակալվածների ու Պետրոպավլովյան ամրոցում բանտարկվածների մեջ էին նաև «երկու եղբարք... այն երևելի Մ. Ա. Պաքունինին...», որ իբրև առաջնորդ գերմանական ապստամբության (1848) բռնվեցավ Տրեզտենի մեջ և ութը տարի բանտ մնալեն և չորս տարի Սիպերիա աքսոր կրելեն ետքը, հրաշքով մը ազատություն գտնելով, Ճաբոնի և Ամերիկայի վրայով Լոնդրա հասավ...» (Մ. Նալբանդյան, ԵԼԺ, հ. 4, Երևան, 1983, էջ 57):

Բակունինին տրված Նալբանդյանի բնորոշումը որպես «գերմանական ապստամբության առաջնորդի» համընկնում է «Հեղափոխությունն ու հակահեղափոխությունը Գերմանիայում» (1851—1852) աշխատության մեջ Ֆ. Էնգելսի տված գնահատականին, ուր նշվում է, որ Դրեզդենի բանվորները բարիկադների վրա «ընդունակ ու սառնարյուն հրամանատար գտան իմ դեմս ռուս վտարանդի Միխայիլ Բակունինի» (К. Маркс и Ф. Энгельс. Соч., т. 8, с. 105—106): Իսկ Բակունինի մասին տեղեկությունները Նալբանդյանը քաղել էր անձնական զրույցներից, ինչպես նաև Գերցենի «Մ. Ա. Բակունին» հոդվածից, որը որպես առաջնորդող տպագրվել է «Կոլոկոլ»-ում (15. 01. 1862 թ.) սիբիրյան աքսորից փախուստից հետո Բակունինի Լոնդոն գալու կապակցությամբ: «Բակունինը,— գրում էր Գերցենը,— մեզ մոտ է գալիս ռուս ժողովրդի հանդեպ Կրկնապատկված սիրով, հույսի և ուժի անխորտակելի էներգիայով...»: Իսկ մինչ այդ, նա գրել էր, որ Բակունինը «ծնվել է միսիոներ, պրոպագանդիստ, հոգևորական լինելու համար» (А. И. Герцен. Собр. соч. в 30-ти., т., т. VII, с. 352—354): Պատահական չէ, որ նրան կոչում էին «տիեզերական ագիտատոր»:

Նալբանդյանի, ինչպես և Բակունինի համար հայ ժողովրդի ազատագրումը անբաժանելիորեն կապված էր նախ և առաջ ռուս ժողովրդի ազատագրական շարժման հաջողությունից: Դա է պատճառը, որ Նալբանդյանը՝ հետևելով Բակունինին, նույն այն փարիզյան բրոշյուրում գրում էր. **Ռուսիո մեջ խմորված ազատությունը համարձակ կարելի է մարդկային ազատություն անվանել...** քանզի ոչ միայն ինքը ռուսը կուզե իր ազատությունը, այլ՝ կքարոզե թե Լեհաստան, Ֆինլանդիա, Փոքր Ռուսիա (15 միլիոն ժողովուրդ), Կովկաս, Վրաստան և Հայաստան պետք է, որ ազատ... ըլլան... **Ռուսիո ազատությունը, ընդհանուր մարդկության ազատության վերաբերությամբ, մե՞ծ խորհուրդ ունի...»** (Մ. Նալբանդյան, ԵԼԺ, հ. 4, 1983 թ., էջ 57. Ընդգծումը մերն է.— Ս. Դ.):

Գիտենալով Նալբանդյանի «Երկրագործության» հեղափոխական ուղղվածության մասին, Բակունինը Օգարյովի հետ միասին ամենաանմիջական մասնակցությունն է ունեցել այն գաղտնի ճանապարհով Ռուսաստան անցկացնելու գործին: Խոհարարական գրքի շապիկով քողարկված բրոշյուրի մի քանի օրինակ ուղարկվեց Պետեր-

բուրգ՝ հեղինակին հանձնելու համար, սակայն դրանք ընկան ցարական ոստիկանության ձեռքն ու կցվեցին Նալբանդյանի գործին: Հատուկ քննչական հանձնաժողովը, ծանոթանալով Նալբանդյանի բրոշյուրի հակիրճ թարգմանության հետ, եկավ այն եզրակացության, որ դրանում «պախարակվում է Ռուսաստանում և այլ պետություններում գոյություն ունեցող կառավարման կարգն ու հասարակական կառուցվածքը» (Микаэл Налбандян. Сборник документов. Ереван, 1956, с. 211):

Նալբանդյանի հետ Բակունինի նամակագրությունից (որը նույնպես ընկել էր ոստիկանության ձեռքը) իմանում ենք, որ Լոնդոնի կենտրոնը Նալբանդյանին համարում էր Ռուսաստանի հարավում, Կովկասում և Թուրքիայում «Կոլոկոլ»-ի և այլ հեղափոխական գրականության տարածման հուսալի գործակալ: Եվ այդ գործում հայ հեղափոխական դեմոկրատին ներգրավել էր Բակունինը, որն ապրում էր, Գերցենի բառերով ասած, «հեղափոխական արբունքի մեջ»:

1862 թ. մայիսի 6-ին Նալբանդյանին հղած նամակում Բակունինը հայտնում էր. Լոնդոնում «մտերմացել եմ մի միանգամայն լավ ու օգտաշատ մարդու հետ»: Խոսքը Ն. Ի. Վորոնովի մասին էր, որը մինչ այդ ուսուցչություն էր անում Հյուսիսային Կովկասում, իսկ արտասահմանից վերադառնալուց հետո գնալու էր Թիֆլիս: Բակունինը Նալբանդյանին հանձնարարում էր սովորեցնել Վորոնովին, թե ինչպես կարելի է Լոնդոնի հետ նամակագրական կապ պահպանել Պետերբուրգի, Մոսկվայի, ինչպես նաև Օդեսայի, Թիֆլիսի ու Կոնստանդնուպոլսի միջոցով: Եվ ավելացնում էր. «Նա (Վորոնովը— Ս. Դ.) պետք կգա և՛ եվրոպական, և՛ ասիական կապի համար» (Մ. Նալբանդյան, ԵԼԺ, հ. 5, Երևան, 1984, էջ 351):

Մինչև վերջերս Ն. Վորոնովի մասին խոսում էին միայն Նալբանդյանին ուղղված Բակունինի նամակների կապակցությամբ, որոնցում հիշատակվում է նրա անունը և որոնք էլ առիթ հանդիսացան նրան ձերբակալելու համար: Լենինգրադցի պատմաբան Ի. Պ. Լեյբերովի «Ցեբելդինյան գյուտը: Պետերբուրգի և Կովկասի հեղափոխական կապերի պատմությունից» (Մոսկվա, 1976, 1980) գրքի լույս տեսնելուց հետո զգալիորեն ընդլայնվեցին մեր պատկերացումները Նիկոլայ Իլյիչ Վորոնովի (1832—1888)՝ Ռուսաստանում 60-ական թվականների ազատագրական շարժման երևելի գործչի, հրապարակախոսի, խմբագրի, կովկասագետի մասին: Նալբանդյանի պես նա էլ գտնվում էր Բակունինի «մոգական ուժի» ազդեցության տակ: «Առաջին իսկ հանդիպման ժամանակ,— պատմում էր Վորոնովը,— նա (Բակունինը— Ս. Դ.) իր համար շահեկան տպավորություն թողեց: Նրա վիթխարի կերպարանքը, նրա ծերունական, դեռևս պատանեկան ոգեշնչվածությամբ լի տեսքը իմ մեջ ակամա համակրանք ծնեցին նրա դատողությունների հանդեպ...» (մեջբերումը ըստ՝ И. П. Лейберов. Цебельдинская находка, изд. 2-е, М., 1980, с. 68 գրքի):

Գնալով Նալբանդյանին հասցեագրված Բակունինի նամակների հետքերով, նաև հիմնվելով Վորոնովի նախկին փոքր կալվածքում՝ Ցեբելդեում (Սուխումի մոտ) հայտնաբերված արխիվային նյութերի վրա, Ի. Պ. Լեյբերովը ցույց տվեց, որ Վորոնովը ակտիվորեն մասնակցել է «Զեմլյա ի վոլյա» հեղափոխական ընկերության գործունեությանը, եղել է լոնդոնյան «Կոլոկոլ»-ի և պետերբուրգյան «Ռուսսկոյե սլովո»-յի թղթակիցը: Հետաքրքրություն է ներկայացնում «Ռուսսկոյե սլովո» հանդեսում (1861, № 11) տպագրված Վորոնովի «Նավարկություն Սև ծովի արևելյան ափերի մոտ (Հարավային Ռուսաստանի մասին ճամփորդական նոթերից)» ակնարկը: Այստեղ քողարկված ձևով շարադրվում է Թուրքիայից Կովկաս «արգելված ապրանք» (հիմա՝ գրականության) անցկացման եղանակը: Հետագայում ակնարկի հեղինակը Լոնդոնում Բակունինին պատմելու է այդ մասին, վերջինս էլ 1862 թվականի մայիսի 10-ի նամակով հաղորդելու է Նալբանդյանին: Շարադրելով իր երկու գործակալների՝ Նալբանդյանի և Վորոնովի համատեղ գործողությունների ծրագիրը, Բակունինը Նալբանդյանին ծանոթացնում էր Կոնստանդնուպոլսով ու Տրապիզոնով Կովկասյան երկրամաս լոնդոնյան «ապրանքի» ու նամակների անցկացման Վորոնովի առաջարկած պլանին: Բակունինը Նալբանդյանին խորհուրդ էր տալիս նամակն ստանալուն պես գրել Կոնստանդնուպոլիս՝ յուրայիններից մեկին, «գործարար և առևտրական մի մարդու», որին կարելի էր վստահել (նա նկատի ուներ Նալբանդյանի զինակից Հարություն Սվաճյանի խմբագրած «Մեղու» հանդեսի շուրջը խմբված, այսպես կոչված «երիտասարդների կուսակցությունը»): Բակունինը խնդրում էր նաև հանձնարարական տալ Վորոնովին, թե Թիֆլիսում ում դիմի Կոնստանդնուպոլսի հետ կապվելու համար: Նամակի վերջում նա գրում է. «Աշխատեք գլուխ բերել այս գործը, սիրելի բարեկամ, միայն ես չէ, ինքը Privat-ը



(Գերցենը— Ս. Դ.) նույնն է խնդրում Ձեզանից... Նրա (Վորոնովի— Ս. Դ.) համար մենք պատասխանատու ենք Ձեզ, և նա պատրաստ է ծառայել Ձեր շահերին ճիշտ այնպես, ինչպես մեզ է ծառայում» (Մ. Նալբանդյան, ԵԼԺ, հ. 5, 1984, էջ 358):

Պետք է ասել, որ քննչական հանձնաժողովը, ծանոթանալով Նալբանդյանի մոտ խուզարկության ժամանակ գտնված Բակունինի նշված նամակներին, վերջինիս ու Վորոնովին բնութագրեց որպես «լոնդոնյան վտարանդիների» ակտիվ գործակալներ: 1862 թ. օգոստոսի 14-ին Հատուկ քննչական հանձնաժողովի նախագահ իշխան Ա. Ֆ. Գոլիցինը Կովկասի փոխարքայի պաշտոնակատարին է ուղարկում քաղվածքներ «Ս.— Պետերբուրգի համալսարանի թեկնածու Միխաիլ Նալբանդովին» հասցեագրված «ռուս վտարանդի Բակունինի» նամակներից, ինչպես նաև գաղտնի նամակ, որում վկայակոչելով կայսրի «գերագույն կամքը» պահանջում է շտապ «նախազգուշական միջոցներ» ընդդեմ «Կովկասում իր ստեղծագործությունները տարածելու լոնդոնյան պրոպագանդայի ձգտման» (Մ. Նալբանդյան, ԵԼԺ, հ. 4, Երևան, 1949 թ., էջ 319):

Լոնդոնյան կենտրոնում անկեղծորեն վշտացած էին Նալբանդյանի ու Վորոնովի ձախողմամբ՝ մեղադրելով Բակունինին, որը խախտել էր նամակագրության մեջ կոնսպիրացիայի տարրական նորմերը: Գերցենը վրդովված գրում էր նրան 1863 թ. սեպտեմբերի 1-ին. «Շատախոսությամբ դու կործանեցիր ոչ միայն Նալբանդովին, այլև, օրինակ, **Վորոնովին.** Նալբանդովին ուղղված նամակում նրա մասին քո անհարկի նշումը նրան Կովկասից գցեց նախ ամրոց, իսկ հետո՝ աքսոր» (А. И. Герцен. Собр. соч. в 30-ти т., т. XXVII, с. 371):

Հետաքրքիր է Վորոնովի՝ Բակունինի էմիսարներից մեկի, հետագա ճակատագիրը: Լուրջ հանցանշանների բացակայության պատճառով 1863 թ. մայիսին նա ազատվեց Պետրոպավլովյան ամրոցից և համաձայն սենատի դատավճռի մեկնեց «տաք Սիբիր»՝ Անդրկովկաս, ուր ոստիկանությունը խստագույնս հսկում էր նրան: Սակայն նրա հեղափոխական լիցքը չըսպառվեց նաև հետագա տարիներին: Թիֆլիսում նա սերտ կապեր է հաստատում Ի. Ճավճավաձեի, Ն. Նիկոլաձեի, Գ. Ծերեթելու և վրաց մշակույթի ու առաջադեմ հասարակական մտքի այլ երևելի գործիչների հետ: 1877 թվականից Վորոնովը խմբագրում է Թիֆլիսի «Կովկաս» թերթը: «Արդյո՞ք մենք իդեալներ ունենք» հոդվածում («Կովկաս», 25. 01. 1877 թ.), բնութագրելով վաթսունականների սերունդը, նա գրում էր. «Նրանք համոզմունքների տեր մարդիկ էին, որոնք ջերմորեն հավատում էին իրենց վեհ իդեալներին, իրենց ժողովրդի ուժին, պատանի սերնդի ունեցած բանականության ու ազնվության, բարության ու ճշմարտության մեծ պաշարին: Նրանք ոչինչ չէին խնայում իրենց իդեալները կենսագործելու համար, ամբողջովին կլանված էին դրանցով, ինչպես սիրասուն զավակով... Եվ այդ մարդիկ կատարեցին այնպիսի հսկայական աշխատանք, որը կբավարարեր մի քանի սերունդների համար»: Այդ սերնդին էին պատկանում նաև Բակունինի էմիսարները՝ Վորոնովը և Նալբանդյանը:

Շարունակելով իրենց հոր գործը, Վորոնովի զավակները՝ որդին ու երեք դուստրերը, ակտիվորեն մասնակցում էին Պետերբուրգի ու Անդրկովկասի հեղափոխական շարժմանը: Կրտսեր դուստրը՝ Լյուդմիլա Նիկոլաևնա Վորոնովան (1879—1967), մտնելով բոլշևիկյան կուսակցության մեջ, հանդիպել է Վ. Ի. Լենինի, Ստ. Շահումյանի, Մ. Ցխակայայի, Ե. Ստասովայի հետ: Նա շարունակեց ու մեր օրերը հասցրեց «գալիք փոթորկի ղեկապետների» էստաֆետը...

Նալբանդյանի հետ Բակունինի նամակագրությունը լույս է սփռում ոչ միայն նրանց հեղափոխական-պրակտիկ գործունեության, այլև նրանց անձնական փոխհարաբերությունների վրա՝ կապված Բակունինի կնոջ՝ Իրկուտսկից Լոնդոն տեղափոխվելու կազմակերպման հետ: Ձեռնարկվածը, ինչ խոսք, հույժ դժվար ու վտանգավոր գործ էր, քանի որ սիբիրյան աքսորից փախած Բակունինին ցարական կառավարությունը քաղաքական հանցագործ էր համարում: Չցանկանալով վտանգի ենթարկել Նալբանդյանին, Գերցենը 1862 թ. ապրիլի 21-ի նամակում խնդրում է Տուրգենևին. «Մի թող, որ նա իր հետ այստեղ բերի Բակունինի կնոջը» (А. И. Герцен. Собр. соч. в 30-ти т., т. XXVII, с. 218): Սակայն բարի, գթասիրտ Նալբանդյանը հանձն առավ (Տուրգենևի հետ միասին) օգնել Բակունինին, որը ծանր էր տանում հարկադիր բաժանումը սիրած ընկերուհուց: Գրեթե յուրաքանչյուր նամակում նա թախանձագին խնդրում էր Նալբանդյանին արագացնել կնոջ գալուստը: «Աստծու սիրուն, վերադարձրեք ինձ իմ սիրելի կնոջը, բերեք նրան ինձ մոտ Լոնդոն» (Մ. Նալբանդյան, ԵԼԺ, հ. 5, 1984 թ., էջ 361): Նալբանդյանը, որն ինքն էլ նյութական սուղ վիճակում էր, այդ գործի համար 300 ռուբլի պարտքով տալիս է Տուրգենևին: 1862 թվա-

կանի վերջին Ա. Կ. Բակունինային Տուրգենևի ու Նալբանդյանի օգնությամբ ի վերջո հաջողվում է դուրս գալ Իրկուտսկից՝ նախ Պրեմուխինո (Բակունինների տոհմական կալվածքը Տոլայի նահանգում), իսկ հետո՝ Լոնդոն, ուր նա հաստատվեց Գերցենի տանը (Բակունինն այդ ժամանակ Շվեդիայում էր): Հիշելով նրա գալուստը, Ն. Ա. Տուչկովա-Օգարյովան գրում էր. «Նրանում շատ էր մանկականն ու միամիտը, բայց նաև՝ գրավիչն ու անկեղծը» (Н. А. Тучкова-Огарева. Воспоминания, с. 196):

Սրտառուչ էր նաև Բակունինի վերաբերմունքը Նալբանդյանի նկատմամբ, որի մեջ թոքախտն այդ ժամանակ ավելի էր սրվել: Հավանաբար, գիտակցելով իր մեղքը Նալբանդյանի ձախողման ու դրան հետևած ձերբակալության համար, նա 1862 թ. հոկտեմբերի 5-ի նամակում հարցնում է Տուրգենևին. «Իսկ Նալբանդովը. Ի սեր աստծո, փորձիր որևէ բան իմանալ նրա ճակատագրի մասին... Նալբանդովն անմեղ է, կապեր չունի, և նա կրծքից թույլ է, իսկ կրծքային հիվանդների համար ամրոցը լավ չէ: Իմացիր, ինչ հնարավոր է, ու տեղեկացրու ինձ...» Мих. Лемке. Очерки..., с. 169): Բակունինը ինքն էլ մի քանի տարի նստել էր Պետրոպավլովյան ամրոցում, և լավ գիտեր, թե դա ինչ է նշանակում: Հոկտեմբերի 23-ին նա կրկին հարցնում էր Տուրգենևին: «Իմ մյուս հոգսը Նալբանդովն է.ասում են, նա եղել է Պետրոպավլովյան ամրոցում, իսկ հիմա անհետացել է, ոչ ոք չգիտե, թե ուր: Իմացիր, Տուրգենև» (Նույն տեղում, էջ 171): Դրանք Բակունինի վերջին նամակներն էին, որոնցում հիշատակվում էր Նալբանդյանի անունը: Որքան ցավ, կարեկցանք ու տագնապ կա դրանցում ամրոցի բանտարկյալի ճակատագրի համար:

Տուրգենևը Բակունինին պատասխանել է հոկտեմբերի 28-ին Փարիզից. «Երեկ ստացա քո նամակը (հոկտեմբերի 23-ինը— Մ. Դ.) և այսօր մի երկու խոսք գրում եմ, որպեսզի հավատացնեմ քեզ, որ **անմիջապես ձեռնամուխ կլինեմ** քո կնոջ ու Նալբանդովի հետ կապված քո ցանկացածի կատարմանը, և հնարավորին չափ կաշխատեմ վերջապես հանգստացնել քեզ: Այդ բանում, ինչպես և մնացած ամեն ինչում դու կարող ես վստահորեն հույս դնել իմ հին համակրանքի վրա, որը, փառք աստծո, կախված չէ ոչ մի տեսակ քաղաքական հայացքներից» (И. С. Тургенев. Полн. собр. соч. и писем. Письма, т. IV. М.—Л., 1962, с. 60): Փարիզում, իսկ հետո նաև Պետերբուրգում Տուրգենևը բազմաթիվ հանդիպումներ է ունեցել Նալբանդյանի հետ՝ Բակունինի կնոջը Լոնդոն տեղափոխելու կազմակերպման գործով: Սակայն Նալբանդյանի և «լոնդոնյան պրոպագանդիստների» (Գերցենի, Օգարյովի, Բակունինի) հետ կապված լինելու մեղադրանքով այլ անձանց ձերբակալումից հետո Տուրգենևին էլ էր վտանգ սպառնում, քանի որ Նալբանդյանին ուղղված Բակունինի նամակներում և ոստիկանության ձեռքն ընկած մյուս փաստաթղթերում հիշատակվում էր նաև գրողի անունը, իսկ 1863 թվականի սկզբին նա ստիպված եղավ պատասխանել սենատի կողմից Փարիզ ուղարկված հարցերին, որոնք վերաբերում էին «լոնդոնյան պրոպագանդիստների» ու Նալբանդյանի հետ նրա փոխհարաբերություններին: Ստեղծված տագնապալից իրավիճակում Տուրգենևը չկարողացավ կատարել Բակունինի խնդրանքը և որևէ կերպ օգնել Նալբանդյանին:

Բակունինի նամակները հանդիսացան Լոնդոնի հեղափոխական կենտրոնի հետ Նալբանդյանի գաղափարական և կազմակերպական կապերի ծանրակշիռ ապացույցները: Բայց հարցաքննությունների ժամանակ նա հնարամտորեն պաշտպանվում էր՝ Բակունինի հետ իր փոխհարաբերությունները հանգեցնելով վերջինիս կնոջ տեղափոխումը կազմակերպելու գործին ու դեն նետելով քաղաքական բնույթի ամեն տեսակ կասկածները: Բակունինի հետ իր ծանոթությունը Նալբանդյանը բացատրում էր զուտ «պատահական» հանգամանքներով, ճիշտ այնպես, ինչպես ծանոթությունը Գերցենի և Օգարյովի հետ, ավելացնելով. «Նրանցից ոչ ոքի հետ ընդհանուր ոչինչ չունեմ, բացի այն, որ Բակունինն ինձ խնդրեց հաղորդել Փարիզում Իվան Սերգեևիչ Տուրգենևին, որ նա միջոցներ ձեռք առնի Բակունինի կնոջը Սիբիրից Տվերի նահանգ տեղափոխելու համար, նույնը նա խնդրեց հայտնել Պետերբուրգում իր եղբորը, որին ես մի անգամ եմ տեսել և անունը չգիտեմ»: Այնուհետև բանտարկյալը վճռականորեն հայտարարել է. «... Բացի Բակունինի կնոջ գործից ուրիշ որևիցե գործի համար ես խոսք կամ խոստում չեմ տվել ոչ Բակունինին, ոչ Գերցենին և ոչ էլ Օգարյովին, և նրանց հանձնարարությամբ (որ չեմ էլ ունեցել), ոչինչ չեմ ձեռնարկել» (Մ. Նալբանդյան, ԵԼԺ, հ. 3, 1940 թ., էջ 386, 396):

Սակայն Հատուկ քննչական հանձնաժողովը լավ տեղեկացված էր Բակունինի մասին: Այսպես, տալով «1862 թվականի բարոյաքաղաքական պատկերը» 3-րդ բաժանմունքի գործակալը նշում էր, որ Լոնդոն գալուն պես Բակունինը հայտնեց «իր անսանձ հեղափոխական վճռականությունը» և «աշխուժացրեց ռուսական պրոպագանդայի գործունեությունը» (մեջբերումը ըստ՝ Н. Пирумова. Бакунин, с. 185 գրքի):

Բակունինը հեղափոխական շարժումը ներարկում էր ապստամբ հեղափոխականության ոգով՝ վարակելով շրջապատի մարդկանց, այդ թվում նաև՝ Նալբանդյանին: Եթե տեսության հարցերում վերջինս կողմնորոշվում էր գլխավորապես դեպի Օգարյովը, ապա տակտիկայի հարցերում՝ նախ և առաջ դեպի Բակունինը, որն, ի տարբերություն Գերցենի, Օգարյովի հետ միասին պաշտպանում էր «ռուսական հեղափոխության նախապատրաստմանը ավելի եռանդուն գործնական մասնակցության գիծը» (Е. Л. Рудницкая. Н. П. Огарев в русском революционном движении. М., 1969, с. 327—328): Բակունինը Գերցենին դրդում էր վճռական գործողությունների: «Ռուսաստանը,— ասում էր նա,— այժմ կարիք ունի գործնական ղեկավարության և գործնական նպատակի»: Եվ «Կոլոկոլ»-ի հրատարակչին կոչ էր անում. **«Բարձրացրու դրոշն ի գործ**, Գերցեն, բարձրացրու քեզ բնորոշ ամբողջ զգուշությամբ, հնարավոր ամենայն խելամտությամբ, տակտով, բայց բարձրացրու համարձակ: Իսկ մենք կգանք քո հետևից և համերաշխ կաշխատենք քեզ հետ» (Письма М. А. Бакунина к А. И. Герцену и Н. П. Огареву. СПб., 1906, с. 200; Ընդգծումը մերն է.— Մ. Դ.):

Իր հերթին Գերցենը Բակունինին կշտամբում էր անհամբերության համար, առանց բոլոր հանգամանքները հաշվի առնելու Ռուսաստանում հեղափոխության հնարավորության գերագնահատման համար: Այդ կապակցությամբ Գերցենը «Եղելություններ և խոհեր»-ում Բակունինի մասին գրել է. «Նա հրապուրում էր ոչ թե փաստարկներով, այլ ցանկություններով»: Եվ շարունակում է. «Նա յոթմղոնանոց սապոգներով անցնում էր լեռների ու ծովերի, տարիների ու սերունդների վրայով: Վարշավայի ապստամբության հետևում նա արդեն տեսնում էր իր «սքանչելի ու սլավոնական» ֆեդերացիան... նա տեսնում էր Ուրալի և Վոլգայի, Ուկրաինայի և Կովկասի, թերևս, Ձմեռային պալատի և Պետրոպավլովյան ամրոցի վրա ծածանվող «Զեմլյա ի վոլյա»-ի կարմիր դրոշը, և շտապում էր որևէ ձևով հարթել դժվարությունները, սքողել հակասությունները, հեղատները ոչ թե լցնել, այլ դրանց վրայով ձգել սատանայի կամուրջ» (А. И. Герцен. Соч. в 30-ти т., т. XI, с. 368, 371—372):

Հեղափոխական այս լավատեսությունը Բակունինը ներշնչում էր նաև Նալբանդյանին, որը նույնպես հավատում էր Ռուսաստանում հասունացող հեղափոխական պայթյունին: Նալբանդյանին ուղղված 1862 թ. հունիսի 16-ի թվակիր Բակունինի գաղտնի նամակում կան այսպիսի ծածկագիր տողեր. «... Մենք վերջապես հանդիպեցինք մի քանի հոգու հենց Ալեքսանդրովսկից (Վարշավայից.— Մ. Դ.), որոնց հետ կարող ենք սերտորեն կապվել և բարեկամացանք նմանապես այնտեղ բնակվող Վերա Նիկոլաևնայի հետ («Զեմլյա ի վոլյա»:— Մ. Դ.), որը ոչ միայն մեզ հետ համաձայն է, այլև **գործ է պահանջում միանգամայն հերոսական անձնազոհությամբ»** (Մ. Նալբանդյան, ԵԼԺ, հ. 5, 1984 թ., էջ 371: Ընդգծումը մերն է. — Մ. Դ.):

Հեղափոխական լավատեսության բակունինյան սերմը ընկավ նախապատրաստված հողի մեջ: Արտասահման մեկնելուց առաջ Նալբանդյանը «Մանկության օրեր» («Հյուսիսափայլ», 1860, № 7) բանաստեղծության մեջ պատրաստականություն էր հայտնում կռվելու բարիկադների վրա. «Ես պիտի դուրս գամ դեպ հրապարակ... Ես պիտի գոչեմ, պիտի բողոքեմ... Արյու՛ն ու կրա՛կ թշնամու վերա, Այս պիտի լինի խորհուրդ մեր կյանքին» (Մ. Նալբանդյան, ԵԼԺ, հ. 1, Երևան, 1979 թ., էջ 104): Հեղափոխական ռոմանտիզմի այս տրամադրությունները Նալբանդյանի մեջ ավելի ամրապնդվեցին Բակունինի հետ մերձենալուց հետո: Դա արտացոլվել է նրա գլխավոր քաղաքական՝ «Երկրագործությունը որպես ուղիղ ճանապարհ» աշխատության մեջ՝ գրված ինչպես ասում են, մի շնչով, «ապստամբության դղրդյունին ու ակումբի աղմուկին, հրապարակին ու բարիկադներին» (А. И. Герцен. Собр. соч. в 30-ти т., т. XI, с.365) սիրահարված Բակունինի հետ մշտական շփման պայմաններում: Բնութագրելով Ռուսաստանում տիրող իրավիճակը գյուղացիական ռեֆորմից հետո, որը նոր խմորումներ առաջացրեց գյուղացիության շրջանում, Նալբանդյանը «Երկրագործության» մեջ գրում էր. «Բայց այս ջերմախտական և լարյալ վիճակը անհնար է, որ լինի երկարատև: Եթե, վաղորոք, խելք գործ չդրվի, ստրուկը յուր հողով հանդերձ կատարելապես ազատ չքարոզվի, և այս կերպով այն կնճիռը չլուծվի, **ստրուկը կացինով կվճռե գործը**:— Ժամանակը շատ մոտեցած է և կարծվածից ավելի մոտեցած...» (Մ. Նալբանդյան, ԵԼԺ, հ. 4,

1983 թ., էջ 54: Ընդգծումը մերն է.— Ս. Գ.):

«Գործ» ասելով, Նալբանդյանը, Բակունինի պես, նկատի ուներ ապստամբությունը: «Երկրագործությունում» արված այսքան վճռական եզրահանգումը գալիս էր, անշուշտ, Բակունինի ազդեցությունից, քանզի Գերցենը, թեև համակրանքով էր վերաբերվում «Նամակ գավառից» հոդվածում («Կոլոկոլ», 01. 03. 1860 թ.) «Ի կացին կոչեք Ռուսիան» հեղափոխական կոչին, 1862 թվականին էլ մնում էր իր նախկին դիրքում, որն արտահայտել էր «Նամակ գավառից» հոդվածին գրած իր պատասխանում. «Ձեր հետ ունեցած մեր տարաձայնությունները վերաբերում են **ոչ թե գաղափարին, այլ միջոցներին... Կացնին,** ճնշվածների այդ ultima ratio-ին դիմելու կոչ **չենք անի, քանի առանց կացնի հարցի լուծման գեթ մեկ խելամիտ հույս կա** (А. И. Герцен. Собр. соч. в 30-ти т. т. XIV, с. 239. Ընդգծումը հեղինակինն է.— Ս. Գ.):

Բակունինի ու Նալբանդյանի հեղափոխական լավատեսությունը հիմնվում էր գյուղացիական խռովությունների աննախընթաց ալիքի վրա, որոնք գագաթնակետին հասան 1861—1862 թթ: Ժողովրդական այդ ցասումը ուժ ու վստահություն էր տալիս դեմոկրատների գործողություններին: «**... Հավատ գյուղացիական սոցիալիստական հեղափոխության հնարավորության նկատմամբ,**— մատնանշել է Լենինը,— ահա թե ինչն է ոգևորել նրանց, տասնյակ ու հարյուրավոր մարդկանց ուղի հանել հերոսական պայքարի կառավարության դեմ» (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 1, էջ 326):

Բացի այդ, հզորացող ազատագրական շարժման այդ փուլում (առջևում էր ապստամբությունը Լեհաստանում, որի նախապատրաստման մասին Նալբանդյանին հայտնել էր Բակունինը) նրանք չըզգացին իրավիճակի օբյեկտիվ դրամատիզմը, որի էությունն այն էր, որ ժողովրդական հեղափոխության մոտալուտության կրքոտ հավատը անխուսափելիորեն կհանգեցներ սուր բախման Ռուսաստանում արմատական սոցիալական հեղաշրջմանը այն ժամանակվա հետամնաց ու խղճուկ գյուղացիության աննախադեպության հետ: Նույնիսկ, երբ եկավ գյուղացիական հեղափոխությունից ակնկալվող չարդարացված հույսերի գիտակցումը և արի մարտիկներին տանջում էր ափսոսանքի դառնությունը, նրանք չկորցրին հավատն ապագայի նկատմամբ, պայքարը շարունակելու նոր ճանապարհներ էին փնտրում, և դա է նրանց պատմական ծառայությունը:

Հենց այդ դրամատիկ ժամանակաշրջանում (Լեհաստանում ապստամբության պարտությունից հետո) Կ. Մարքսը երկար ընդմիջումից հետո նորից հանդիպում է Բակունինին Լոնդոնում և կիսում է իր տպավորությունները Ֆ. Էնգելսի հետ վերը մեջբերված 1864 թ. նոյեմբերի 4-ի նամակում (Բակունինը «մեկն է այն փոքրաթիվ մարդկանցից, որոնք, ըստ իս, այս տասնվեց տարվա ընթացքում հետ չեն գնացել, այլ, հակառակը՝ հետագա զարգացում են ապրել»): Այս ժամանակին է վերաբերում նաև Բակունինի կազմած «Մարդկության ազատագրման միջազգային գաղտնի ընկերության» ծավալուն ծրագիրը, որը ներթափանցված էր երկար տարիներ իր մեջ կրած աշխարհի ժողովուրդների ինտերնացիոնալ բարեկամության գաղափարներով, հումանիզմի և համամարդկային արժեքների գաղափարներով, որոնք համահնչուն են նաև մեր դարաշրջանին:

Ինտերնացիոնալ եղբայրության գաղափարները ձևավորվում ու ամրանում էին բազմաթիվ ժողովուրդների ներկայացուցիչների, այդ թվում նաև՝ ի դեմս Միքայել Նալբանդյանի, հայերի հետ Բակունինի սերտ շփման պայմաններում: Վերջինիս մասին եղբոր կնոջը գրած մի նամակում Բակունինը հիացմունքով ասել է. «**Նալբանդովը ոսկի մարդ է՝ համակ հոգի ու համակ նվիրվածություն**» (Мих. Лемке. Очерки, с. 124: Ընդգծումը մերն է.— Ս. Գ.) : Նույնը նա կրկնում է և Նալբանդյանին ուղղված 1862 թ. հունիսի 16-ի թվակիր ծածկագրված նամակում: Հայտնելով, որ «Զեմլյա ի վոլյա»-ի լեհական բաժանմունքի ներկայացուցիչները համաձայն են համատեղ գործողությունների և «հերոսական անձնուրացությամբ գործ են պահանջում», Բակունինն ավելացնում էր. «Աչքի լույսի պես պահպանեք Պյոտր Ալեքսանդրովիչ Ցուրիկովին (ծածկագրում՝ Նալբանդով.— Ս. Գ.)՝ նա ոսկի մարդ է» (Մ. Նալբանդյան, ԵԼԺ, հ. 5, 1984 թ., էջ 371): Նալբանդյանի նմանները պետք էին «գործի» համար՝ գալիք հեղափոխության, որին իր ամբողջ բուռն կյանքը նվիրեց Միխայիլ Բակունինը:

---



# ՖԻԶԿՈՒԼՏՈՒՐԱՆ ՈՐՊԵՍ ԵՐԻՏԱՍԱՐԴՈՒԹՅԱՆ ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ԱԿՏԻՎՈՒԹՅԱՆ ԲԱՐՁՐԱՑՄԱՆ ԳՈՐԾՈՆ

**Ս. ԳՅՈՒԼՆԱԶԱՐՅԱՆ**

ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ շինարարության բազմակերպ և բարդ խնդիրներից կարևորագույնը նոր մարդու դաստիարակությունն է: Վերջինիս հաջողությունը մեծապես պայմանավորված է մեր հասարակության առջև ծառացած վիթխարի սոցիալական խնդիրների լուծմամբ: Երիտասարդության կոմունիստական դաստիարակության հարցերը ձևակերպված են ԽՄԿԿ XXVII համագումարի որոշումներում, «Երկրում բարձրագույն և միջնակարգ կրթության վերակառուցման հիմնական ուղղությունների» մասին ԽՄԿԿ Կենտկոմի և ԽՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշման մեջ, կուսակցության Կենտրոնական կոմիտեի 1988 թ. փետրվարյան պլենումի նյութերում: Անհատի ձևավորման և անընդհատ կրթության հրատապ պրոբլեմների կոմպլեքսային մշակման անհրաժեշտությունը կանխորոշում է սովորող երիտասարդության կոմունիստական դաստիարակության բարելավման գործը՝ որպես հասարակական կազմակերպությունների և մանկավարժական կոլեկտիվների կարևորագույն խնդրի:

Հայտնի է, որ վերակառուցման պրոցեսներում էապես փոխվում է աշխատանքի բնույթը: Զուտ կատարողական, լրատվական բովանդակությունից անցում է կատարվում առավելապես ստեղծագործական վերլուծողականի: Վերջինս պայմանավորում է մասնագետի՝ որպես հասարակականորեն ակտիվ, ներդաշնակորեն զարգացած այնպիսի անհատի ձևավորման անհրաժեշտությունը, որը զուգակցում է պրոֆեսիոնալ ու գաղափարաքաղաքական հասունությունը և սոցիալական պատասխանատվությունը: Այդ պահանջների կատարմանը նպատակամղված՝ ուսանողների կոմունիստական դաստիարակության համակարգը ներառում է անհատի ձևավորման այնպիսի ուղղություններ, ինչպես գաղափարաքաղաքական պատրաստականությունը, աշխատանքային, բարոյական, գեղագիտական դաստիարակությունը, հասարակական գործունեության ակտիվացումը, ֆիզիկական կուլտուրայի զարգացումը:

Սպորտի բարերար նշանակությունը մարդկության համար մեկ անգամ ևս շեշտվեց ֆիզիկական կուլտուրայի և սպորտի զարգացման համար պատասխանատու ղեկավար աշխատողների և մինիստրների միջազգային համաժողովում, որը տեղի ունեցավ 1988 թ. վերջերին Մոսկվայում: Մասնավորապես նշվեց, որ սպորտն իրենից ներկայացնում է մի ամբողջական կոնցեպցիա: Այն միավորում է ֆիզկուլտուրայի և հանգստի զբաղմունքի բոլոր տեսակները, տարրական մակարդակի ֆիզդաստիարակությունից մինչև մեծ սպորտի գագաթնակետ օլիմպիադան: Սպորտը իր վերընթաց նվաճումներով բարձրաբերձ բուրգի միայն վերին մասն է, իսկ ֆիզկուլտուրան՝ նրա հիմքն է: Այս դրույթը լիովին համապատասխանում է ֆիզիկական կուլտուրայի մասսայականության, նախադպրոցական հիմնարկություններում, միջնակարգ և բարձրագույն ուսումնական հաստատություններում, աշխատանքի և բնակության վայրերում ֆիզիկական դաստիարակության հաջողության վերաբերյալ սոցիալիստական կոնցեպցիային:

---

*ԳՅՈՒԼՆԱԶԱՐՅԱՆ ՍԵՐԳԵՅ ՔՐԻՍՏԱՓՈՐԻ— Համամիութենական կարգի մրցավար, Երևանի պետկոնսերվատորիայի ֆիզդաստիարակության և քաղպաշտպանության ամբիոնի դոցենտ*

Հասարակայնությանը հուզող պրոբլեմների լայն շրջանակում հատուկ ուշադրության են արժանանում երիտասարդության հետ տարվող աշխատանքի հարցերը, քանի որ հենց սպորտն է այն անփոխարինելի միջոցը, որը կարող է երիտասարդությանը հեռու պահել վնասակար շատ սովորույթներից, մասնավորապես արդիականության պատուհասներից՝ նարկոմանիայից և ալկոհոլիզմից։

Մարդու օրգանիզմի վրա ֆիզիկական կուլտուրայի ներգործությունը հիմնված է սիստեմատիկ, խստորեն չափորոշված մարզումներով։ Դրանք բացի առանձին օրգանների և համակարգերի վրա ներազդելուց, ներգործում են ամբողջ օրգանիզմի վրա։ Դրանով իսկ բարձրանում է անբարենպաստ գործոնների նկատմամբ մարդու ընդհանուր կայունությունը, բարելավվում են նրա հակազդման հատկությունները։ Ֆիզիկական կուլտուրան նպաստում է աշխատունակության ըստ ամենայնի բարձրացմանը, հիվանդություններից հետո անձի առավել արագ ապաքինմանը, պաշտպանում մի շարք այնպիսի ախտահարիչ պրոցեսների առաջացումից, որոնք հանդես են գալիս որպես մարդու ֆիզիկական ակտիվության անբավարարության հետևանք։ Նպաստելով անհատի ներդաշնակ զարգացմանը, դաստիարակելով ոչ միայն ֆիզիկական, այլև բարոյագեղագիտական հատկանիշները, սպորտը, հիրավի, հոգևոր մշակույթի օրգանական մասն է։

Ֆիզիկական կուլտուրան, հանդիսանալով մարդու դաստիարակության անքակտելի մասը, անբաժանելի է նրա մտավոր, բարոյական և գեղագիտական կատարելագործումից։ Անհատի բազմակողմանի զարգացման գաղափարին անդրադարձել են գիտական կոմունիզմի հիմնադիրները։ Կ. Մարքսը այդ առթիվ գրել է. «Դաստիարակություն ասելով մենք հասկանում ենք երեք բան. առաջին՝ մտավոր դաստիարակություն, երկրորդ՝ ֆիզիկական դաստիարակություն, երրորդ՝ տեխնիկական ուսուցում» (Маркс К., Энгельс Ф. Соч. т. 16, стр. 198)։

Այդ գաղափարը հետագայում խորացրեց Վ. Ի. Լենինը։

Հասարակության ամբողջ սոցիալական կառուցվածքի հետ սպորտի սերտ կապը միշտ չէ, որ վառ կերպով է դրսևորվում, իսկ դա նրա ինքնուրույնության պատրանք է ստեղծում։ Ֆիզկուլտուրայի և սպորտի ինտենսիվ զարգացումը XX դարում և հատկապես վերջին տասնամյակներին, մարդկային կյանքի տարբեր կողմերի վրա նրա հարաճուն ներգործությունը օրակարգի հարց դարձրին պրոբլեմների մի լայն շրջանակ, որոնք առնչվում են ֆիզիկական կուլտուրային և ժամանակակից հասարակության մեջ նրա ունեցած դերին։

Բարձրագույն ուսումնական հաստատությունում ֆիզիկական դաստիարակության գլխավոր ֆունկցիաներից մեկը ուսանողների առողջության ամրապնդումն է։ Փորձը ցույց է տալիս, որ սպորտային խմբակներում ընդգրկվածների ճնշող մեծամասնությունը հաջողությամբ է զուգակցում ուսումը և սպորտը։ Սպորտով պարապելը սովորեցնում է խելացիորեն տնօրինել ժամանակը, պահպանում է մարդու առողջությունը, լավ տրամադրությունը, բարձրացնում է կենսունակությունը, դիմացկունությունը, նպաստում բարոյական վեհ զգացումների ձևավորմանը։ Նպատակասլաց ֆիզիկական պատրաստությունը մտավոր գերհոգնածության հաղթահարման, աշխատունակության բարձրացման արդյունավետ միջոց է, որը էապես նպաստում է ուսումնական պրոցեսին։

Ուսանողների առողջության և օրգանիզմի զարգացման վրա ֆիզիկական դաստիարակության բարերար ազդեցության մասին են վկայում մեր հանրապետության առանձին բուհերում կատարված ուսումնասիրությունները։ Դրանք հաստատում են, որ ֆիզկուլտուրայով սիստեմատիկ զբաղվելը նպաստում է ուսանողների առողջության ամրապնդմանը և առաջադիմության բարձրացմանը։ Սակայն, ֆիզիկական դաստիարակության պարտադիր կուրսն ավարտելուց հետո ուսանողները սովորաբար դադարում են ֆիզկուլտուրայով և սպորտով կանոնավոր զբաղվելուց, ինչը բացասաբար է անդրադառնում նրանց առողջական վիճակի վրա։ Բարձր կուրսեցիների մոտ նկատվում է քաշի աճ (միջինը 5—10 կգ), թոքերի կենսատարողության նվազում, շարժողական համակարգի ֆունկցիոնալ վիճակի վատացում, օրգանիզմի հարմարվողականության ռեակցիայի թուլացում։ Մեր հաշվարկներով բարձր կուրսեցիների շաբաթական ժամանակի բյուջեում կան չբաշխված ժամանակահատվածներ, որոնք հաջողությամբ կարելի է օգտագործել ֆիզկուլտուրայով պարապելը շարունակելու համար։ Հանրապետության բուհերի 50 տոկոսը ֆիզդաստիարակության ուսումնական պարապմունքները կազմակերպում է շաբաթական չորս ժամվա ծավալով ոչ միայն I և II, այլև բարձր կուրսերում։ Բնորոշ է, որ այդ բուհերում աստիճանաբար կրճատվում է ֆիզիկական ցածր պատրաստականություն ունեցող ուսանողների թիվը, նվազում են հիվանդության պատճառով պարապմունքներից բացթողումները։ Անշուշտ, ուսանողի առողջական վիճակը պայմանավորված է ֆիզիկական կուլտուրայով կանոնավոր զբաղվելուց։ Այդ երևում է հետևյալ օրինակից. քննաշրջանի և արձակուրդների ընթացքում 3—4 ամիս պարապմունքների ընդմիջումից հետո տարվա ընթացքում ձեռք բերված բոլոր ցուցանիշները նվազում են։ Բարձր կուրսերում, որտեղ ֆիզկուլտուրայի պարապմունքներ չեն անցկացվում, ըստ առողջական վիճակի, ուսանողներին մեծ մասամբ կարելի է դասել նախապատրաստական բժշկական խմբերում։ Եվ նրանք, ըստ մեր հանրապետության բուհերի ֆիզդաստիարակության ամբիոնների դիտարկումների, առավել նախատրամադիր են հիպերտոնիկ, իշեմիկ և այլ հիվանդությունների նկատմամբ։

Երիտասարդ սերնդի առողջության շահերից ելնելով, բոլոր բուհերում անհրաժեշտ է արագացնել անցումը ֆիզկուլտուրայի 4-ժամյա պարապմունքների, ինչպես պահանջվում է «Երկրում բարձրագույն և միջնակարգ կրթության վերակառուցման մասին» ԽՄԿԿ Կենտկոմի և ԽՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշմամբ։ Այլևս չի կարելի հաշտվել բուհերում ուսուցման ամբողջ ժամանակամիջոցում ֆիզիկական կուլտուրայի սիստեմատիկ պարապմունքների ներդրման դանդաղկոտության հետ։ Դեռ ավելին, ֆիզկուլտուրայի կանոնավոր պարապմունքները պետք է զուգակցվեն ուսանողների ինքնուրույն ամենօրյա մարզումների հետ՝ ուսուցչի մեթոդական ղեկավարությամբ։

Ամեն տարի բուհերն ընդունվող երիտասարդությունն աչքի է ընկնում միանգամայն խայտաբղետ առողջական վիճակով և ֆիզիկական պատրաստականությամբ։ Շատ են ֆիզիկապես թույլ պատանիներն ու աղջիկները, որոնք դպրոցական տասը տարիների ընթացքում չեն սովորել վազել, լողալ, առավոտյան լիցքային վարժություններ կատարել։ Դեռևս քիչ են այնպիսիները, որոնք ըստ առողջական վիճակի դասվում են հատուկ բժշկական խմբերի կարգի։ Հանրապետության բուհերում դրանց բաժինը հասնում է ուսանողների 11,5 տոկոսին։ Բնական է, որ սովորողների այդ մասի նկատմամբ հատուկ ուշադրություն և մոտեցում է պահանջվում։

Լուսավորության, բարձրագույն դպրոցների և գիտական հաստատությունների աշխատողների արհմիության կենտկոմի տվյալներով 22 տեսակի խրոնիկական և սուր հիվանդություններից ուսանողների շրջանում հատկապես տարածված են սիրտ-անոթային, աղեստամոքսային և նյարդահոգեկան հիվանդությունները։ Այդպիսի իրադրությունը պարտավորեցնում է ուսանողների ֆիզիկական դաստիարակության ամբողջ աշխատանքը փոխգործողության մեջ դնել բժշկական հաստատությունների հետ։ Առանց բժշկական վերահսկողության ֆիզիկական վարժությունների կատարումը հավասարազոր է այդ կարևոր գործը կույրորեն կազմակերպելուն։ Դա օգուտի փոխարեն կարող է նույնիսկ վնաս պատճառել։ Ուսանողների ֆիզիկական պարապմունքների նկատմամբ բժշկական վերահսկողությունը կարգավորվում է համապատասխան նորմատիվ փաստաթղթերով։

Ֆիզիկական կուլտուրայով և սպորտով կանոնավոր զբաղվելը դիտվում է իբրև կարևոր գործոն, որը նպաստում է մասնագիտական գիտելիքների ձևավորմանը և տվյալ մասնագիտությանն անհրաժեշտ ֆիզիկական հատկանիշների զարգացմանը։ Օրինակ, ինժեներ-քիմիկոսներին անհրաժեշտ է բարձր և ցածր ջերմաստիճանների նկատմամբ կայունություն, շինարարներին՝ շարժողական հատկություններ, թերևս նաև մագլցելու, բարձրություններում աշխատելու ունակություն, գյուղատնտեսներին՝ երկարատև քայլելու կարողություն և այլն։ Դա արդեն մասնագիտական-կիրառական ֆիզպատրաստության բնագավառն է, որը նախատեսված է ֆիզդաստիարակության պետական ծրագրով։

Գնահատելով գաղափարաքաղաքական և դաստիարակչական աշխատանքը միջնակարգ և բարձրագույն դպրոցի վերակառուցման պայմաններում, ԽՄԿԿ Կենտկոմի 1988 թ. փետրվարյան պլենումը խնդիր դրեց երիտասարդությանը դաստիարակել բարձր գաղափարայնության և գիտամատերիալիստական աշխարհայացքի ոգով, սովորողների մոտ զարգացնել հասարակական երևույթները հստակ դասակարգային դիրքերից գնահատելու կարողություն։ Այդ կապակցությամբ անհրաժեշտ է արմատապես բարելավել ուսանողների գաղափարական դաստիարակության գործը։

Հանրապետության մի շարք բուհերում ուսանողների ինտերնացիոնալ և ռազմահայրենասիրական դաստիարակության զգալի փորձ է կուտակվել։ Զարգանում են սպորտի ռազմակիրառական ձևերը, կազմակերպվում են արշավներ հեղափոխության և մարտական փառքի ճամփաներով, անցկացվում են ռազմասպորտային տոնախմբություններ։ Այդ ամենը նպաստում է հայրենիքի պաշտպանության գործին երիտասարդության պատրաստականությանը։ Դրա հետ մեկտեղ ուսումնական հաստատություններում ֆիզիկական դաստիարա-

կության դրվածքը պահանջում է էական կատարելագործում: Խորհրդային բանակ զորակոչվող երիտասարդների ֆիզիկական պատրաստականության վիճակի վերլուծությունը վկայում է, որ այդ նպատակով մենք դեռևս լուրջ աշխատանք պետք է կատարենք, քանի որ երկրի պաշտպանունակությունը կարող են ապահովել միայն գաղափարապես կայուն, կրթված, ֆիզիկապես կոփված մարդիկ:

Ֆիզկուլտուրայի պարապմունքների պրոցեսում երիտասարդության մեջ դաստիարակվում է ինտերնացիոնալիզմի զգացումը: Ավանդույթ են դարձել այլ ազգությունների ներկայացուցիչների հետ հանդիպումները, նրանց հետ մարզումների «գաղտնիքները» կիսելը: Տարբեր մրցումների մեկնելիս մարզիկները ծանոթանում են մեր երկրի մյուս ժողովուրդների պատմական և մշակութային արժեքներին:

Ուսանողների ինտերնացիոնալ դաստիարակությանը, սպորտային միջոցառումների մասսայականության ընդլայնմանը, սպորտի ժողովրդականացմանը նպաստում են հանրապետության առողջապահության մինիստրության, ՀԼԿԵՄ Կենտկոմի և ժողովրդական կրթության մինիստրության արտասահմանյան ուսանողների գործերի բաժնի կողմից ավանդաբար կազմակերպվող «Բարեկամություն» փառատոնները, որոնց մասնակցում են Եթովպիայից, Սիրիայից, Լիբանանից, Հորդանանից, Իրանից, Վիետնամից, Աֆղանստանից, Լաոսից և այլ երկրներից եկած ուսանողները: Այդ նույն նպատակն են հետապնդում նաև Անդրկովկասյան հանրապետությունների ամենամյա սպարտակիադաները:

Ֆիզկուլտուրան և սպորտը նպաստում են բուհերում ուսանողների սոցիալական հարմարվողությանը, հնարավորություն ընձեռում արագորեն ընկալելու նոր կոլեկտիվի ավանդույթները, վարքի նորմերը և արժեքային կողմնորոշիչները: Ֆիզկուլտուրան խթանում է ուսանողների սոցիալական ակտիվության զարգացումը, նրանց համաֆակուլտետային և ինստիտուտային միջոցառումներին, մրցումներին, սպարտակիադաներին ներգրավելուն, մշակում բարդ և չկանխատեսված իրադրություններում կողմնորոշվելու ունակություն:

Ուսանողների սոցիալական ակտիվության զարգացմանը նպաստում է նաև բուհերում սպորտի տարբեր ձևերի գծով հասարակական մրցավարների և հրահանգիչների պատրաստումը: Եթե 1979—1980 ուսումնական տարում հանրապետության բուհերում սպորտի հասարակական մարզիչ և մրցավար են դարձել 630 ուսանող, ապա ներկայումս այդ թիվն անցնում է 4,5 հազարից: Բուհերի շրջանավարտները դիպլոմների հետ մեկտեղ ստանում են հասարակական մրցավարների և մարզիչների վկայականներ, սակայն այդ գործում դեռևս կան լուրջ բացթողումներ: Ցավոք, համապատասխան նախապատրաստություն անցած ուսանողները չեն մասնակցում դասերից դուրս ֆիզկուլտուրային պարապմունքների կազմակերպմանը, հանրակացարաններում երիտասարդության հետ տարվող աշխատանքին, ֆիզկուլտուրայով ինքնուրույնաբար զբաղվելու նպատակով պատանիներին ու աղջիկներին մեթոդական օգնություն ցույց տալուն: Մինչդեռ, միայն այդպիսի պրակտիկան մեր շրջանավարտներին հնարավորություն կտա արտադրություն գնալուց հետո դառնալու իրենց կողքին աշխատող երիտասարդության ֆիզկուլտուրային-մասսայական շարժման կազմակերպիչներ:

Պրակտիկան հաստատում է, որ այն ուսանողները, ովքեր ֆիզկուլտուրայով ու սպորտով զբաղվում են ուսման ամբողջ ժամանակամիջոցում, ավելի մարդամոտ են, զգայուն, նրանց մոտ զարգացած է կոլեկտիվիզմի և նորարարության զգացումը, նկատվում է վարքագծի հաստատակամություն, բարձր ինքնավերահսկողություն: Նրանք հեշտությամբ են հաղթահարում անհանգիստ վիճակը, տագնապը, իրենց նկատմամբ առաջացած անվստահությունը: Հետևաբար, ֆիզիկական կուլտուրայի և սպորտի միջոցներով կարելի է մշակել անհատական ընդունակությունների շտկման մանկավարժական ստրատեգիա:

Ուսանողների բարոյական դաստիարակության գործում ֆիզկուլտուրայի դերը դրսևորվում է այնպիսի հատկանիշների զարգացման մեջ, ինչպես ինքնավերահըսկողությունը, անձնական և կոլեկտիվի շահերը ներդաշնակելու ունակությունը, հանձնարարված գործը ազնվորեն, բարեխիղճ կերպով և պատասխանատվության զգացումով կատարելու պատրաստակամությունը:

Ֆիզիկական կուլտուրայի և սպորտի միջոցով որոշակիորեն ձևավորվում է խորհրդային երիտասարդի գեղագիտական դիմանկարը: Գեղեցկի նկատմամբ ձգտումը և այն ընկալելու կարողությունը բնածին հատկություններ չեն: Գեղեցկի զգացման ընկալումը սկսվում է ֆիզկուլտուրայի առաջին իսկ պարապմունքներից: Ուսանողի վրա ներգործում է անգամ այդ պարապմունքների միջավայրը: Գեղագիտական դաստիարակության, զվարթ տրամադրության, պարապելու բուռն ցանկության վրա ներազդում են դահլիճների, մարզասրահների ձևավորումն ու սարքավորանքը, սպորտային գույքի որակը: Հանրապետության առանձին բուհերում (պետհամալսարան, անասնաբուժական-անասնաբուծական, բժշկական ինստիտուտներ) կիրառվում է պարապմունքների անցկացումը երաժշտության ուղեկցությամբ, ինչը բարձրացնում է դրանց հուզականությունը և նպաստում սովորողների գեղագիտական ճաշակի դաստիարակությանը:

Բարոյական հատկանիշների և գեղագիտական ճաշակի ձևավորումը անմիջականորեն պայմանավորված է ֆիզդաստիարակների, մարզիչների, մրցավարների կազմով, ինչպես նաև այն կոլեկտիվի ընդպատակասլաց ազդեցությամբ, որտեղ ձևավորվում է ուսանողի բնավորությունը: Այսօր էապես բարձրանում են պահանջները ֆիզիկական կուլտուրայի ուսուցչի նկատմամբ, իսկ դրանց թիվը հանրապետության բուհերում անցնում է 250-ից:

Նրանցից շատերը, որոնք ունեն հարուստ փորձ և նվիրված են իրենց գործին, ձըգտում են լիովին բացահայտել ֆիզիկական կուլտուրայի ամբողջ գեղեցկությունը, սպորտային շարժման գեղագիտական հիմքը, ուսանողներին հնարավորություն են ընձեռում ճաշակելու սպորտային պայքարի և հաղթանակի բերկրանքը, այդ թվում՝ ինքն իր նկատմամբ հաղթանակի: Դրա հետ մեկտեղ, մենք ունենք շատ ուսուցիչներ, որոնք ֆիզկուլտուրայի պարապմունքներն անցկացնում են ցածր մակարդակով, առանց անհրաժեշտ ծանրաբեռնվածության, ուսումնական ժամանակի զգալի կորուստներով: Առկա է նաև մեկ այլ ծայրահեղություն, երբ պարապմունքները վերածվում են համատարած ուսուցողականության: Բնական է, որ դա ուսանողների մոտ մեծ ոգևորություն չի առաջացնում, նրանց չի հրապուրում ֆիզկուլտուրայով պարապելը:

Անհրաժեշտ է նշել, որ ֆիզդաստիարակության ուսումնական պլաններն ու ծրագրերն անբավարար են նպաստում ֆիզկուլտուրայի օգտագործմանը դաստիարակչական նպատակներով, լիովին չեն համապատասխանում այն բազմակողմանի սոցիալական ֆունկցիային, որ կրում են ֆիզկուլտուրան և սպորտը: Չի կարելի հաշտվել այն բանի հետ, որ դրանց կիրառման ոլորտը շատ նեղ է, ամեն ինչ սահմանափակվում է ավանդական ուսումնական պարապմունքներով և սպորտային-մասսայական միջոցառումներով: Անհրաժեշտ է հստակորեն որոշել ֆիզկուլտուրայի տեղը ուսումնական պրոցեսում: Ցավոք, առ այսօր այդ դերը թերագնահատվում է: Ակնհայտորեն այն պետք է ներառնի ակադեմիական ուսումնական պարապմունքները, որոնք ունեն առողջարարական ֆունկցիաներ և ֆիզկուլտուրայի օգտագործումը որպես ուսանողների գաղափարաքաղաքական, հայրենասիրական, ինտերնացիոնալ, պրոֆեսիոնալ- աշխատանքային, գեղագիտական, բարոյական դաստիարակության միջոց: Ուսումնական պրոցեսի կատարելագործումը և ֆիզկուլտուրայի սոցիալական խնդիրների կատարումը, բացի ուսումնական պլաններից, կնպաստի նաև ֆիզդաստիարակության ամբիոններում ֆիզիկական կուլտուրայի և սպորտի միջոցներով ուսանողների կոմունիստական դաստիարակության նպատակային կոմպլեքսային ծրագրերի մշակմանը: Այն բուհերում, որտեղ կազմված է երիտասարդության կոմունիստական դաստիարակության համաինստիտուտային պլան, մեր ծրագիրը կարող է դառնալ նրա բաղկացուցիչ մասը: Պարզաբանենք, որ ֆիզիկական կուլտուրայի և սպորտի միջոցներով ուսանողների կոմունիստական դաստիարակության նպատակային ծրագիրն իրենից ներկայացնում է կազմակերպական և գիտամեթոդական այն միջոցառումների համալիրը, որ ամբիոնը ուսումնական պլանի շրջանակներում և դրանից դուրս իրականացնում է՝ նպաստելու պատանիների ու աղջիկների կոմունիստական դաստիարակությանը, խմբավորելով ըստ կոնկրետ նպատակների, նշելով հանձնարարությունները կատարողներին և իրականացման կոնկրետ ժամկետները: Այդպիսի ծրագրի կատարումը, անշուշտ, պահանջում է ռեկտորատների, կուսակցական, կոմերիտական և հասարակական մյուս կազմակերպությունների գործողությունների փոխհամաձայնեցում:

Դաստիարակչական այդ խնդիրների լուծման հաջողությունը պայմանավորված է այն բանով, թե ուսանողներին ինչպես են պարզաբանել ֆիզկուլտուրայով և սպորտով պարապելու սոցիալական նշանակությունը, սպորտային գործունեության նպատակներն ու շարժառիթները: Կարևոր է ուսումնական և դաստիարակչական աշխատանքի միասնության ապահովումը, ուսանողական կոլեկտիվների կոփումը՝ հիմնվելով ֆիզկուլտուրայի պարապմունքներին և սպորտային-մասսայական միջոցառումներին ուսանողների ակտիվ և գիտակցական մասնակցության վրա:

Հասարակությունը դասախոսական կազմին վստահել է այն ամենաթանկը, ինչ մենք ունենք՝ երիտասարդ սերունդը: Մենք պատասխանատու ենք նրա առողջության, ֆիզիկական կատարելության, բարոյական կերպարի համար:

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՍԵՊՏԵՄԲԵՐՅԱՆ ԿՈՆՖԵՐԱՆՍԻ ՓԱՍՏԱԹՂԹԵՐ*
## (1920 Թ.)

Աշխատավորների 1920 թվականի Մայիսյան հերոսական ապստամբությունը դաշնակցական կառավարության դեմ կարևոր ուղենիշ եղավ Հայաստանում խորհրդային իշխանության հաստատման համար մղված պայքարում. Ապստամբության ճնշումից հետո, դաշնակցական դաժան տեռորի պայմաններում, Հայաստանի բոլշևիկյան ընդհատակի ղեկավարման կենտրոնը Երևանից նախ փոխադրվեց Թիֆլիս, իսկ այնուհետև խորհրդային Բաքու: Կազմվեց կուսակցական նոր ղեկավար մարմին՝ Հայաստանի կոմունիստական կազմակերպությունների արտասահմանյան բյուրո (Արտբյուրո), որի նպատակն էր Հայաստանում վերականգնել կուսակցական կազմակերպությունները, կարգավորել կուսակցական աշխատանքը, մոբիլիզացնել հեղափոխական ուժերին՝ դաշնակցական կառավարությունը տապալելու համար:

Արտբյուրոյի գործունեությունն ընթացել է 1920 թվականի հունիսից մինչև հոկտեմբեր, երբ ՌԿ(բ)Կ Կենտկոմի կազմբյուրոյի և ՌԿ(բ)Կ Կենտկոմի կովկասյան բյուրոյի հայտնի որոշումներին համապատասխան կազմվեց Հայաստանի կոմկուսի Կենտկոմ, որը գլխավորեց Հայաստանի աշխատավորների պայքարը խորհրդային իշխանության հաստատման համար:

Դժբախտաբար, ընդհատակի դաժան տարիներին հնարավորություն չեղավ պահպանել այն ժամանակաշրջանի կուսակցական նյութերի մեծ մասը, ինչը առանձին արժեք է հաղորդում ամեն մի նոր փաստաթղթի, որը լույս է սփռում մեր կուսակցության անցած ուղու վրա:

Ստորև հրապարակվում է երեք նորահայտ փաստաթուղթ, որոնք վերաբերում են Հայաստանի կոմունիստական կազմակերպությունների սեպտեմբերյան կոնֆերանսին, որը կայացել է Բաքվում 1920 թվականի սեպտեմբերի 10-ից մինչև 13-ը: Ինչպես հայտնի է, կոնֆերանսը քննարկել է «... այդ կազմակերպությունների գործնական խնդիրները խորհրդային իշխանության հաստատման համար գալիք վճռական մարտերում» (Հայաստանի կոմունիստական կուսակցության պատմության ուրվագծեր: Երևան, 1967, էջ 299): Ինչպես վկայում է այն ժամանակաշրջանի բոլշևիկյան մամուլը, կոնֆերանսը քննարկել է Արմենկոմի հաշվետվությունն իր գործունեության մասին և պետք է զեկուցումներ լսեր Հայաստանի միջազգային դրության ու կոմունիստների առաջիկա խնդիրների վերաբերյալ («Կոմունիստ» հայերեն թերթը, Բաքու, 1920, № 95, սեպտեմբերի 13): Ցավոք, համապատասխան նյութերի բացակայության պատճառով կոնֆերանսի աշխատանքն առայժմ պատշաճ կերպով չի լուսաբանվել պատմական գրականության էջերում: Ստորև հրապարակվող փաստաթղթերը կոչված են լրացնելու այդ բացը:

№ 1—2 փաստաթղթի տեքստի վերլուծությունը թույլ է տալիս պնդելու, որ դրանք 1920 թվականի սեպտեմբերյան կոնֆերանսի բանաձևերի սևագրություններն են՝ գրված Ա. Մռավյանի կողմից: Հիշյալ փաստաթղթերից առաջինում քննության է առնված Արմենկոմի և տեղական կուսակցական կազմակերպությունների գործունեությունը Մայիսյան ապստամբության ժամանակ: Փաստաթուղթը գրված է կարմիր թանաքով՝ երկու թերթի վրա, որոնցից յուրաքանչյուրի միայն մեկ էջում: Երկրորդ փաստաթուղթը վերաբերում է կազմակերպական հարցերին և, մասնավորապես, Հայաստանի կոմունիստական կուսակցության առաջիկա խնդիրներին: Փաստաթուղթը գրված է մատիտով, առաջին փաստաթղթի երկու թերթերի հակառակ էջերում: Ինչպես առաջին, այնպես էլ երկրորդ դեպքում տեքստից հետևում է, որ հիշյալ թերթերը հրապարակվող փաստաթղթերի սկիզբն ու վերջն են: Դրանց միջին մասը բացակայում է (հրապարակվող փաստաթղթերում պակասող մասը տեքստում նշված է բազմակետերով):

№ 3 փաստաթուղթը Հայաստանի կոմունիստական կազմակերպությունների 1920 թվականի սեպտեմբերյան կոնֆերանսի պատգամավորների ցուցակն է և առաջին անգամ հնարավորություն է ընձեռում պարզելու նրա մասնակիցների անվանական կազմը, ինչպես նաև այնտեղ ներկայացված կազմակերպությունները: Ինչպես երևում է փաստաթղթից, կոնֆերանսում ներկա է եղել 49 պատգամավոր, որոնցից 25-ը եղել են նախօրյակին Բաքվում կայացած Արևելքի ժողովուրդների համագումարի պատգամավորներ:

Ստորև ներկայացված փաստաթղթերը հրապարակվում են առաջին անգամ: Վերնագրերը տրված են հրապարակման նախապատրաստողների կողմից: Փաստաթղթերի բնագրերը պահվում են ՀԿԿ Կենտկոմի կուսպատմության ինստիտուտի ԽՄԿԿ Կենտկոմին առընթեր ՄԼԻ-ի մասնաճյուղի կուսարխիվում:

Հրապարակումը պատրաստել են ՀԿԿ Կենտկոմի կուսպատմության ինստիտուտի դիրեկտորի տեղակալ Յու. Վ. Մռավյանը, ավագ գիտաշխատող Ա. Ս. Վիրաբյանը և գիտաշխատող Ռ. Վ. Ղազանջյանը:

### № № 1—2

Համարելով ելույթի անխուսափելիությունը Հայաստանում, ինչպես նաև կործանարար համարելով նահանջը կես ճանապարհից, որը հեղափոխական զանգվածներին դնում է դանակի ու մաուզերի դաժան հարվածի տակ, կոնֆերանսը հավանություն է տալիս Ալեքպոլի, Կարսի, Սարիղամիշի, Նոր Բայազետի և Ղազախ—Շամշադինի կազմակերպությունների տակտիկային ելույթի հարցում, որը խստորեն հաշվի է առնում ստեղծված հեղափոխական իրավիճակը Հայաստանի ներսում ու նրանից դուրս:

... 4. Սակայն ամենավճռական րոպեին, երբ գլուխը կորցրած կառավարությունը կարծես թե ցանկանում էր զիջել իր երևութական իշխանությունը, ղեկավար մարմինը՝ Հայաստանի կոմիտեն տատանվեց, ամբողջ Հայաստանում սկսած պ. ր. կ.* հեղափոխությունը թողնելով առանց ղեկավար կենտրոնի, դրանով իսկ իրեն՝ հեղափոխությանը թողնելով իր հաղթանակի ուղիների որոնումը:

5. Կենտրոնի այդ անվճռական քաղաքականության հետևանքը եղավ այն, որ այն ժամանակ, երբ հեղափոխական ուժերը փոշիացել էին, կառավարությունը ուշքի եկավ առաջին շփոթությունից, ամրապնդվեց րոպե առ րոպե, գլխատելով շարժումը կենտրոնում՝ ամբողջ ուժով նետվեց ճնշելու մեկը մյուսից կտրված հեղափոխական շրջանները (ֆ. 1, ց. 1, գ. 10, թ. 1 հակ., 2 հակ.: Բնագիր: Ձեռագիր):

Լսելով կազմակերպական հարցի մասին զեկուցումը, կոնֆերանսը գտնում է.

1. Հայաստանում ապստամբությունից հետո կազմակերպությունները ջախջախված են:

2. Կոմունիստական կազմակերպությունները ջախջախման հետևանքով կորցրել են կազմակերպական կապերը:

3. Կոմկուսակցության խնդիրն այն է, որ հավաքի հեղափոխական ուժերին, կազմակերպի բջիջներ, դրանք միացնի միասնական կազմակերպության մեջ Հայ[աստանի] կոմկուսի Կենտկոմի և Երևանի՝ նրա գործադիր բյուրոյի գլխավորությամբ:

4. Պետք է ստեղծվեն միասնական տակտիկա և քաղաքականություն, որպեսզի ուժերի փոշիացում տեղի չունենա:

5. Աշխատանքը արհմիություններում, դրանց վերածումը պրոլետարիատի մարտական օրգանների՝ մեր կուսակցության գլխավորությամբ, նույնպես մեր կուսակցության հերթական խնդիրն է:

... Ընկերների, գրականության ուղարկումը, սովետական [աշխատողների] լայն

---

* Բնագիրը ռուսերեն է:

* Ամենայն հավանականությամբ «պրոլետարական» բառի հապավված ձևն է:

շրջանների լայն ինֆորմացիան Հայաստանում տիրող դրության մասին՝ առա մեր կուսակցության ամենամերձավոր խնդիրները, բոլոր բջիջների և կազմակերպությունների սերտ կապը Երևանի կենտրոնի հետ (ֆ. 1, ց. 1, գ. 10, թ. 1, 2: Բնագիր: Ձեռագիր):

№ 3

Հայաստանի կոմունիստական կազմակերպությունների 1920 թվականի սեպտեմբերյան կոնֆերանսի պատգամավորների ցուցակը

| №№ ըստ կարգի | Ամիսը և ամսաթիվը | Ազգանուն, անուն, հայրանուն | №№ Մանդատների | Ստացողի ստորագրությունը |
|---|---|---|---|---|
| | | **Լոռվա շրջան** | | |
| 1 | | Կախոյան Ա[սատուր Ստեփանի] | 1 | Ա. Կախոյան |
| 2 | | Զատիկյան Մ[արտիրոս Բաղդասարի] | 2 | Զատիկյան |
| 3 | | Իսրայելյան Ս[իմոն Հովսեփի] | 3 | Ս. Իսրայելյան |
| 4 | | Բաբյան Գ[րիգոր Արշակի] | 4 | Գ. Բաբյանց |
| 5 | | Ծամբարյան Մ[այաղ Հարությունի] | 5 | Մ. Ծամբարյան |
| 6 | | Ոլիբեկյան Լ[ևոն Հովհաննեսի] | 6 | Լ. Ոլիբեկյան |
| 7 | | Ղումաշյան Ա[լեքսանդր Կարապետի] | 7 | Ա. Ղումաշյան |
| 8 | | Մաթևոսյան Ե[գոր Հովհաննեսի] | 8 | Ե. Մաթևոսյան |
| 9 | | Նորեկյան Ա[բգար Թորոսի] | 9 | Նորեկյան |
| | | **Ղազախ-Շամշադինի շրջան** | | |
| 10 | | Ամիրխանյան Շ[ավարշ Մեհրաբի] | 11 | Ամիրխանյան |
| 11 | | Ղալթախչյան Տ[իգրան Հովհաննեսի] | 12 | Ղալթախչյան |
| 12 | | Մովսեսյան Դ[անիել] | 13 | Դ. Մովսեսյան |
| 13 | | Բեկնազարով Մ[ելիք] | 14 | Մ. Բեկնազարով |
| 14 | | Միրզոյան Ս[ահակ Արուստամի] | 15 | Ս. Միրզոյան |
| 15 | | Զարգարով Ղ[ահրաման Ավթանդիլի] | 16 | Կ. Զարգարյան |
| 16 | | Բաբիշև Ի[վան Միխաևիչ] | 49 | Բաբիշև |
| | | **Դիլիջանի շրջան** | | |
| 17 | | Յաղուբյան Հ[այկ Հովհաննեսի] | 17 | Հ. Յաղուբյան |
| 18 | | Շեմախյան Ե[ղիշե Միքայելի] | 18 | Ե. Շեմախյան |
| 19 | | Սուկովիցին [Ստեպան Ստեպանովիչ] | 19 | Սուկովիցին |
| 20 | | Համբարձումյան Ա[լեքսանդր] | 20 | Ա. Համբարձումյան |
| 21 | | Նիկիֆորով Ն[իկիֆոր Պետրովիչ] | 21 | Նիկիֆորով |
| | | **Երևանի շրջան** | | |
| 22 | | Մռավյան Ա[սքանազ Հարությունի] | 29 | Մռավյան |
| 23 | | Տեր-Սիմոնյան Դ[րաստամատ Ասքանազի] | 30 | Տ. Սիմոնյան |
| 24 | | Ռանսկի [Վլադիմիր] | 31 | |
| 25 | | Մինասյան Ա[րամ] | 23 | |
| 26 | | Գաբրիելյան Ա[ռսեն] | 33 | |
| 27 | | Մանիկ Կ[արապետյան Ստեփանի] | 34 | Մանիկ |
| | | **Ն (որ) Բայազետի շրջան** | | |
| 28 | | Մկրտչյան Պ[ապիկ Գրիգորի] | 35 | Մկրտչյան |
| 29 | | Ղամարյան Հ[ովհաննես Արսենի] | 36 | Հ. Ղամարյան |
| 30 | | Պետրոսյան Մ[իհրան Եզեկի] | 37 | Մ. Պետրոսյան |
| 31 | | Պետրոսյան Հ[ովհաննես Մնացականի] | 22 | Պետրոսյան |
| 32 | | Փիրգուլյան Գ[եորգի Ալեքսանդրի] | 10 | Փիրգուլյանց |
| | | **Ալեքսանդրապոլի շրջան** | | |
| 33 | | Գոգունց Ա[րշակ Գրիգորի] | 24 | Ար. Գոգունց |
| 34 | | Օհանջանյան Խ[աչատուր Գևորգի] | 25 | Օհանջանյան |
| 35 | | Ավիս [Սողոմոնի Նուրիջանյան] | 32 | Ավիս |
| 36 | | Սուրենյան Ս[ուրեն Ստեփանի] | 26 | Ս. Սուրենյան |
| 37 | | Ղուկասյան Ն[իկոլայ Խաչատուրի] | 38 | Ն. Ղուկասյան |
| 38 | | Կուզնեցով Պ[յոտր Միխայլովիչ] | 27 | Կուզնեցով |
| 39 | | Բայադյան Բ[արսեղ Սերգեյի] | 39 | Բայադյան |
| 40 | | Մարության Մ[իքայել Ստեփանի] | 40 | |
| 41 | | Սաֆարով Ռ[ուբեն Մկրտչի] | 28 | Ռ. Սաֆարով |
| 42 | | Պողոսյան Ա[ղասի Ավետիսի] | 41 | Ա. Պողոսյան |
| | | **Ղարաքիլիսայի շրջան** | | |
| 43 | | Ոսկանյան Ռ[ուբեն Հայրապետի] | 42 | Ոսկանյան |
| | | **Կարսի շրջան** | | |
| 44 | | Մելիքյան [Դմիտրի Քրիստոփորի] | 43 | Մելիքյան |
| 45 | | Դավիդյան [Վարդան Համբարձումի] | 44 | Դավիդյան |
| 46 | | Ղազանչյան Վ[ռամ Խաչատուրի] | 45 | Վ. Ղազանչյան |
| 47 | | Վոյկին Ե[ֆիմ Վասիլևիչ] | 46 | Ե. Վոյկին |
| | | **Սարիղամիշի շրջան** | | |
| 48 | | Մեհրաբյան Գ[րիգոր Սարուխանի] | 47 | Գր. Մեհրաբյան |
| 49 | | Վիրապյան [Մարուսյա Ամբրոսիի] | 48 | Մ. Վիրապյան |

(ֆ. 1, ց. 1, գ. 27, «Ա», թթ. 1—2: Բնագիր)

# ՓԱՍՏԱՐԿՎԱԾ ՀԵՏԱԶՈՏՈՒԹՅՈՒՆ

ՈՉ ՎԱՂ անցյալի լճացման երևույթները, առավել ևս դրանց նախորդած անհատի պաշտամունքի տարիներին հատուկ մտածողության ստերեոտիպերը, պատմագիտության մեջ կիրառվող դոգմատիկ սխեմաները խոր կնիք են թողել խորհրդահայ պատմագիտության, հատկապես նրա կարևորագույն մասի՝ քաղաքական հայագիտության զարգացման վրա: Մեր ժողովրդի քաղաքական պատմության պրոբլեմները՝ հայ հասարակական-քաղաքական մտքի զարգացումը, ազգային-ազատագրական շարժման առանձնահատկությունները, քաղաքական կուսակցությունների առաջացումն ու գործունեությունը, հայ-թուրքական հարաբերությունների պատմությունը, բուրժուական մի շարք պետությունների քաղաքականությունը և համաշխարհային հասարակական կարծիքի դիրքորոշումը հայկական հարցում և այլ պրոբլեմներ տակավին չեն դարձել մարքսլենինյան պատմագրության սկզբունքների հիման վրա խոր, լուրջ ու կոմպլեքսային ուսումնասիրության, տեսական իմաստավորման առարկա:

Այդուհանդերձ, վերջին տարիներին կատարվել են որոշակի տեղաշարժեր քաղաքական հայագիտության պրոբլեմների ուսումնասիրման ասպարեզում, հրատարակվել մենագրություններ, տասնյակ գիտական ու հրապարակախոսական հոդվածներ: Այս բնագավառում նոր հետազոտություն է բանասիրական գիտությունների թեկնածու, արևելագետ Մերի Քոչարի մենագրությունը*, որը լույս է տեսել համալսարանի հրատարակությամբ:

Գիրքը նվիրված է 1880-ական թվականներից մինչև առաջին համաշխարհային պատերազմն ընկած ժամանակաշրջանի հայ-թուրքական հասարակական-քաղաքական հարաբերությունների պատմության պրոբլեմների ուսումնասիրմանը: Հայտնի է, որ հետազոտվող ժամանակաշրջանը հայ ժողովրդի պատմության առավել բարդ ու ճակատագրական տարիներից է:

Աշխատության առաջին գլխում հեղինակը վերլուծում է Օսմանյան կայսրությունում տիրող սոցիալ-քաղաքական իրավիճակը, կացությունը Արևմտյան Հայաստանում, բացահայտում է հայ ազգային-ազատագրական շարժման առաջացման, ինչպես նաև 1885—1890 թթ. արմենական, հնչակյան և դաշնակցություն քաղաքական կուսակցությունների ստեղծման պատճառները: Մ. Քոչարը նշում է, որ չնայած այդ կուսակցությունների ծրագրերի ու գործունեության մեթոդների տարբերությանը, նրանք միասնական էին արևմտահայության ազգային ազատագրության, հայկական անկախ պետության ստեղծման հարցում: Սակայն հայկական կուսակցությունները այդպես էլ չկարողացան համախմբվել այդ գաղափարի շուրջը, չգիտակցեցին, որ Արևմտյան Հայաստանի փրկությունը բոլոր քաղաքական ուժերի միասնության, կայսրության մյուս ճնշված ժողովուրդների օրինակով միասնական հզոր ժողովրդական շարժում ստեղծելու մեջ էր:

Գրքում ուշադրություն է դարձված նաև թուրքական ընդդիմադիր կազմակերպությունների առաջացման «Միություն և առաջադիմություն» կուսակցության ստեղծման պրոբլեմին: Թեև երիտթուրքական կազմակերպության գործունեությունը ուղղված էր Աբդուլ Համիդ II սուլթանի ֆեոդալական-աբսոլյուտիստական վարչակարգի դեմ, այնուհանդերձ, այդ շարժման գաղափարախոսները որդեգրեցին օսմանիզմի ազգայնամոլական ու շովինիստական դոկտրինան: Այդպիսով, հայ ժողովրդի ազգային-ազատագրական շարժման գաղափարը, հայկական քաղաքական կուսակցությունների պայքարը հակասության մեջ էին մտնում թուրքական ընդդիմադիր շարժման խնդիրների հետ: Ինչպես նշում է Մ. Քոչարը, «հայերի քաղաքական կուսակցությունները ստիպված էին Աբդուլ Համիդի բռնապետության դեմ պայքարել երկրի ներսում, ինչպես նաև պայքար մղել երիտթուրքերի դեմ, նկատի ունենալով նրանց բացասական վերաբերմունքը ոչ թուրք ժողովուրդների ազատագրական շարժումներին» (էջ 21):

МЕРИ КОЧАР. Армяно-турецкие общественно-политические отношения и армянский вопрос в конце XIX — начале XX веков. Ереван, издательство Ереванского университета, 1988, 306 стр.



Առանձնահատուկ տեղ է հատկացված 1896—1899 թթ. հայ քաղաքական կուսակցությունների հետ սուլթանական կառավարության վարած բանակցությունների լուսաբանմանը: Մասնավորապես ուշագրավ են Ժնևում և Փարիզում վարած բանակցությունների նյութերը, որոնք հիմնականում քաղված են հայկական մամուլից և առաջին անգամ ընդհանրացվել ու հանգամանորեն վերլուծվել են այստեղ, թեև անցյալում դրանք օգտագործել են հայ պատմաբանները:

Հայ ազգային կուսակցությունների հետ կապեր ստեղծելու Աբդուլ Համիդի խորամանկ ու նենգամիտ փորձերն ավարտվեցին ապարդյուն: Բոլոր կուսակցություններն էլ կտրականապես հրաժարվեցին փոխզիջման դիմել սուլթանական կառավարության հետ: Իհարկե, մեր ժողովրդի ազատագրական միտքը մինչ այդ հանգել էր այն համոզման, որ ազատությունը հնարավոր կլինի նվաճել միայն պայքարի միջոցով: Սակայն, ինչպես ճիշտ նշում է Մ. Քոչարը, «պայքարը չպետք է ինքնանպատակ դառնար... Ամեն մի տևական պայքար ունենում է իր մակընթացության ու տեղատվության շրջանները, հարձակումների ու նահանջների փուլերը» (էջ 69):

Մենագրության հաջորդ գլուխը նվիրված է երիտթուրքերի հետ մինչև 1908 թվականի իրադարձությունները հայ քաղաքական կուսակցությունների ունեցած հարաբերությունների վերլուծությանը: Մանրազնին ուսումնասիրելով վերջիններիս տպագիր օրգանների, ինչպես նաև երիտթուրքական վտարանդիական մամուլի նյութերը, Մ. Քոչարը հմտորեն բացահայտում է երիտթուրքերի և հայկական առանձին կուսակցությունների միջև կապեր հաստատելու փոխադարձ փորձերը: Հեղինակի կարծիքով, սկզբնական շրջանում երկու կողմերն էլ ձգտում էին ստեղծել սուլթանական իշխանության դեմ մղվող պայքարի միասնական ճակատ: Սակայն կապերի զարգացմանը զուգընթաց սկսեցին խոր հակասություններ երևան գալ երիտթուրքերի և հայ առանձին կուսակցությունների միջև: Մասնավորապես, հաջողությամբ չպսակվեցին երիտթուրքերի բանակցությունները ինչպես հնչակյան կուսակցության, այնպես էլ վերակազմյալ հնչակյան կուսակցության հետ:

Գրքում լուսաբանվում է հնչակյան կուսակցության հետ կապերը կարգավորելու նպատակով երիտթուրքերի կատարած հերթական փորձը: 1906 թվականի հուլիսին Փարիզում կայացան երկու կուսակցությունների ներկայացուցիչների հանդիպումներ: Հանգամանորեն վերլուծելով հանդիպումների ժամանակ առաջ քաշված 9 հարցերից յուրաքանչյուրը՝ հեղինակը հանգում է այն եզրակացության, որ դրանցից և ոչ մեկի վերաբերյալ էլ կուսակցությունների ներկայացուցիչները այդպես էլ չկարողացան համաձայնության գալ: Մասնավորապես, հնչակյաններն առաջարկում էին «նացիոնալիստական ու անջատողական ձգտումները չեզոքացնելու նպատակով ընդունել դասակարգային պայքարի և ինքնորոշման սկզբունքը, հեղափոխական ճանապարհով տապալել Թուրքիայում գոյություն ունեցող բոլոր քաղաքական, տնտեսական, հասարակական հաստատությունները...»: Սակայն երիտթուրքերը հայտարարեցին, որ «սոցիալիզմի մասին խոսք անգամ չի կարող լինել», որ նման գաղափարներն «անընդունելի են թուրքական հասարակության համար» (էջ 114):

1907 թվականին դաշնակցություն կուսակցությունը դարձավ Օսմանյան կայսրության ընդդիմադիր ուժերի երկրորդ կոնգրեսի հրավիրման նախաձեռնողը: Առաջարկելով ստեղծել պայքարի միասնական ճակատ Աբդուլ Համիդի դեմ՝ դաշնակցականները ժամանակավորապես հրաժարվեցին անկախ Հայաստանի գաղափարից: Հնչակյան կուսակցությունը չպաշտպանեց այդ գաղափարը, հայտարարելով, որ անհրաժեշտ է սկզբում հրավիրել հայ քաղաքական կուսակցությունների կոնգրես, համաձայնություն ու համագործակցություն ձեռք բերել նրանց միջև, ընդունել համատեղ պլատֆորմ:

Թուրքիայի ընդդիմադիր ուժերի երկրորդ կոնգրեսը, որ կայացավ Փարիզում 1907 թվականի դեկտեմբերին, որոշեց համախմբել Օսմանյան կայսրության բոլոր ժողովուրդների ուժերը և տապալել սուլթան Աբդուլ Համիդի իշխանությունը: Գրքի հեղինակը համաձայն չէ խորհրդային պատմագրության մեջ հաստատված այն տեսակետին, թե կոնգրեսը կարևոր նշանակություն է ունեցել Օսմանյան կայսրության բազմազգ ընդդիմադիր ուժերի համախմբման գործում: Կոնգրեսի տեսադաշտից դուրս էին մնացել Թուրքիայի ապա-

գա պետական կառուցվածքի կարևորագույն պրոբլեմը, ոչ թե թուրքական քաղաքական կազմակերպությունների հետ երիտթուրքերի ունեցած տարաձայնությունների գլխավոր պատճառը: Բացի դրանից, Օսմանյան կայսրության բազմաթիվ ժողովուրդներ կոնգրեսում ներկայացված էին միայն հայերից ու հրեաներից ժամանած պատգամավորներով:

Չորրորդ գլխում քննության է առնված երիտթուրքերի և հայ քաղաքական կուսակցությունների հարաբերությունները 1908 թվականի թուրքական հեղափոխությունից հետո: Ստեղծված նոր պայմաններում քաղաքական կուսակցությունները ու հասարակական կազմակերպությունները գործնականորեն հրաժարվեցին հայկական անկախ պետություն ստեղծելու գաղափարից՝ ձգտելով խորացնել հեղափոխությունը, դեմոկրատացնել երկիրը և ստեղծել իսկական ազգային իրավահավասարություն: Այնուհետև ցույց է տրվում, որ ոչ բոլոր քաղաքական կազմակերպություններն էին կուրորեն գնում իշխանության գլուխ անցած երիտթուրքերի հետևից: Վերլուծելով հնչակյան մամուլի նյութերը, Մ. Քոչարը հանգում է այն հետևության, որ այդ կուսակցությունը նոր պայմաններում հրաժարվել է անկախ Հայաստան ստեղծելու գաղափարից և պատրաստակամություն է հայտնել համագործակցելու երիտթուրքերի հետ, սակայն միշտ կանգնած է եղել ապակենտրոնացման քաղաքականության դիրքերում, պահանջել է բացարձակ իրավահավասարություն, ինքնավարություն բոլոր ժողովուրդների համար, միապետության տապալում, խալիֆայության անջատում պետությունից:

Ընթերցողին ծանոթացնելով սահմանադրական ռամկավարների նորաստեղծ հայկական կուսակցության ծրագրին, հեղինակը գրում է, որ նրանք կայսրության խաղաղ զարգացման կողմնակից էին, ժխտում էին հեղափոխությունն ու Հայաստանի անկախությունը՝ ձգտելով հայկական հարցը լուծել ապակենտրոնացման և տեղական ինքնավարություն հաստատելու միջոցով: Դրա հետ մեկտեղ քաղաքական կուսակցություններից միայն դաշնակցությունը դաշինք կնքեց երիտթուրքերի հետ, ելնելով տեսական այն դրույթից, որ ազգային հարցի լուծման համար բուրժուական Թուրքիան ավելի գերադասելի է, քան ֆեոդալականը: Հեղինակի կարծիքով, «դա անհեռատես, անճարակ քաղաքականություն էր, որը հավասարազոր էր դավաճանության» (էջ 177):

Ելնելով Թուրքիայում ստեղծված դրության օբյեկտիվ վերլուծությունից՝ հնչակյան կուսակցությունը հանգեց այն հետևության, որ երիտթուրքական կառավարության առաջնահերթ խնդիրներից մեկը հայ բնակչության զանգվածային ոչնչացումն է: Ի տարբերություն դաշնակների, հնչակյանները փոխզիջման չդիմեցին երիտթուրքերի հետ, անհրաժեշտ համարեցին մտնել հակաիթթիհադական բլոկի մեջ, որը գլխավորում էր թուրքական իթիլաֆ կուսակցությունը: Դրա հետ մեկտեղ գրքում նշվում է, որ այն համաձայնագրերը, որ այդ կուսակցությունը կնքել էր ազգային կազմակերպությունների հետ, կրում էին ոչ թե գաղափարախոսական, այլ լոկ գործնական բնույթ, նպատակ էին հետապնդում միայն տապալել իթթիհադի իշխանությունը: 1912 թվականի հուլիսի 9-ի հեղաշրջումից հետո ժամանակավորապես անցնելով իշխանության գլուխ՝ այդ կուսակցությունը նույնպես թշնամական անհաշտ դիրք գրավեց կայսրության ոչ թուրք ժողովուրդների նկատմամբ, մասնավորապես, արևմտահայության սոցիալական և ազգային հարցերի լուծման նկատմամբ:

1912—1914 թթ. եվրոպական դիվանագիտության համար դարձյալ օրակարգի հարց դարձավ Արևմտահայաստանում ռեֆորմների հարցը: Դեռ 1912 թվականի սկզբին հրապարակված կոչում դաշնակցությունը քննադատում էր Ռուսաստանի քաղաքականությունը՝ հայ ժողովրդին ճնշելու համար, «մինչև երկինք բարձրացնելով» թուրքական հեղափոխությունը: Գրքում նշվում է, որ, այդ կոչի նպատակներից մեկն էր՝ երիտթուրքերին ցույց տալ, որ դաշնակցություն կուսակցությունը անկեղծորեն համագործակցում է թուրքական կառավարության հետ, պաշտպանում է նրա շահերն ու քննադատում ցարական Ռուսաստանին» (էջ 190): Այդ հրապարակումից մի տարի էլ չէր անցել, երբ դաշնակները, ընդունելով ռեֆորմների հարցում ռուսական դիվանագիտության ակտիվ դերը, 1913 թվականի օգոստոսին կուսակցության յոթերորդ համագումարում խզեցին հարաբերությունները երիտթուրքերի հետ: Հեղինակի կարծիքով, դաշնակների հետ դաշինք կնքելով, երիտթուրքերը փաստորեն «հետապնդում էին մեկ նպատակ՝ հայերին օգտագործել Ռուսաստանի դեմ կամ, եթե հաջողվի նրանց, հրահրել իրենց պլանավորած ցեղասպանությունը արդարացնելու նպատակով» (էջ 218):

Մենագրության երրորդ գլխում քննության են առնված 1905—1907 թթ. առաջին ռուսական հեղափոխության իրադարձությունների պրոպագանդման հարցերը Թուրքիայում: Տվյալ պրոբլեմն ընդհանուր առմամբ ուսումնասիրված է խորհրդային պատմագրության մեջ: Սակայն հետազոտողների տեսադաշտից դուրս է մնացել Օսմանյան կայսրությունում հեղափոխական գաղափարների, մարքսիզմի տարածման, սոցիալիստական շարժման առաջացման գործում հայ քաղաքական կուսակցությունների կատարած դերի ուսումնասիրումը: Օրինակ, Մոսկվայում լույս է տեսել Ասիայի և Հյուսիսային Աֆրիկայի երկրներում կոմունիստական շարժման զարգացման պրոբլեմներին նվիրված մի գիրք, որի Թուրքիային վերաբերող բաժնում չեն լուսաբանվել ոչ միայն առաջին ռուսական հեղափոխության ժամանակաշրջանում հայ քաղաքական կուսակցությունների ակտիվ գործունեությունը, այլև օսմանյան կայսրությունում ազգային-ազատագրական և բուրժուա-դեմոկրատական շարժման զարգացման վրա նրա ազդեցությունը (Проблемы развития коммунистического движения в освободившихся странах Азии и Северной Африки. М., 1987, с. 288—289):

Հիշյալ հրատարակության հեղինակները պրոբլեմը հետազոտել են հետհոկտեմբերյան ժամանակաշրջանի իրադարձություններից սկսած, այն դեպքում, երբ հայտնի է, որ հնչակյան կուսակցությունը Թուրքիայում մարքսիզմի գաղափարների տարածման ակտիվ աշխատանքը սկսել էր դեռևս 1887 թվականից:

Գրքում օգտագործվել է բազմալեզու հարուստ գրականություն, սակայն պետք է նշել, որ որոշ հարցեր իրենց գիտական գնահատականը ստացել են հայկական աղբյուրների լայն օգտագործման շնորհիվ: Այսպես, դաշնակցություն կուսակցության օրգան «Դրոշակ» թերթի 1905—1907 թթ. նյութերի վերլուծումը հաստատում է, որ «դաշնակցություն կուսակցությունը օբյեկտիվորեն ոչ պակաս կարևոր դեր է խաղացել Օսմանյան կայսրությունում սոցիալիստական գաղափարների տարածման և ռուսական հեղափոխության փորձի պրոպագանդման գործում...» (էջ 132—133):

Հնչակյան կուսակցության կողմից սոցիալիզմի գաղափարների պրոպագանդումը ավելի լայն մասշտաբներ էր ընդունել առաջին ռուսական հեղափոխության ժամանակաշրջանում: Կուսակցության օրգան «Հնչակ» թերթը հանգամանորեն լուսաբանում էր հեղափոխական շարժումը Ռուսաստանում, պարբերաբար հրապարակում տեսական բնույթի նյութեր, դիմում էր Օսմանյան կայսրության ժողովուրդներին, կոչ անելով միավորվել՝ Աբդուլ Համիդի վարչակարգը տապալելու համար: Մամուլի նյութերի ու փաստաթղթերի հետազոտումից հեղինակը հանգում է նրան, որ հեղափոխության անկման տարիներին անգամ հնչակյան կուսակցությունը շարունակում էր պրոպագանդել մարքսիզմի տեսության, դասակարգային պայքարի հարցերը, դրանք կապելով մեր ժողովրդի ազգային-ազատագրական շարժման պրոբլեմների հետ:

Աշխատության մեջ հանգամանորեն ներկայացված են 1905—1908 թթ. ռուսական հեղափոխության ազդեցությամբ Օսմանյան կայսրությունում տեղի ունեցած հակակառավարական ժողովրդական ելույթները և դրանցում հայ քաղաքական կուսակցությունների ունեցած ակտիվ մասնակցությունը:

Այդ ելույթները առավել մեծ թափ ստացան Արևմտյան Հայաստանում՝ Էրզրում, Վան, Բիթլիս, Մուշ քաղաքներում ու դրանց շրջաններում: Ընդ որում հեղինակը հատկապես ընդգծում է հայ բնակչության սերտ համագործակցությունը թուրքերի, քրդերի, հույների, արաբների և կայսրության այլ ժողովուրդների հետ:

Թուրքիայում մարքսիզմի տարածման ու սոցիալիստական շարժման առաջացման հարցերն են քննարկվում գրախոսվող մենագրության եզրափակիչ, հինգերորդ գլխում: Խորհրդային պատմաբանների այն աշխատություններում, որոնք նվիրված են այդ թեմատիկային, Օսմանյան կայսրությունում մարքսիզմի և սոցիալիստական գաղափարների տարածման պրոցեսը ուսումնասիրվել է միակողմանի, առանց ոչ թուրք ժողովուրդների լեզուներով եղած աղբյուրներն օգտագործելու: Այսպես, օրինակ, Մոսկվայում հրատարակված «Արտասահմանյան Արևելքը և արդիականությունը» արժեքավոր հետազոտության մեջ արտահայտվում է այն միտքը, որ «նարոդնիկությունը... մինչև XIX դարի վերջը մնացել էր իբրև տեղական ռուսաստանյան երևույթ» (Зарубежный Восток и современность, т. 3, М., 1981, с. 18), թեև հայտնի է, որ իր ստեղծման ժամանակից սկսած հնչակյան կուսակցությունը եղել է նարոդնիկական գաղափարների զգալի ազդեցության տակ: Մասնավորապես, գաղափարախոսական և տակտիկական որոշ հարցերում հնչակյանները լրիվ հետևում էին ռուս նարոդնիկությանը:

Հնչակյան կուսակցությունը Օսմանյան կայսրությունում գործող առաջին ազգային

սոցիալիստական կուսակցությունն էր: Իր կազմավորումից անմիջապես հետո կայսրության հայաբնակ շրջաններում նա ըստեղծեց իր տեղական կազմակերպությունները, բուռն գործունեություն ծավալեց մարքսիզմի և սոցիալիստական գաղափարների պրոպագանդման ու տարածման բնագավառում: Մեծ է նրա ավանդը մարքսիզմի դասականների, միջազգային սոցիալիստական շարժման աչքի ընկնող գործիչների աշխատությունների թարգմանության ու հրատարակման գործում: Այստեղ հանգամանորեն լուսաբանվում են ռուսական սոցիալ-դեմոկրատիայի, միջազգային սոցիալիստական շարժման գործիչների հետ հնչակյանների ունեցած կապերը: Հայ քաղաքական կուսակցությունների գործունեության շնորհիվ հայկական հարցը դարձավ միջազգային սոցիալիստական շարժման առաջնահերթ խնդիրներից մեկը:

1908 թվականի հեղափոխության հաղթանակից հետո Թուրքիայում համեմատաբար բարենպաստ պայմաններ ստեղծվեցին սոցիալիստական մամուլի ստեղծման և սոցիալիստական կազմակերպությունների ամրապնդման համար: 1908-ից մինչև 1914 թվականն ընկած ժամանակաշրջանում Թուրքիայում մեծ թափ ստացավ հայերեն թերթերի հրատարակումը, որոնց էջերում պրոպագանդվում էր սոցիալիզմի ուսմունքը: Վերլուծելով Կոստանդնուպոլսի հնչակյան ուսանողական ընկերության օրգան «Կայծ» թերթի նյութերը, հեղինակը նշում է, որ նրան է պատկանում Կ. Մարքսի աշխատությունների (նամակներ Արևելյան հարցի մասին և մի հատված «Քաղաքատնտեսության քննադատության շուրջը» աշխատությունից) առաջին հրատարակության (1913 թվական) պատիվը, որը մեծ նշանակություն ունեցող իրադարձություն էր Օսմանյան կայսրության հասարակական-քաղաքական մտքի պատմության մեջ: Այստեղ արդարացիորեն քննադատվում են Թուրքիայում մարքսիզմի տարածման պրոբլեմով զբաղվող թուրքագետներն այն բանի համար, որ այդ փաստը մինչև այժմ պատշաճ ուշադրության չի արժանացել պատմագիտական գրականության մեջ:

Հիրավի, մենագրությունը կարևոր ներդրում է Օսմանյան կայսրության հասարակական-քաղաքական մտքի պատմության կոմպլեքսային հետազոտման գործում: Պրոբլեմի լուսաբանումը, հեղինակի կողմից հայերեն նյութերի օգտագործումն ու վերլուծումը ցույց են տալիս, որ Օսմանյան կայսրությունում մարքսիզմի տարածման և սոցիալիստական գաղափարների պրոպագանդման պատմությունը անհամեմատ ավելի հարուստ է, քան այն տեղ է գտել խորհրդային թուրքագետների մինչև վերջին ժամանակներս հրատարակած աշխատություններում:

Դրա հետ մեկտեղ գրախոսվող մենագրության մեջ տեղ են գտել որոշ թերություններ, որոնց վրա անհրաժեշտ կլիներ ուշադրություն դարձնել աշխատության, մեր կարծիքով, հայերեն հրատարակության ժամանակ: Գրքում հաճախ կարելի է հանդիպել ամբողջ տեքստում ցրված կրկնվող մտքերի ու դատողությունների: Այսպես, օրինակ, գրքի 28-րդ էջի չորս պարբերություններից երեքում, առանց էական փոփոխությունների, արտահայտված է այն միտքը, որ Օսմանյան կայսրությունում գործող երեք հայ քաղաքական կուսակցությունների նպատակը եղել է Արևմտյան Հայաստանի ազատագրումը: Անհրաժեշտ էր հատուկ ուշադրություն դարձնել որոշ հասկացությունների ու տերմինների ճիշտ օգտագործման վրա: Այսպես, անընդունելի ենք համարում «խռովարարներ» արտահայտության օգտագործումը Զեյթունի ապստամբների նկատմամբ: Մեր համոզմամբ, Թուրքիայում սոցիալիստական գաղափարների և մարքսիզմի տարածման, սոցիալիստական շարժման առաջացման հարցերը կոմպլեքսայնորեն լուսաբանելու, շարադրանքի մեջ կրկնություններից խուսափելու նպատակով նպատակահարմար կլիներ միացնել մենագրության երրորդ և հինգերորդ գլուխները:

Ընդհանուր առմամբ, գրախոսվող մենագրությունը, անկասկած, նոր ներդրում է քաղաքական հայագիտության և թուրքագիտության կարևորագույն պրոբլեմների մշակման գործում:

**Ա. ԿԻՐԱԿՈՍՅԱՆ**
**պատմական գիտությունների թեկնածու**

*Հանձնվել է շարելու 11. 04. 89 թ.: Ստորագրվել է տպագրելու 30. 05. 89 թ.: ՎՖ 06093: Ֆորմատ՝ 70×108 1/16: Թուղթ՝ տպագրական № 2: Օֆսեթ տպագրություն: 8,4 պայմանական տպագրական մամուլ: 9,4 հաշվային-հրատարակչական մամուլ: Տպաքանակը՝ 12.582: Պատվեր № 567 Գինը՝ 25 կոպ.:*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան: 375023, Երևան, Օրջոնիկիձեի պողոտա № 2:*
Типография издательства ЦК КП Армении. 375023, Ереван, проспект Орджоникидзе, 2.